### ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Սույն կանոնները խախտողների հոդվածները կմնան անհետևանք:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**12** ԴԵԿՏԵՄԲԵՐ 1970

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Лениниян угнов» — теоретический и политический журнал ЦК КП Армении**


## Բովանդակություն

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ
ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ 50 ՏԱՐԻՆ



ՀՈԴՎԱԾՆԵՐ



ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ



ՊՐՈԲԼԵՄԱՅԻՆ ՏԵՍԱԿԱՆ ՍԵՄԻՆԱՐՆԵՐ



ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՓՈԽԱՐԵՆ

# Содержание

## 50 ЛЕТ АРМЯНСКОЙ СОВЕТСКОЙ СОЦИАЛИСТИЧЕСКОЙ РЕСПУБЛИКИ И КОММУНИСТИЧЕСКОЙ ПАРТИИ АРМЕНИИ








# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ 50 ՏԱՐԻՆ

## ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ

# ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՇՔԱՆՇԱՆՈՎ ՊԱՐԳԵՎԱՏՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆԸ, ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԻ ԵՎ ԱՇԽԱՐՀԻ ԱՌԱՋԻՆ ԲԱԶՄԱԶԳ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ՝ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎԱԾ ՊԱՅՔԱՐԻՆ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ-Ի ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԱՏՈՒՑԱԾ ՄԵԾ ԾԱՌԱՅՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ, ՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔԻ ԹՇՆԱՄԻՆԵՐԻ ԴԵՄ ՄՂՎԱԾ ՄԱՐՏԵՐՈՒՄ ՑՈՒՑԱԲԵՐԱԾ ՀԵՐՈՍՈՒԹՅԱՆ ԵՎ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԳՈՐԾՈՒՄ ՁԵՌՔ ԲԵՐԱԾ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՐԳԵՎԱՏՐԵԼ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՇՔԱՆՇԱՆՈՎ։

*ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ՝* Ն. ՊՈԴԳՈՌՆԻ

*ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության քարտուղար՝* Մ. ԳԵՈՐԳԱՁԵ

*Մոսկվա, Կրեմլ, 27 նոյեմբերի 1970 թ.*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻՆ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆԸ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը Հայաստանի բանվորներին, կոլտնտեսականներին, մտավորականներին, բոլոր աշխատավորներին և նրանց մարտական ավանգարդին՝ կոմունիստներին, ջերմորեն շնորհավորում են հիշարժան տարելիցի՝ Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 50-ամյակի առթիվ:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության շնորհիվ հայ ժողովուրդը իսկական սոցիալական և ազգային ազատագրություն ստացավ. Դասակարգային թշնամիների և օտարերկրյա զավթիչների դեմ մղված կատաղի պայքարում Հայաստանի աշխատավորները, հենվելով ռուս ժողովրդի և մեր երկրի մյուս եղբայր ժողովուրդների աջակցության վրա, սովետական իշխանություն հաստատեցին:

Սովետական Հայաստանը ծանր ժառանգություն ստացավ: Դաշնակների կործանարար քաղաքականությունը առանց այն էլ հետամնաց էկոնոմիկան լիակատար անկման էր հասցրել: Այդ դժվարին ժամանակներում ՌՍՖՍՀ-ի կառավարությունը՝ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ, հայ ժողովրդին ցույց տվեց համակողմանի օգնություն, որը հանրապետությանը հնարավորություն ընձեռեց հաջողությամբ սկսելու սոցիալիստական շինարարությունը:

Հայ ժողովուրդը, սովետական ժողովուրդների եղբայրական անխախտ ընտանիքում, կարճ ժամանակամիջոցում ստեղծեց բարձր զարգացած արդյունաբերություն, սոցիալիստական վերափոխումներ կատարեց գյուղատնտեսության մեջ: Հանրապետությունում արագ տեմպերով են զարգանում էներգետիկան, մեքենաշինությունը, քիմիան, ռադիոէլեկտրոնիկան, սարքաշինությունը, թեթև արդյունաբերությունը և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերը: Սովետական իշխանության տարիներին արդյունաբերական արտադրության ծավալը մեծացել է 180 անգամ, զգալիորեն ավելացել է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, անընդհատ բարձրանում է աշխատավորների նյութական բարեկեցությունը:



Զանգվածային բարգավաճման է հասել սոցիալիստական մշակույթը, լայնորեն զարգացել են գիտությունը, կրթությունը, առողջապահությունը: Հայրենական մեծ պատերազմի տարիներին Հայաստանի որդիներն ու դուստրերը, ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին, մեծ ավանդ ներդրեցին գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ տարած հաղթանակի մեջ, արիաբար կռվեցին սոցիալիստական հայրենիքի ազատության և անկախության համար: Հայկական ՍՍՀ-ի նվաճումները սովետական հասարակական ու պետական կարգի, լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի փայլուն օրինակ են:

Հայաստանի աշխատավորների հաջողությունները անխզելիորեն կապված են հանրապետության կոմունիստական կուսակցության գործունեության հետ, որը մեծ աշխատանք է կատարում բանվորների, կոլտնտեսականների, մտավորականների կոմունիստական դաստիարակության ուղղությամբ, նրանց մոբիլիզացնում տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների լուծման համար:

Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության և Հայաստանի կոմկուսի 50-ամյակը նշվում է հիշարժան ժամանակներում, երբ ամբողջ սովետական ժողովուրդը նախապատրաստվում է աշխատանքային նոր մեծագործություններով դիմավորելու Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարը:

Շարունակելով լենինյան աշխատանքային հերթափոխը, հանրապետության աշխատավորները նախահամագումարյան սոցիալիստական մրցության մեջ հաստատակամորեն պայքարում են հանրային արտադրության արդյունավետությունը բարձրացնելու, գիտատեխնիկական առաջադիմությունն արագացնելու, արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը, գիտությունն ու մշակույթն է՛լ ավելի զարգացնելու համար:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀ Միության Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը Հայկական ՍՍՀ-ի բանվորներին, կոլտնտեսականներին, մտավորականներին ի սրտե շնորհավորում են բարձր պարգևի՝ Հոկտեմբերյան Հեղափոխության շքանշանի արժանանալու առթիվ, և հաստատ համոզմունք հայտնում, որ հանրապետության աշխատավորները, Հայաստանի կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, մեր երկրի բոլոր ժողովուրդների հետ միասին նոր հաջողությունների կհասնեն կոմունիստական շինարարության ասպարեզում:

Կեցցե՛ Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը:

Կեցցե՛ Հայաստանի կոմունիստական կուսակցությունը՝ ՍՄԿԿ-ի մարտական ջոկատը:

Կեցցե՛ մեր մեծ հայրենիքի ժողովուրդների եղբայրական անխախտ բարեկամությունը:

Կեցցե՛ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը՝ մեր բոլոր հաղթանակների կազմակերպիչն ու ոգեշնչողը:

| | | |
|---|---|---|
| ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ | ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆ | ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏ |

# ԸՆԿԵՐ. Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

## ԵՐԵՎԱՆՈՒՄ ԿԱՅԱՑԱԾ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏՈՒՄ, 1970 ԹՎԱԿԱՆԻ ՆՈՅԵՄԲԵՐԻ 29-ԻՆ

Թանկագին ընկերնե՛ր:

Բարեկամնե՛ր:

Սովետական երկրի մի շարք եղբայրական հանրապետություններ վերջին ժամանակներս նշեցին իրենց կյանքի պատմական տարեթվերը: Ուկրաինայից ու Բելոռուսիայից, Ղազախստանից ու Ադրբեջանից հետո այժմ իրենց հիսնամյակն են տոնում Սովետական Հայաստանը և նրա կոմունիստական կուսակցությունը: Եվ, ինչպես որ լինում է լավ, համերաշխ ընտանիքում, այդ իրադարձությունը նշում են մեր մեծ հայրենիքի բոլոր ժողովուրդները:

Չէ՞ որ ՍՍՀՄ-ը ոչ թե սոսկ պետական կազմավորում է, այլ սովետական բոլոր ժողովուրդների կամավոր, անխախտ սոցիալիստական դաշինք, որը դարձել է նրանց միս ու արյունը, կազմում է նրանց պետական գիտակցության ամենագլխավոր, բնորոշ գիծը: Սովետական մարդիկ մտքով ու սրտով գիտեն, որ իրենց զորությունը ամրակուռ միասնության մեջ է, միմյանց օգնելու, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ դեպի վսեմ նպատակը, դեպի կոմունիզմ համատեղ ընթանալու պատրաստակամության մեջ: *(Ծափահարություններ)*: Մեր երկրի եղբայր ժողովուրդները միասին են միշտ՝ թե՛ ահեղ փորձությունների տարիներին և թե՛ տոնախմբությունների փառավոր օրերին: Նրանք կիսում են թե՛ հաղթանակների բերկրանքը և թե՛ անհաջողությունների դառնությունը, ապրում են ընդհանուր խոհերով, ընթանում մեկ ճանապարհով:

Թույլ տվեք, թանկագին բարեկամներ, Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների սովետի անունից, սովետական բոլոր մարդկանց անունից ձեզ և ի դեմս ձեր՝ հանրապետության բոլոր



աշխատավորներին սրտանց շնորհավորել փառապանծ տոնի՝ Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության և Հայաստանի կոմունիստական կուսակցության 50-ամյակի առթիվ: *(Երկարատև ծափահարություններ)*:

Հեշտ ու հասարակ չի եղել հայ ժողովրդի ուղին դեպի սոցիալիզմ և ազգային ազատագրություն: Ծանր ձախորդությունները քիչ չեն վիճակվել Հայաստանի աշխատավորներին: Տակավին վաղնջական ժամանակներում մշակույթի հոյակապ նմուշներ կերտած հայ ժողովուրդը դարեր շարունակ հարկադրված է եղել վենքը ձեռքին պաշտպանել իր աշխատանքի արգասիքները և գոյատևման իր իրավունքը: Օտար զավթիչների ամեն մի արշավանքից հետո նա փլատակներից վերականգնել է ավերված քաղաքներն ու գյուղերը, մշակույթի անգնահատելի հուշարձանները և ընթացել առաջ, հաստատ հավատալով իր ապագային:

Մաքառելով սեփական և օտար ճնշողների դեմ, Հայաստանի աշխատավորները ավելի ու ավելի ուժգնորեն էին մղվում դեպի Ռուսաստանի դեմոկրատական ու հեղափոխական ուժերը, հանձինս նրանց տեսնելով իրենց հզոր ու հավատարիմ դաշնակցին: Ցարական ինքնակալության դեմ Ռուսաստանի պրոլետարիատի պայքարի պատմական փորձը Հայաստանի աշխատավորներին ցույց տվեց ազատության, սոցիալական առաջադիմության միակ ճշմարիտ ուղին՝ հեղափոխական պայքարի ուղին, սոցիալիստական վերափոխումների ուղին: Նրանք ավելի ու ավելի հստակորեն էին ըմբռնում, որ արդարությունն ու երջանկությունն անկարելի են այնտեղ, ուր մեկը շահագործում է մյուսին, ուր մի բուռ մեծահարուստներ տեր են ամեն ինչի, իսկ աշխատավոր մարդիկ՝ ոչնչի:

Ռուսաստանում պրոլետարական շարժման առաջին իսկ քայլերից հայ ժողովրդի լավագույն զավակները ամենայն ակտիվությամբ մասնակցեցին դրան: Երևան եկավ ինտերնացիոնալիստ-հեղափոխականների մի հոյակապ համաստեղություն, որոնք ըմբռնում էին Ռուսաստանի բոլոր ժողովուրդների աշխատավորական զանգվածների շահերի հետ Հայաստանի աշխատավոր ժողովրդի շահերի անքակտելի կապը: Իրենց ժողովրդի բախտը կապելով Ռուսաստանի ամբողջ պրոլետարիատի պատմական առաքելության, Ռուսաստանում սոցիալիստական հեղափոխության հաղթանակի հետ, նրանք առանց տատանվելու բռնեցին Լենինի նշած ուղին, դարձան նրա աշակերտները, բարեկամներն ու զինակիցները:

Կարելի է լիակատար հիմունքով ասել, որ Հայաստանի կոմունիստները պատվով արդարացրին իրենց ժողովրդի վստահությունն ու հույսերը: *(Ծափահարություններ)*:

Նրանք արժանավայել ավանդ ներդրեցին համառուսաստանյան հեղափոխական շարժման զարգացման, նոր տիպի մարքսիստական կուսակցության ստեղծման մեջ, մեր ամբողջ երկրի կոմունիստների հետ միասին ակտիվորեն մասնակցեցին հին աշխարհի վրա կատարվող գրոհին, նոր աշխարհի՝ սոցիալիստական աշխարհի կառուցմանը:

Մեծ Լենինը բարձր է գնահատել Կովկասի բոլշևիկների դերը մեր կուսակցության ստեղծման, նրա շարքերի համախմբման, աշխատավորներին պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներով դաստիարակելու համար մղված պայքարում: Տակավին 1913 թվականին Մաքսիմ Գորկուն ուղղված նամակում Վլադիմիր Իլյիչը գրել է. «Մեզ մոտ և Կովկասում Ս.-Դ. վրացիները+հայերը+թաթարները+ռուսները աշխատում էին *միասին, տասը*

*տարուց ավելի միասնական* Ս.-Դ. կազմակերպության մեջ: Այդ փրակ չէ, այլ ազգային հարցի պրոլետարական լուծում: Միակ լուծումը»:

Իր ամբողջ հիսնամյա պատմության ընթացքում Հայաստանի կոմունիստական կուսակցությունը՝ մեր համամիութենական կոմունիստական կուսակցության մարտական ջոկատներից մեկը, բարձր է պահել մարքսիզմ-լենինիզմի դրոշը, հետևողականորեն պաշտպանել ՍՄԿԿ-ի շարքերի միասնությունն ու համախմբվածությունը, եղել է և մնում է նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի հավատարիմ հենարանը: *(Ծափահարություններ):* Հայաստանի կոմունիստները մեր մեծ հայրենիքին իրենց անձնուրաց ծառայությամբ վաստակել են բովանդակ երկրի աշխատավորների արժանի հարգանքը:

Մեր հանդիսավոր նիստում մենք այսօր տեսնում ենք հին մարտական գվարդիայի ներկայացուցիչներին՝ հեղափոխության ակտիվ մասնակիցներին: Նրանք իրենց ուսերին են կրել պայքարի ծանրությունը և հասել բաղձալի հաղթանակին: Առաջին հերթին նրանց, կուսակցության բոլոր վետերաններին, սովետական իշխանության հաղթանակի համար պայքարած բոլոր մարտիկներին ենք մենք այսօր, կուսակցության ու հանրապետության մեծ տոնի օրը, ուղղում մեր ջերմագին խոսքերը, քաջառողջության և անձնական երջանկության մեր անկեղծ բարեմաղթությունները: *(Երկարատև ծափահարություններ):*

Թույլ տվեք, ընկերնե՛ր, Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի անունից հանրապետության բոլոր կոմունիստներին ջերմորեն շնորհավորել Հայաստանի կոմունիստական կուսակցության պանծալի հոբելյանի առթիվ: Ձեզ ամբողջ հոգով նոր, մեծ հաջողություններ եմ մաղթում աշխատանքում՝ ի բարօրություն մեր մեծ հայրենիքի: *(Բուռն ծափահարություններ):*

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը, Հայաստանում սովետական իշխանության հաղթանակը հայ ժողովրդին բերեցին իսկական սոցիալական ու ազգային ազատագրություն, արմատական շրջադարձ նշանավորեցին նրա ճակատագրում:

Մարդկանց սրտերում անջնջելի կմնա հայ ժողովրդի հերոս որդիների պայծառ հիշատակը, որոնք կյանքները տվեցին հանուն սովետների իշխանության: Այդ հիշատակը կլինի հավերժական, ինչպես որ հավերժական են Հայաստանի լեռները՝ պատմության անխոս վկաները:

Հայաստանում, ինչպես որ մեր երկրում ամենուրեք, սովետական իշխանությունը ամրապնդվել և կոփվել է դասակարգային կատաղի մարտերում, հաղթահարելով անասելի դժվարություններ: Այստեղ նստած ընկերներից շատերը լավ կհիշեն, թե ինչպիսի ծանր ժառանգություն էր վիճակվել հայ ժողովրդին: Բուրժուական նացիոնալիստների՝ դաշնակների հակաժողովրդական, բախտախնդիր քաղաքականության հետևանքով տնտեսությունը հասցվել էր լիակատար անկման: Ամենուրեք թագավորում էին ավերածությունը, սովը, հիվանդությունները, որոնցից բյուրավոր մարդիկ էին կոտորվում: Բայց Հայաստանի աշխատավորությունը, դառնալով իր բախտի տերը, կարողացավ արագորեն ապաքինել այդ վերքերը: Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, հենվելով մյուս սովետական ժողովուրդների անշահախնդիր եղբայրական օգնության վրա, նա իր հինամենի երկրում կառուցեց նոր, երիտասարդ, արդար հասարակություն, որը չգիտե շահագործում, ճնշում, դասակարգային ու ազգային թշնամանք, կառուցեց սոցիալիզմ:



..., Իսկ երբ սովետական երկրի վրա մահացու վտանգ կախվեց, հայ ժողովուրդը, ինչպես որ Սովետական Միության բոլոր ժողովուրդները, ելավ պաշտպանելու Հոկտեմբերի նվաճումները: Պատերազմի տարիներին Հայաստանի աշխատավորները, հայ ռազմիկները ցուցաբերեցին մեծ արիություն, տոկունություն և հերոսություն:

Լեգենդար դարձավ 89-րդ Հայկական Թամանյան դիվիզիայի սխրագործությունը, որի մասին իր զեկուցման մեջ խոսեց Անտոն Երվանդովիչը: Այդ դիվիզիան իր դրոշները Կովկասի նախալեռներից հաղթականորեն մինչև Բեռլին հասցրեց: *(Ծափահարություններ):*

Արիության ու հերոսության համար տասնյակ հազարավոր հայ ռազմիկներ պարգևատրվեցին շքանշաններով ու մեդալներով, 103 մարդ արժանացավ Սովետական Միության հերոսի կոչման, իսկ խիզախ օդաչու Նելսոն Ստեփանյանին այդ կոչումը շնորհվեց կրկնակի:

Սովետական մարդիկ մեծ հարգանքով են տալիս պանծալի զորապետներ, զորքերի և մեր զինված ուժերի մարտական գործողությունների կազմակերպիչներ, քաղաքացիական կռիվների հերոս Գայի (Բժշկյանց), Սովետական Միության մարշալ Բաղրամյանի, Սովետական Միության նավատորմի ծովակալ Իսակովի, ավիացիայի մարշալ Խուդյակովի, զրահատանկային զորքերի մարշալ Բաբաջանյանի և հայ ժողովրդի զավակ՝ մյուս տաղանդավոր զորավարների անունները: *(Բուռն ծափահարություններ):*

Ուկրաինայի ու Բելոռուսիայի, Բրյանսկի ու Սմոլենսկի մարզերի, Ղրիմի ու Հյուսիսային Կովկասի աշխատավորները լավ են հիշում հայ ժողովրդի խիզախ որդիներին, որոնք իրենց հայրենի լեռներից հեռու, պարտիզանական ջոկատներում և միավորումներում անվեհեր մարտնչում էին ֆաշիստների դեմ, ջախջախում մեր սրբազան հողի վրա ոտնձգություն կատարած զավթիչներին:

Թշնամու նկատմամբ հաղթանակը մենք ձեռք բերեցինք թանկ գնով: Միլիոնավոր սովետական մարդիկ և նրանց թվում Հայաստանի բազում որդիներ ու դուստրեր կյանքները տվեցին հանուն իրենց սոցիալիստական հայրենիքի ազատության ու անկախության:

Հերոսների անունները միշտ անմահ կմնան երախտագետ ժողովրդի հիշողության մեջ: *(Ծափահարություններ):*

Ընկերնե՛ր: Հայրենական մեծ պատերազմի դաժան գոտեմարտերում Սովետական Միության ժողովուրդները պաշտպանեցին իրենց սոցիալիստական հայրենիքը, երջանկության իրենց իրավունքը, մեծ Լենինի մատնանշած, մեր հայրերի հարթած ուղիով ընթանալու իրավունքը: Ընթանալով այդ ուղիով, սովետական մարդիկ բառացիորեն կերպարանափոխեցին երկիրը, բոլոր եղբայրական հանրապետությունների կյանքը: Լենինի կուսակցության ղեկավարությամբ նրանք նորանոր փառավոր հաղթանակներ են նվաճում խաղաղ շինարարության բոլոր ճակատներում, հսկայական գործեր են անում, և այդ գործերը միախառնվում են մի հուժկու հոսանքի մեջ, որի անունն է կոմունիզմի կառուցում: *(Ծափահարություններ):*

Ահա Սովետական Հայաստանը ևս իր հիսնամյակը դիմավորում է հանրապետության տնտեսական, սոցիալական ու հոգևոր կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերած աչքի ընկնող նվաճումներով: Այս մասին հենց նոր փայլուն կերպով և լավ ասվեց ընկեր Քոչինյանի զեկուցման մեջ: Ուժեղ տպավորություն են գործում հանրապետության արդյունաբերության զարգացման

տվյալները: Սովետական իշխանության տարիներին արդյունաբերական արտադրանքի ծավալն աճել է ավելի քան 180 անգամ: Սա արդեն ինքնըստինքյան պերճախոս ցուցանիշ է, բայց բանը միայն քանակը չէ: Այստեղ բոլորովին նոր են ստեղծվել ինդուստրիայի այնպիսի ժամանակակից ճյուղեր, ինչպիսիք են քիմիական արդյունաբերությունը, էլեկտրատեխնիկական մեքենաշինությունը, սարքաշինությունն ու ռադիոէլեկտրոնիկան: Ըստ էության նոր հիման վրա են կարգացել գունավոր մետալուրգիան, թեթև և սննդի արդյունաբերությունը:

Հայաստանի գիտնականների, ինժեներների ու բանվորների ստեղծած շատ արտադրանքներ լավ հռչակ են ձեռք բերել ինչպես մեր երկրում, այնպես էլ արտասահմանում: Պարզ է, որ այսպիսի բարձրորակ արտադրանք կարելի է թողարկել սոսկ այնպիսի ձեռնարկություններում, որոնք տեխնիկական վինման բարձր մակարդակ ունեն:

Պարզ է նաև, որ այդպիսի մեքենաներ, ապարատներ և սարքեր կարող է ստեղծել միայն բարձր որակավորում ունեցող բանվոր դասակարգը, որը լայն գիտելիքներ և լայն մտահորիզոն ունի: Հայաստանի բանվոր դասակարգի՝ մեր երկրի բանվոր դասակարգի պանծալի ջոկատի, ձևավորումը սոցիալիզմի կարևորագույն նվաճումն է:

Արմատապես փոխվել է Հայկական գյուղի կերպարանքը: Մեկընդմիշտ անցյալի գիրկն են չքացել խղճուկ հողակտորներ ունեցող մշտական, անհույս կարիքի մեջ գտնվող գեղջկական մանր տնտեսությունները: Ստեղծվել և հաջողությամբ կարգանում է առաջավոր տեխնիկայի, գիտակցական կոլեկտիվ աշխատանքի վրա հիմնված կոլտնտեսային-սովխոզային խոշոր արտադրությունը: Գյուղացու առջև բացվել են սոցիալական ու հոգևոր ծաղկման լայն հորիզոններ, նա դարձել է իր նոր, սոցիալիստական կյանքի ակտիվ կերտողը:

Սովետական իշխանության տարիներին հանրապետությունում հսկայական աշխատանք է տարվել հողերի մելիորացման ուղղությամբ: Կառուցվել են տասնյակ ջրամբարներ, պոմպակայաններ, գցվել է ավելի քան 3 հազար կիլոմետր ջրանցք: Աճում է հողագործության և անասնապահության կուլտուրան: Այս ամենը հնարավորություն է տվել հասնելու գյուղատնտեսության արտադրանքի կայուն աճի: Վերջին չորս տարում հանրապետության գյուղատնտեսության համախառն արտադրանքի միջին տարեկան ծավալը 17 տոկոսով գերազանցել է նախորդ հնգամյակում ձեռք բերված մակարդակը:

Այս հաջողությունները գյուղատնտեսության կարգացման նկատմամբ կոմունիստական կուսակցության ու սովետական կառավարության մշտական հոգատարության արդյունքն են, Սովետական Հայաստանի գյուղացիության անձնուրաց աշխատանքի արդյունքը:

Ընկերնե՛ր: Սովետական Հայաստանն այսօր առաջավոր գիտության, բազմակողմանի կարգացած սոցիալիստական մշակույթի հանրապետություն է:

Հայկական ազգային մշակույթը վաղեմի ավանդույթներ ունի: Նշանակալից է այն ավանդը, որ հայ ժողովուրդը ներդրել է համաշխարհային քաղաքակրթության կարգացման մեջ:

Դարեր կանցնեն, բայց չի թուլանա հայկական ժողովրդական բանահյուսության մի այնպիսի գլուխգործոցի ներգործուն հզոր ուժը, ինչպիսին է «Սասունցի Դավիթ» հերոսական էպոսը: Թարմությունը չեն կորցնում մեծ բանաստեղծ ու երգիչ Սայաթ-Նովայի ավելի քան 200 տարի առաջ գրած տա-



ղերը: Առաջվա նման նրանք, ովքեր այցելում են ձեր հրաշալի երկիրը, հիանում են հայ ճարտարապետների մեծ վարպետությամբ, պատմական հին հուշարձանների անկրկնելի գեղեցկությամբ:

Երևանցիների օրինական հպարտության առարկաներից մեկն է հռչակավոր Մատենադարանը՝ հին հայկական ձեռագրերի հրաշալի գանձարանը: Այնտեղ մարդ ասես անմիջականորեն հաղորդակցվում է հայ ժողովրդի հազարամյա պատմությանը: Եվ որքան շատ ես խորհում այդ պատմության դասերի վրա, այնքան մեծ հպարտությամբ կարող ես ասել. այո՛, սովետական իշխանության հաղթանակը փրկեց հայ ազգի հնամենի մշակույթը, սոցիալիզմի հաղթանակը վերածնեց այդ տաղանդավոր ժողովրդի հոգևոր կյանքը, լավագույն պայմաններ ստեղծեց նրա բազմակողմանի ծաղկման համար: *(Ծափահարություններ)*:

Եվ իրոք, ընկերներ, այսօր անհավատալի է թվում, որ հին մշակույթի տեր ժողովուրդը, որը տակավին չորրորդ դարում ստեղծել է իր դպրությունը, հեղափոխությունից առաջ ավելի քան 90 տոկոսով անգրագետ էր: Եվ ահա այդ ժողովուրդը, հասարակ հայ աշխատավորները, հովիվներն ու հողագործները, որմնադիրներն ու արհեստավորները սերնդե-սերունդ փոխանցել են հին մատյանների ու ձեռագրերի էջերը: Նրանք այդ էջերը պահպանել են որպես ամենաթանկագին մասունք, բայց նույնիսկ չէին կարողանում դրանք կարդալ:

Միայն սովետական իշխանությունը նրանց այդպիսի հնարավորություն ընձեռեց, հայ աշխատավորներին փրկեց հավիտենական խավարից՝ անգրագիտությունից ժողովրդի սեփականությունը դարձրեց ոչ միայն այդ ձեռագրերը, այլև Հայաստանի ամբողջ բազմահարուստ մշակույթը: *(Ծափահարություններ)*:

Սովետական իշխանության հաղթանակից անմիջապես հետո Հայաստանում բացվեց հանրապետության առաջին բարձրագույն ուսումնական հաստատությունը՝ Երևանի պետական համալսարանը:

Եթե առաջներում հայ ժողովրդի միայն սակավաթիվ ներկայացուցիչներին էր հաջողվում բարձրագույն կրթություն ստանալ և այն էլ բացառապես Հայաստանի սահմաններից դուրս, ապա այժմ գիտելիքներ ստանալու համար հանրապետություն են գալիս ուրիշ շատ երկրների պատանիներ ու աղջիկներ: Հազար բնակչին ընկնող ուսանողների թվով Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը շատ առաջ է անցել բազմաթիվ կարգացած կապիտալիստական երկրներից:

Հենվելով սոցիալիզմի ստեղծած հասարակական նոր հիմքի վրա, սովետական եղբայր ժողովուրդների օգնության վրա, հայ ժողովուրդը հիանալի հաջողությունների է հասել գիտության կարգացման ասպարեզում: Հայաստանում այժմ գործում է մոտավորապես 100 գիտական հիմնարկություն: Այստեղ հաջողությամբ մշակվում են տեսական մեխանիկայի, քիմիայի ու երկրաբանության հրատապ պրոբլեմները, գիտության այնպիսի ժամանակակից ուղղություններ, ինչպիսին են բիոֆիզիկան և կիբեռնետիկան:

Սովետական Հայաստանը և մեր ամբողջ երկիրը իրավամբ հպարտանում են հանրապետության բազմաթիվ գիտական կոլեկտիվների և ամենից առաջ Բյուրականի աստղադիտարանի նվաճումներով: Այդ հիանալի գիտական կենտրոնը գլխավորում է ականավոր գիտնական, սոցիալիստական աշխատանքի հերոս, Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ

ընկեր Համբարձումյանը: *(Ծափահարություններ)*: Ի դեպ, վերջերս նա վերընտրվեց գիտական միությունների միջազգային խորհրդի պրեզիդենտի պոստում: Եթե որոշ տերմիններ փոխ առնենք նրա սիրած աստղագիտությունից, ապա կարելի է համարձակորեն ասել, որ սովետական ու համաշխարհային գիտության երկնակամարում ակադեմիկոս Համբարձումյանի անունը շողում է որպես առաջին մեծության աստղ: *(Ծափահարություններ)*:

Հայկական սոցիալիստական մշակույթի բարձունքների պերճախոս վկայությունն են նաև հանրապետության բազմաթիվ ականավոր նկարիչների, գրողների, արտիստների անունները:

Այստեղ բավական է հիշատակել ժամանակակից գեղանկարչության նշանավոր վարպետ Մարտիրոս Սարյանի անունը: *(Ծափահարություններ)*: Նա, ով լինում է այդ կարմանահրաշ նկարչի ցուցահանդեսներում, մեկընդմիշտ իր հետ տանում է իսկական արվեստի հետ հանդիպման տոնի կզացողությունը, արվեստ, որը փառաբանում է վեհապանծ, առնական ու քնքուշ երկրամասը՝ Սովետական Հայաստանը: *(Ծափահարություններ)*:

Թերևս դժվար է այսօր մեր անծայրածիր երկրում գտնել մի անկյուն, որտեղ չհնչեր Արամ Խաչատրյանի կրակոտ, խորապես ազգային և միևնույն ժամանակ սովետական ու համաշխարհային երաժշտական մշակույթի առաջավոր նվաճումներն իր մեջ ներծծած երաժշտությունը: *(Ծափահարություններ)*:

Մեր կուսակցությունը միշտ էլ մեծ հարգանքով է վերաբերվել և վերաբերվում է սովետական ստեղծագործական մտավորականությանը: Նա բարձր է գնահատում գրականության ու արվեստի այն գործիչներին, որոնք խորապես գիտակցում են իրենց դերը հասարակության մեջ և պատասխանատվությունը նրա հանդեպ, ըստ արժանվույն են ներկայացնում մեր առաջավոր սոցիալիստական արվեստը, իրենց ամբողջ ստեղծագործությամբ հաստատում են կոմունիստական իդեալները: Ձևով ազգային նրանց լավագույն ստեղծագործությունները միշտ աչքի են ընկել աշխարհը դասակարգայնորեն տեսնելու հստակությամբ, կուսակցականությամբ տոգորված սոցիալիստական խոր բովանդակությամբ:

Հենց այդպիսի ստեղծագործություններն են դառնում, ընկերներ, իրոք, ժողովրդական, ճանապարհ գտնում դեպի բոլոր սովետական մարդկանց սրտերը, նրանց կողմից գնահատվում որպես անանց արժեքներ, մեր երկրի բոլոր ժողովուրդների ընդհանուր սեփականություն: Գործնականում հենց այդպիսի ստեղծագործություններն են հարստացնում Սովետական Միության եղբայրական ժողովուրդների մշակույթը:

Սովետական Հայաստանի պատմական փորձը կրկին ու կրկին համոզում է, որ ազգի իսկական ծաղկումը ձեռք է բերվում ոչ թե ազգային պարփակման ու մեկուսացման ուղիներով, այլ սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների եղբայրական ընտանիքում՝ փոխադարձաբար միմյանց հարստացնող ներդաշնակ կարգացման շնորհիվ: *(Երկարատև ծափահարություններ)*:

Հայկական սոցիալիստական պետականության ստեղծումը, Սովետական Հայաստանի տնտեսական ու հոգևոր կյանքի բազմակողմանի ծաղկումը սոցիալիզմի, կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության կենսահաստատ ուժի վառ ապացույցն են: *(Ծափահարություններ)*:

Ասում են, թե, երբ ձեր հանրապետություն են այցելում արտասահմանցի հայրենակիցները, որոնք տակավին հիշում են նախասովետական Հայաստանը, ապա նրանք չեն կարողանում թաքցնել իրենց հիացմունքը հայ ժողովրդի կյանքում կատարված վերափոխումների առթիվ: Ընդ որում, այդպիսի կզացմունքներ են արտահայտում նույնիսկ նրանք, ում այնքան էլ դուր չի գալիս սովետական իշխանությունը: *(Ծիծաղ, ծափահարություններ)*: Դե, ինչ արած, եթե նույնիսկ այդ մարդիկ ստիպված են խոստովանելու Սովետական Հայաստանի աչքի ընկնող հաջողությունները, ուրեմն ձեր գործերն ընկերներ, իսկապես որ վատ չեն գնում, լավ են գնում: *(Բուռն ծափահարություններ)*:

Ընկերնե՛ր: Սովետական իշխանության տարիներին հանրապետությունում իրականացված տնտեսական, մշակութային ու սոցիալական խոր վերափոխումները Սովետական Միության կոմունիստական կուսակցության և նրա մարտական ջոկատի՝ Հայաստանի կոմունիստական կուսակցության ստեղծարար ու կազմակերպչական հսկայական գործունեության արդյունքն են: *(Ծափահարություններ)*: Այսօր, ինչպես որ միշտ, կոմունիստներն ընթանում են նրանց առաջին շարքերում, ովքեր իրենց աշխատանքով ամրապնդում են հայրենիքի հզորությունը, լավացնում ժողովրդի կյանքը՝ բազմապատկելով կոմունիստական շինարարության հաջողությունները:

Մենք ընդառաջ ենք գնում Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարին: Ամբողջ երկրում ընդլայնվում է սոցիալիստական մրցությունը նշանակալից իրադարձության պատվին: Բանվորները, կոլտնտեսականները, մտավորականությունը՝ ամենքը հայտարարել են, որ մտադիր են նշանավորել լենինյան հոբելյանական տարին և իրենց հարազատ կուսակցության համագումարը դիմավորել աշխատանքային նոր հաջողություններով: Կոմունիստի խոսքը, ամեն մի սովետական մարդու խոսքը գործից չի տարբերվում: Մարդիկ աշխատում են լարված, ոգևորված, անձնուրացորեն և նրանց աշխատանքը հիանալի արդյունքներ է տալիս: Երկրի արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների ու սովխոզների հազարավոր կոլեկտիվներ, տասնհինգ միութենական հանրապետություններից յոթը, ավելի քան վաթսուն ինքնավար հանրապետություններ, երկրամասեր ու մարզեր արդեն զեկույց են տվել արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալի աճի և կարևորագույն արտադրանքների մեծամասնության թողարկման հնգամյա պլանը ժամկետից շուտ ավարտելու, գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների ավելացման մասին:

Աշխատանքում հիանալի հաջողությունների են հասել նաև Հայաստանի շատ կոլեկտիվներ: Հնգամյակի առաջադրանքները ժամկետից շուտ, դեռևս հոկտեմբերին կատարեցին Երևանի էլեկտրալամպերի գործարանի, Լենինականի գուլպայի ֆաբրիկայի, «Ալմաստ», «Էլեկտրոն» գործարանների և ուրիշ շատ ձեռնարկությունների կոլեկտիվները: Ինչպես մեզ հավաստիացնում են հանրապետության ղեկավարները, Հայաստանի արդյունաբերությունը, ամբողջությամբ վերցրած, հաջողությամբ կկատարի հնգամյա պլանը: *(Ծափահարություններ)*:

Մինչև հնգամյակի վերջը դեռ մեկ ամիս կա: Բայց արդեն այժմ կարելի է լիակատար հիմքով հայտարարել, որ այս հնգամյակի համար առաջադրված հիմնական խնդիրները սովետական ժողովուրդը հաջողությամբ կատարել է: *(Ծափահարություններ)*: Երկիրը նշանակալի առաջընթաց քայլ է արել իր տնտեսական պոտենցիալի մեծացման, հասարակության կյանքի բոլոր կող-

մերի կարգացման ուղղությամբ: Մեր պետությունը ավելի ամուր, ավելի ուժեղ է դարձել բոլոր տեսակետներից: Եվ սրանում է անցած հինգ տարում կոմունիստական կուսակցության, ամբողջ սովետական ժողովրդի գործունեության գլխավոր արդյունքը: *(Ծափահարություններ)*:

Սովետական երկրի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի կարգացման նոր, նկատելի նվաճումներով կնշվի նաև ընթացիկ տարին: Արդյունաբերական արտադրության 10 ամսվա պլանը, ինչպես ամբողջությամբ վերցված, այնպես էլ արտադրանքների կարևորագույն տեսակների գծով, գերակատարվեց: Անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ արդյունաբերական արտադրանքի թողարկումն ավելացել է 8,2 տոկոսով:

Դա վատ չէ: Գիտահետազոտական, նախագծային, կոնստրուկտորական կազմակերպությունները և արդյունաբերական ձեռնարկությունները մեծ աշխատանք են կատարել տեխնիկական առաջադիմության բնագավառում, որին մեր կուսակցությունը առաջնահերթ նշանակություն է տալիս:

Մեր գիտության ու տեխնիկայի մեծ նվաճումների և մեծ հնարավորությունների նոր վկայությունը «Լուսին—16» և «Լուսին—17» տիեզերակայանների հաջող թռիչքներն են, որոնք առաջին անգամ ավտոմատ կերպով լուսնային բնահող բերեցին Երկիր և հետազոտեցին Լուսնի մակերևույթը Երկրից կառավարվող ավտոմատ լուսնագնացի միջոցով: *(Ծափահարություններ)*: Այժմ մենք Լուսնի վրա ունենք մեր տրանսպորտը, որը, ճիշտ է, այնքան էլ արագընթաց չէ, բայց, այնուամենայնիվ, ութանիվ է: *(Ծիծաղ, ծափահարություններ)*:

Գյուղատնտեսական տարին հաջողությամբ են ավարտում գյուղի աշխատավորները: Աճեցվել է մեր երկրի հողագործության ամբողջ պատմության ընթացքում հացահատիկային կուլտուրաների ամենաբարձր բերքը: Միութենական հանրապետություններից երկրի հացահատիկային ռեսուրսների մեջ առավել մեծ ավանդ ներդրեցին Ռուսաստանի Ֆեդերացիայի *(ծափահարություններ)*, Ղազախստանի *(ծափահարություններ)* և Ուկրաինայի *(ծափահարություններ)* հողագործները: Կարևոր նվաճում պետք է համարել բրնձի արտադրությունը մեծացնելու արագ տեմպերը: Ընթացիկ հնգամյակում այդ կարևոր կուլտուրայի տարեկան միջին արտադրությունը կկազմի մեկ միլիոն տոննա: Բայց չէ որ նախորդ հնգամյակում տարեկան միջին հաշվով արտադրվել է ընդամենը 390 հազար տոննա:

Ընթացիկ տարում մեր երկրում բամբակի՝ այդ արժեքավորագույն տեխնիկական կուլտուրայի համախառն բերքը բարձր կլինի, քան երբևէ նախկինում: Անցած տարվանից զգալիորեն շատ են մթերվել կարտոֆիլ, բանջարեղեն, միրգ, թեյ և մի շարք այլ կուլտուրաներ:

Այս տարի ավելացել են մսի, կաթի, ձվի և բրդի արտադրությունն ու պետական գնումները: Կարևոր է նաև այն, որ այդ աճը ձեռք է բերվել անասունների և թռչունների գլխաքանակի ավելացմանը զուգընթաց:

Անշուշտ, ընկերներ, մեր գյուղատնտեսության առջև դեռ շատ լուրջ խնդիրներ են դրված: Հարկավոր է ամրապնդել ձեռք բերվածը, հողագործության և անասնապահության վերելքը դարձնել կայուն և հարաճուն: Դա հնարավորություն կտա բարելավելու նաև բնակչության մատակարարումը, վերացնելու որոշ բնագավառներում տեղ գտած թերությունները, անկանոնությունները, օրինակ, մսամթերքների վաճառքի գործում: Կուսակցությունը և կառավարությունը անդուլ ուշադրություն են նվիրում այդ խնդիրներին: Դրանց արմատական լուծման ուղին պարզորոշ սահմանեց ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը: Պլենումի նշած միջոցառումների կենսագործման համար այժմ, կարելի է ասել, աշխատում է ամբողջ կուսակցությունը, ամբողջ երկիրը: Եվ ընթացիկ գյուղատնտեսական տարվա արդյունքները լավ քայլ են այդ ճանապարհին:



Թույլ տվեք այս ամբիոնից բանվորներին, կոլտնտեսականներին, մասնագետներին, քաղաքի ու գյուղի բոլոր աշխատավորներին ի սրտե շնորհավորել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ձեռք բերված հաջողությունների առթիվ ու նրանց մաղթել աշխատանքային նոր հաղթանակներ, նոր մեծագործությունների կոչել ի բարօրություն մեր սովետական սոցիալիստական հայրենիքի: *(Բուռն ծափահարություններ)*: Շատ բան է արված, հաջողություններն ակնհայտ են: Բայց մեզ՝ կոմունիստներիս համար միշտ նշանաբան են եղել ու կլինեն լենինյան հետևյալ խոսքերը. կանգ չառնել ձեռք բերվածի վրա, անպայման առաջ շարժվել, անցնել ավելի ու ավելի բարդ խնդիրների լուծման:

Ընկերնե՛ր: Այժմ մեր կուսակցությունը թևակոխում է իր XXIV համագումարի նախապատրաստման ամենապատասխանատու ժամանակաշրջանը: Հաշվետու-ընտրական ժողովներից հետո տեղի կունենան կուսակցական կոնֆերանսներ և միութենական հանրապետությունների կոմկուսակցությունների համագումարներ: Կոմունիստների բազմամիլիոնանոց բանակը ամփոփում է կատարված աշխատանքի արդյունքները, վերլուծում կուտակված փորձը, ապագայի համար անում անհրաժեշտ հետևություններ:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն համոզված է, որ կուսակցական ժողովները, կոնֆերանսներն ու համագումարները կանցնեն գործարարության և բարձր պահանջկոտության, սկզբունքային քննադատության և ինքնաքննադատության մթնոլորտում, կուղեկցվեն կոմունիստների ակտիվության հետագա աճով, կուսակցական կազմակերպությունների գործունեության բարելավմամբ: Հաշվետվությունները և ընտրությունները, անկասկած, նորից փայլուն կերպով կցուցադրեն մեր կուսակցության ուժն ու ամրությունը, նրա շարքերի անխախտ միասնությունն ու համախմբվածությունը, սովետական ժողովրդին կոմունիզմի ուղիով այսուհետև ևս հաստատ ու անշեղորեն առաջնորդելու նրա պատրաստակամությունը: *(Երկարատև ծափահարություններ)*:

Հարգելի ընկերնե՛ր:

Թույլ տվեք համառոտակի անդրադառնալ նաև մի քանի միջազգային հարցերի:

Հայաստանի կոմունիստները և ամբողջ հայ ժողովուրդը, բոլոր սովետական մարդիկ լավ գիտեն մեր արտաքին քաղաքականության էությունը: Դրա իմաստն է պաշտպանել սոցիալիզմի շահերը, ժողովուրդների ազատագրական պայքարը, հետևողականորեն պաշտպանել պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքը, ամրապնդել ժողովուրդների խաղաղությունն ու բարեկամությունը: Մեր կուսակցության XXIII համագումարը ամենայն պարզորոշությամբ հաստատեց արտաքին քաղաքական այդ կուրսը, և նրա որոշումները իրենց մարմնավորումն են գտնում միջազգային ասպարեզում Սովետական Միության լայն և ակտիվ գործունեության մեջ, այդ թվում ագրեսիայի ուժերը սանձահարելու, միջազգային անվտանգությունն ամրապնդելու նպատակով մի շարք խոշոր գործողությունների մեջ: Մեր կուսակցության և սո-

վետական պետության այդ քաղաքականությունը արդի պայմաններում արտաքին քաղաքական այն սկզբունքների կենսագործումն է, որ մշակել ու մեզ պատգամել է Վ. Ի. Լենինը: Այդ քաղաքականությունը արժանանում է մեր ժողովրդի, եղբայրական սոցիալիստական երկրների և միջազգային կոմունիստական շարժման, աշխարհի բոլոր առաջադեմ ուժերի լիակատար աջակցությանը:

Սովետական արտաքին քաղաքականությունը խաղաղասիրական և կոնստրուկտիվ է: Հենց այդ պատճառով էլ նա անհաշտ է ժողովուրդների ազատության և անկախության նկատմամբ իմպերիալիստների ամեն տեսակ ոտնձգությունների հետ և նպատակ ունի ակտիվ ու վճռական հակահարված տալ այդ ոտնձգություններին: Սովետական Միությունը քաղաքական, տնտեսական և այլ կարգի համակողմանի աջակցություն է ցույց տալիս այն երկրներին ու ժողովուրդներին, որոնց դեմ է ուղղվում իմպերիալիստական ագրեսիան:

Ագրեսիային հակահարված տալու նպատակով ազատասեր, հակաիմպերիալիստական ուժերի միացյալ գործողությունները ամենալավ սթափեցնող միջոցն են իմպերիալիզմի ճամբարի չափից դուրս տաք, ավանտյուրիստական գլուխների համար, այն բանի համար, որ կանխվի «լոկալ» նոր պատերազմների սանձազերծումը և թույլ չտրվի, որ դրանք վերաճեն համայն մարդկությանը սպառնացող պատերազմական վտանգի: Կյանքը համոզիչ կերպով այդ է ապացուցում:

Վիետնամի մարտնչող ժողովուրդը Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների աջակցությամբ վիժեցրեց ամերիկյան ռազմամոլների ծրագրերն ու հաշիվները: Ամերիկյան դիվանագիտությունը ստիպված է, ամեն կարգի խորամանկությունների դիմել՝ համաշխարհային հասարակայնության և բուն ամերիկացիների ուշադրությունը մի կերպ շեղելու այն բանից, որ ԱՄՆ-ը փակուղի է ընկել Հարավ-Արևելյան Ասիայում սանձազերծած գրեթե տասնամյա ագրեսիվ պատերազմի հետևանքով:

Բայց խաբեական քաղաքական մանևրները, որոնց նպատակն է ամերիկյան դրածոների օգնությամբ շրջանց ճանապարհով «օրինականացնել» ԱՄՆ-ի վերահսկողությունը Հարավային Վիետնամի վրա, նույնպես ձախողման են դատապարտված, ինչպես որ ձախողվեց երկաթով, արյունով ու կրակով Վիետնամի խիզախ ժողովրդին ընկճելու փորձը:

Ագրեսորները չեն դադարել ագրեսոր լինելուց: Ժողովուրդների ազատության և անկախության թշնամիները չեն դարձել հեզ գառներ և բարի հրեշտակներ: Այդ մասին շատ համոզիչ կերպով մեզ նորից են հիշեցնում ՎԴՀ-ի մի շարք բնակավայրերի վրա վերջերս ամերիկյան ավիացիայի կատարած պրովոկացիոն հարձակումները և Վաշինգտոնի որոշ քաղաքագետների անօրինակ լկտի այն փորձերը, որոնց նպատակն է «լեգալացնել» այդ ավազակությունը, ԱՄՆ-ին, թող թույլ տրվի ասել, ինչ-որ «իրավունք» վերապահել անարգել կերպով տեր ու տնօրինություն անելու ուրիշ պետությունների տերիտորիայում և օդային տարածության մեջ:

Այդ ամենը սուսկ տասնապատկում է վիետնամական ժողովրդի եռանդը ագրեսորների դեմ մղվող պայքարում: Իմպերիալիստների և նրանց վարձկանների արյունալի ոճրագործությունները, լինի դա Վիետնամի ժողովրդի դեմ մղվող պատերազմը, դեմոկրատական Գվինեայի վրա կատարած ավազակաբարո հարձակումը, թե աշխարհի ուրիշ շրջանների ազատագրական ուժերի դեմ ծավալված տեռորը, հանգեցնում են համայն աշխարհի ժողովրդական մասսաների հակաիմպերիալիստական համերաշխության է՛լ ավելի ամրապնդման: Ավելի ու ավելի պարզորոշ է դառնում, թե բոլոր ժողովուրդների համար, բովանդակ աշխարհի խաղաղության համար ինչպիսի մեծ սպառնալիք է թաքցնում իր մեջ իմպերիալիզմի արտաքին քաղաքականությունը:



Վիետնամում պատերազմի վերացման ուղին պարզ է. դա ԱՄՆ-ի ռազմական միջամտության դադարեցումն է, ագրեսորների զորքերի դուրս բերումը և վիետնամական ժողովրդին հնարավորություն տալը՝ ինքնուրույնաբար տնօրինելու իր գործերը: Հենց սա է Հարավային Վիետնամի Հանրապետության ժամանակավոր հեղափոխական կառավարության և Վիետնամի Դեմոկրատական Հանրապետության առաջարկությունների էությունը, առաջարկություններ, որ մենք լիովին պաշտպանում ենք:

Մարտնչող Վիետնամի ժողովրդի արդար գործը անպայման կհաղթանակի: *(Ծափահարություններ)*: Նա կարող է այսուհետև ևս լիակատար վստահությամբ ապավինել Սովետական Միության օգնությանն ու աջակցությանը:

Դրա ևս մեկ կոնկրետ վկայությունը հանդիսացան Վիետնամի Դեմոկրատական Հանրապետությանը Սովետական Միության կողմից տնտեսական և ռազմական օգնություն ցույց տալու վերաբերյալ վերջերս Մոսկվայում ստորագրված համաձայնագրերը: ՎԴՀ-ի կուսակցական մամուլը իր արձագանքներում այդ համաձայնագրերն անվանել է «եղբայրական կոմունիստական կուսակցության, կառավարության և ժողովրդի կողմից ցույց տրվող ջերմ ու եռանդուն աջակցության, իսկայական ու համակողմանի օգնության նոր արտահայտություն»:

Ագրեսորին ավելի ու ավելի վճռական հակահարված է տրվում, ագրեսորը ավելի ու ավելի բացահայտ միջազգային մեկուսացման մեջ է ընկնում միջազգային լարվածության նաև մյուս օջախի շրջանում՝ Մերձավոր Արևելքում: Իսրայելական ագրեսիայի հետևանքների շուտափույթ վերացման համար արաբ ժողովուրդների ծավալած արդար պայքարը հարաճուն աջակցություն է գտնում խաղաղասեր պետությունների կողմից: Պատահական չէ, որ երբ վերջերս ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի 25-րդ նստաշրջանում քննարկվում էր մերձավորարևելյան հարցը, նրա մասնակիցները իրենց ելույթներում մեկը մյուսի ետևից դատապարտում էին ագրեսորին՝ Իսրայելին: Նոյեմբերի 4-ին Գլխավոր ասամբլեայում ընդունված բանաձևի մեջ պարզորոշ ասվում է. Իսրայելի կողմից զավթված արաբական հողերը պետք է վերադարձվեն, մերձավորարևելյան կոնֆլիկտի կարգավորման մասին Անվտանգության խորհրդի որոշումը պետք է լրիվ կատարվի:

Իմպերիալիստական ագրեսիայի դեմ մղվող համատեղ պայքարի ընթացքում շարունակվում են ամրապնդվել Մերձավոր Արևելքի ազգային-ազատագրական շարժման ուժերը: Ամրապնդվում են նաև նրանց բարեկամությունն ու համագործակցությունը Սովետական Միության և սոցիալիստական մյուս պետությունների հետ:

Այժմ, անշուշտ, դժվար է կանխագուշակել, թե կոնկրետ կերպով ինչպես կզարգանան Մերձավոր Արևելքի դեպքերը, որտեղ ագրեսիայի, ռեակցիայի ուժերի և խաղաղության, առաջադիմության, ազատության ուժերի միջև պայքարն անընդհատ շարունակվում է կանապան ձևերով:

Սակայն գլխավորի մասին կարելի է ասել լիակատար վստահությամբ.





ագրեսորին տրվող հակահարվածը ուժեղանում է, նրա միջազգային մեկուսացումը մեծանում է: Այդ ամենը նպաստավոր պայմաններ է ստեղծում միջազգային լարվածության մերձավորաբևելյան օջախի վերացման համար: Այժմ բանն այն է, որ ուժեղացնելով բարոյա-քաղաքական ճնշումը ագրեսորի ու նրա հովանավորողների վրա, խաղաղասեր ուժերը պատշաճ կերպով օգտագործեն այդ պայմանները:

Ինչ վերաբերում է Եվրոպային, ապա այստեղ, ինչպես գիտեք, Սովետական Միությունը Վարշավայի պայմանագրի իր դաշնակիցների հետ միասին վերջին տարիներս մեծ ջանքեր է գործադրել խաղաղությունն ամրապնդելու, եվրոպական բոլոր պետությունների անվտանգությունն ապահովելու և նրանց խաղաղ համագործակցությունը զարգացնելու նպատակով: Դրա շնորհիվ Եվրոպայի մայրցամաքում տեղի են ունենում նկատելի փոփոխություններ, և կարելի է բավարար հիմքով ասել՝ փոփոխություններ դեպի լավը:

Այժմ Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետությունում քաղաքական ակտիվ պայքար է ծավալվել ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի միջև ս. թ. օգոստոսի 12-ին կնքված պայմանագրի վավերացման հարցի շուրջը: Դա պայքար է Արևմտյան Գերմանիայում և նրա սահմաններից դուրս գտնվող այն ուժերի միջև, որոնք ռեալիստորեն են գնահատում իրադրությունը, իրոք հոգ տանում իրենց երկրի ու Եվրոպայի խաղաղության մասին և այն ուժերի միջև, որոնք արդեն տասնամյակներ շարունակ ԳՖՀ-ն մղում են ռևանշիզմի ու միլիտարիզմի կործանարար ուղին, Բոննի քաղաքականությունը Եվրոպայի խաղաղասեր բոլոր ժողովուրդների շահերին հակադրելու ուղին:

Այդ հարցում մեր դիրքորոշումը միանգամայն պարզ է. մենք հանդես ենք գալիս ԳՖՀ-ի հետ նորմալ, բարիդրացիական հարաբերությունների օգտին, փոխադարձաբար ձեռնտու տնտեսական հարաբերությունների և մշակութային կապերի զարգացման օգտին, Եվրոպայի անվտանգությունն ու համայն աշխարհի խաղաղությունն ամրապնդելու գործում բարի համագործակցության օգտին՝ այն լավ հիմքի վրա, որ տալիս է վերջերս ստորագրված պայմանագիրը:

Եվրոպայի իրադրության նորմալացման համար լուրջ նշանակություն կունենար Արևմտյան Բեռլինի հետ կապված որոշ հարցերի կարգավորումը, որին նվիրված են չորս տերությունների՝ ՍՍՀՄ-ի, ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի ներկայացուցիչների միջև այժմ տեղի ունեցող բանակցությունները: Մենք կարծում ենք, որ Արևմտյան Բեռլինի հետ կապված մթնոլորտի առողջացումը միանգամայն հնարավոր է: Դրա համար բավական է միայն, որ բոլոր շահագրգռված կողմերը բարի կամք հանդես բերեն և այնպիսի որոշումներ մշակեն, որոնք ընդառաջեն Արևմտյան Բեռլինի բնակչության ցանկություններին և հաշվի առնեն Գերմանական Դեմոկրատական Հանրապետության օրինական շահերն ու սուվերեն իրավունքները:

Խոշոր իրադարձություն էր և որպես այդպիսին կմնա Ֆրանսիական Հանրապետության պրեզիդենտ պ-րն Պոմպիդուի վերջերս Սովետական Միություն կատարած այցը: Աշխարհի շատ երկրներում այդ այցի արդյունքները գնահատվեցին որպես թե Սովետական Միության և թե Ֆրանսիայի արտաքին քաղաքական մեծ հաջողություն: Կարելի է ավելացնել, որ դա հաջողությունն է բոլոր նրանց, ում համար թանկ են միջազգային համագործակցության ընդլայնման, Եվրոպայի ու ամբողջ աշխարհի միջազգային անվտանգության ամրապնդման շահերը: Մենք համոզված ենք, որ Ֆրանսիայի պրե-



զիդենտի այցի ժամանակ ընդունված սովետա-ֆրանսիական համատեղ փաստաթղթերը դրական ազդեցություն կգործեն միջազգային ամբողջ իրադրության ձևավորման վրա:

Սովետական Միությունը հետևողականորեն ձգտում է փոխադարձաբար ձեռնտու խաղաղ համագործակցություն զարգացնել բոլոր այն պետությունների հետ, որոնք նույն կերպ են մեզ պատասխանում: Մենք օգտակար ենք համարում կոնտակտների որոշ աշխուժացումը Անգլիայի հետ, տեսնում ենք Իտալիայի և արևմտաեվրոպական մի քանի այլ երկրների հետ հարաբերություններն ընդլայնելու լրացուցիչ հնարավորություններ: Միջազգային լարվածության թուլացման և խաղաղության ամրապնդման նպատակներին է ծառայում համաեվրոպական խորհրդակցություն անցկացնելու մասին Վարշավայի պայմանագրի երկրների հայտնի առաջարկությունը, որը նպաստավոր կերպով ընդունեց Եվրոպայի պետությունների մեծ մասը: Այդ խորհրդակցության հրավիրումը ավելի ու ավելի հրատապ է դառնում:

Միջազգային հարաբերությունների բնագավառում կոմունիստական կուսակցության և սովետական պետության ամբողջ գործունեությունը որոշվում է խաղաղության և սոցիալիզմի համար, ագրեսիայի ուժերի և ժողովուրդների ճնշման դեմ մղվող պայքարի լենինյան սկզբունքներով: Մենք ամեն ինչ անում ենք, որպեսզի է՛լ ավելի ամրապնդվի արդիականության վճռական ուժը՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, որի ազդեցությունը համաշխարհային զարգացման ընթացքի վրա անշեղորեն աճում է: *(Երկարատև ծափահարություններ)*:

Մեր լենինյան կուսակցության և սոցիալիստական հայրենիքի նկատմամբ հպարտությամբ համակված՝ մենք վստահորեն ասում ենք, որ Սովետական Միության արտաքին քաղաքականությունը, որը հենվում է նրա տնտեսական ու պաշտպանական հզորության վրա, կորեղ ուժ է, նպաստավոր պայմաններ է ապահովում մեր երկրում կոմունիզմի կառուցման համար, սոցիալիզմի բոլոր երկրների հաջող զարգացման համար, ծառայում է ամբողջ աշխարհի խաղաղության և առաջադիմության գործին: *(Երկարատև ծափահարություններ)*:

Թանկագին ընկերնե՛ր:

Սովետական Հայաստանի և նրա կոմունիստական կուսակցության հոբելյանը զուգադիպեց մի ուրիշ հիշարժան տարելիցի հետ, որը նշում են աշխարհի բոլոր կոմունիստները, ազատության և սոցիալական առաջադիմության բոլոր մարտիկները:

Նոյեմբերի 28-ին լրացավ մեծ հեղափոխական և հանճարեղ գիտնական, Մարքսի հավատարիմ զինակից Ֆրիդրիխ Էնգելսի ծննդյան 150 տարին: *(Երկարատև ծափահարություններ)*:

Մարքսի և Էնգելսի կողմից ստեղծված և նոր պայմաններում Լենինի կողմից զարգացված գիտական կոմունիզմի տեսությունը այն հզոր լծակը եղավ, որի օգնությամբ աշխարհի մեկ երրորդ մասի պրոլետարիատը և նրա շուրջը միավորված աշխատավոր մասսաները տապալեցին շահագործման ու ճնշման կարգերը և բռնեցին նոր, ազատ ու արդար հասարակարգի ստեղծման ուղին: Այդ տեսությունը հիմա էլ ճշմարիտ կողմնացույց է սոցիալիզմ ու կոմունիզմ կառուցողների համար, հուսալի զենք՝ իմպերիալիզմի դեմ, ազգային ու սոցիալական ազատագրության, ամբողջ մարդկության լավա-

գույն ապագայի համար մղվող հեղափոխական պայքարում: Բուդապեշտում նորերս ավարտված հունգար կոմունիստների X համագումարը (որտեղից ուղղակի ձեզ մոտ՝ Սովետական Հայաստանի հոբելյանին մասնակցելու եկան ՍՄԿԿ պատվիրակության անդամները՝ ընկեր Գրիշինը, Ռոմանովը և ես) վերստին համոզիչ կերպով ցուցադրեց սոցիալիզմի երկրների եղբայրական կուսակցությունների, միջազգային կոմունիստական շարժման միասնությունն ու համախմբվածությունը մարքսիզմ-լենինիզմի հաղթական դրոշի ներքո: *(Բուռն, երկարատև ծափահարություններ):*

Սովետական կոմունիստները հպարտանում են, որ Մարքսի—Էնգելսի—Լենինի անմահ գաղափարները պատմության մեջ առաջին անգամ հենց մեր երկրում են գործնականորեն իրականացվել: Առաջնորդվելով այդ գաղափարներով, սովետական ժողովուրդը վստահորեն ընթանում է դեպի կոմունիզմ: *(Երկարատև ծափահարություններ):*

Թանկագին ընկերնե՛ր, բարեկամնե՛ր:

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, սովետական կառավարությունը բարձր են գնահատում Հայաստանի աշխատավորների անձնվեր աշխատանքն ու մեծ ծառայությունները կոմունիստական շինարարության ասպարեզում:

Սովետական Հայաստանի, նրա կոմունիստական կուսակցության կեսդարյա տարելիցի այս նշանակալի և հանդիսավոր օրը ինձ համար հատկապես ուրախալի է ձեզ հաղորդել, որ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը Հայկական Սովետական Սոցալիստական Հանրապետությունը պարգևատրել է Հոկտեմբերյան Հեղափոխության շքանշանով: *(Բուռն, երկարատև ծափահարություններ: Բոլորը ոտքի են կանգնում: Լսվում են՝ «Մեր հարազատ կոմունիստական կուսակցությանը՝ ուռա՛» բացականչություններ):*

Թույլ տվեք ընթերցել ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը:

(Ընկեր Լ. Ի. Բրեժնևը հրապարակում է ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը: Բեմ են բարձրանում հանրապետության ղեկավարներն ու աշխատանքի առաջավորները: Բուռն, երկարատև ծափահարությունների ներքո ընկեր Լ. Ի. Բրեժնևը Հոկտեմբերյան Հեղափոխության շքանշանն ամրացնում է հանրապետության դրոշին):

Թույլ տվեք, թանկագին բարեկամնե՛ր, ասաց ընկեր Բրեժնևը, Սովետական Հայաստանի աշխատավորներին ջերմորեն ու սրտանց շնորհավորել այս մեծ ու արժանի պարգևի առթիվ և նրանց մաղթել լավագույն հաջողություններ ու երջանկություն: *(Բուռն, երկարատև ծափահարություններ: «Ուռա՛» բացականչություններ):*

Թանկագին ընկերնե՛ր:

Այսօր Սովետական Հայաստանին հանձնված հիանալի պարգևը նվաճվել է տասնամյակների հերոսական պայքարով և անձնվեր աշխատանքով: Այս պարգևը Սովետական Հայաստանի փառապանծ բանվոր դասակարգի, սոցիալիստական կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության բարձր գնահատականն է:

Այս պարգևով կարող են իրավամբ հպարտանալ սոցիալիզմի մարտիկների թե՛ ավագ սերունդը և թե՛ նրա արժանավոր հերթափոխը՝ երիտասարդությունը, որն այնքան շատ բան է անում և որը դեռ այնքան շատ բան



պետք է անի ի փառս մեր բազմազգ սոցիալիստական հայրենիքի: *(Երկարատև ծափահարություններ):*

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն հաստատ վստահություն է հայտնում, որ Հայաստանի կոմունիստները, բոլոր աշխատավորները այսուհետև ևս իրենց ուժերը կնվիրաբերեն կոմունիստական շինարարության պլանների կենսագործման համար մղվող պայքարին, նոր նվաճումներով կդիմավորեն Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարը: *(Բուռն, երկարատև ծափահարություններ):*

Կեցցե՛ Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը: *(Բուռն, երկարատև ծափահարություններ):*

Կեցցե՛ Հայաստանի կոմունիստական կուսակցությունը: *(Բուռն, երկարատև ծափահարություններ):*

Կեցցե՛ մեր հզոր հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը: *(Բուռն, երկարատև ծափահարություններ):*

Կեցցե՛ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, որը սովետական ժողովրդին լենինյան ուղիով վստահորեն առաջնորդում է դեպի կոմունիզմի հաղթանակը: *(Բուռն, երկարատև ծափահարություններ: Բոլորը ոտքի են կանգնում: Լսվում են՝ «ուռա», «փա՛ռք հարազատ կոմունիստական կուսակցությանը» բացականչություններ):*



# Ի ՊԱՏԻՎ ՓԱՌԱՊԱՆԾ ՀՈԲԵԼՅԱՆԻ

Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը և Մինիստրների սովետը նոյեմբերի 30-ին ընդունելություն կազմակերպեցին Հայկական ՍՍՀ-ի և Հայաստանի կոմունիստական կուսակցության 50-ամյակի պատվին:

Ընդունելությանը ներկա էին եղբայրական միութենական հանրապետությունների, հերոս քաղաքներ Մոսկվայի ու Լենինգրադի պատվիրակությունները, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի անդամներն ու անդամության թեկնածուները, Հայաստանի կոմկուսի վերստուգիչ հանձնաժողովի անդամները, ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ Գերագույն սովետների դեպուտատներ, մինիստրներ, կուսակցական ու սովետական աշխատողներ, արդյունաբերության, գյուղատնտեսության առաջավորներ, գիտության ու մշակույթի գործիչներ, սովետական բանակի գեներալներ ու սպաներ, սփյուռքահայության ներկայացուցիչները:

Ներկաները ջերմորեն դիմավորեցին ընկերներ Լ. Ի. Բրեժնևին, Պ. Ե. Շելեստին, Վ. Վ. Գրիշինին, Դ. Ա. Կունաևին, Պ. Մ. Մաշերովին, Վ. Պ. Մժավանաձեին, Շ. Ռ. Ռաշիդովին, Հայաստանի կոմունիստական կուսակցության ու կառավարության ղեկավարներին, հոբելյանական հանդիսություններին մասնակցած պատվիրակությունների ղեկավարներին:

Ողջույնի խոսքով հյուրերին դիմեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Ե. Քոչինյանը:

Ընդունելության ժամանակ ճառով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևը:

Հայ ժողովրդի հետ իմ ծանոթությունը, ասաց նա, սկսվել է Հայրենական մեծ պատերազմի օրերին: Ինձ վիճակվեց այն ժամանակ ճանաչել մեր սովետական հայրենիքին, սոցիալիզմի ու կոմունիզմի գործին անսահմանորեն նվիրված հայ ժողովրդի բազում քաջարի, խիզախ զավակների: Նրանք մարտիկներ էին, սպաներ, գեներալներ: Մարտական բարեկամությունը առանձնահատուկ բարեկամություն է: Դա հնարավորություն է ընձեռում կարճ ժամանակամիջոցում ճանաչել մարդու հոգին: Եվ այն ժամանակ, դաժան ճակատամարտերի օրերին, ես ճանաչեցի հայ ժողովրդի սքանչելի հոգին: Երկրորդ անգամ ինձ վիճակվեց հայ ժողովրդի հետ անմիջականորեն շփվել այս օրերին, Սովետական Հայաստանի մայրաքաղաքում, նրա մեծ տոնի օրերին:

Մենք հանդիպումներ ունեցանք ձեր հանրապետության բնակչության ամենատարբեր խավերի ներկայացուցիչների՝ բանվորների, կոլտնտեսականների, մտավորականության հետ:

Այսօր, այստեղ, Երևանում մենք տեսանք հիանալի զորահանդես և աշխատավորության շքերթը: Մեր առջևով անցան ռազմիկները՝ սովետական զինված ուժերի ներկայացուցիչները: Սովետական երկրի զինված ուժերը մեր ժողովրդի զավակն են: Նրանք արդեն բազմիցս գործով ապացուցել են իրենց հզորությունը, իրենց նվիրվածությունը մեր սոցիալիստական հայրենիքին, սովետական ժողովրդին, բազմիցս ցույց տվել, որ իրենք խաղաղության ու սոցիալիզմի հզոր, հուսալի հենարանն են: Ուստի սովետական մարդիկ սիրում են իրենց զինված ուժերը, ուստի մեր կուսակցությունն ու պետությունը ուժեր ու միջոցներ չեն խնայում հայրենիքի պաշտպանունակությունն ամրապնդելու համար: Եվ այսօր զորահանդեսի ժամանակ մենք կարողացանք համոզվել, թե Հայաստանի աշխատավորությունը ինչպիսի ջերմությամբ ու պարծանքով է վերաբերվում մեր սովետական հայրենիքի պաշտպաններին:

Զորահանդեսից հետո հրապարակ վազեցին ուրախ, խնդուն, երջանկությունից շողացող աչիկներով երեխաները: Դրանք մեր ապագան են: Թե մենք ինչպես կդաստիարակենք երեխաներին, դրանից կախված կլինի մեր հասարակության ապագան: Մենք ամենքս կարողացանք համոզվել, որ Սովետական Հայաստանի ժողովրդի պատանի սերունդը շրջապատված է հոգատարությամբ և ուշադրությամբ: Սա վստահություն է ներշնչում, որ ձեր հանրապետության վաղվա օրը կլինի է՛լ ավելի սքանչելի, քա՛ն այսօրվա օրը:

Այնուհետև հրապարակով անցավ երիտասարդությունը: Դեռևս քիչ չեն այնպիսի մարդիկ, որոնք փորձում են ստվեր գցել մեր երիտասարդության վրա: Իսկ ես կասեի, որ դա հիանալի երիտասարդություն է: Չէ՞ որ նա խոր ու բազմակողմանի գիտելիքներ է ձեռք բերում սովետական երկրի ուսումնական հաստատությունների պատերի ներսում: Այդ նա է աշխատանքային սխրանքներ գործում գործարանային արտադրամասերում, կոլտնտեսային ու սովխոզային դաշտերում: Այդ նա է շարունակ համալրում նորարարների շարքերը: Այդ նա է մեր գիտնականների ավագ սերնդի հետ միասին նշանավոր գիտական հայտնագործություններ կատարում: Մի՞թե ճիշտ կլիներ ասել, թե աշխատանքի ու գիտության մեջ սխրագործություն է կատարում միայն ավագ սերունդը, իհարկե՝ ոչ: Մեր երիտասարդությունը համաքայլ է ընթանում ավագ սերնդի հետ, նրանից արժանավորապես ընդունում էստաֆետը: Նորից եմ ասում՝ մենք ունենք հիանալի երիտասարդություն: Եվ մեր պարտքն է ըստ ամենայնի օգնել նրան, օգնել տիրապետելու աշխատանքային հմտություններին, մշակույթի բարձունքներին, մեր կոմունիստական աշխարհայացքին:

Տոնականորեն զարդարված հրապարակով այնուհետև անցան ավագ սերնդի ներկայացուցիչները՝ հերոսական բանվոր դասակարգը, քաղաքացիական կռիվների վետերանները, Հայրենական մեծ պատերազմի մասնակիցները, նրանք, ովքեր այսօր իրենց աշխատանքով ստեղծում են մեր հայրենիքի բոլոր հարստությունները, դնում ապագա կոմունիստական հասարակության հիմքը: Անցան մտավորականության ներկայացուցիչները, որոնց աշխատանքի հիանալի արդյունքների առջև մարդ ուզում է գլխարկը հանել՝ ի նշան խորին հարգանքի:

Այն ամենը, ինչ սովետական ժողովուրդը այսօր ձեռք է բերել, սոցիալիզմի հաղթանակի արդյունքն է, մեր փառապանծ լենինյան կոմունիստական կուսակցության հաջող քաղաքականության արդյունքը, նրա բոլոր մարտական ջոկատների, այդ թվում նաև Հայաստանի կոմունիստական կուսակցության, անխոնջ գործունեության արդյունքը:

Ձեր տոնը, ընկերներ, դարձավ ժողովուրդների բարեկամության իսկական տոն: Իսկ ժողովուրդների բարեկամությունը շատ ծավալուն հասկացություն է, որն անխզելիորեն կապված է մեր բազմազգ պետության սոցիալիստական իրականության հետ: Ժողովուրդների բարեկամությու՜ն, ոգեշնչման ինչպիսի՜ հիանալի աղբյուր է սա մեր գրողների, նկարիչների, կոմպոզիտորների համար: Թող հավիտյան կեցցե այդ մեծ բարեկամությունը:

Կկամենայի կանգ առնել Սովետական Հայաստանի ժողովրդին հատուկ մի քանի բնորոշ գծերի վրա, այնուհետև ասում է ընկ. Լ. Ի. Բրեժնևը: Նախ և առաջ դա բարձր կուլտուրան, կենցաղում, մարդկանց հետ շփվելիս ունեցած կուլտուրան է, աշխատանքային կուլտուրան, գիտական մտքի բարձր թռիչքը և արվեստի վառ ինքնատիպությունը: Մենք դրանում համոզվեցինք ամենուրեք՝ մասսայական ժողովներում, արդյունաբերական ձեռնարկություններում, գիտական հիմնարկներում ու թանգարաններում, հոբելյանական հոյակապ համերգում: Ամենուրեք երևում է բարձր կուլտուրայի տեր, կիրթ հասարակության կյանքը: Սա մեր կուսակցության մեծ հաղթանակն է, սոցիալիստական կարգերի հաղթանակը:

Սովետական Հայաստանի ժողովրդի երկրորդ բնորոշ առանձնահատկությունն այն է, որ նա իր հայրենի երկրի՝ Սովետական Սոցիալիստական Հայաստանի նկատմամբ ջերմագին խանդաղատանքով տոգորված հայրենասեր ժողովուրդ է: Հայրենասիրությունը մի այնպիսի սքանչելի հատկություն է, որն ամենախորին հարգանք է ներշնչում:

Բայց եթե հայերը և մեր երկրի մյուս ժողովուրդները ընկալեին գործի միայն մեկ կողմը, եթե նրանք խոսեին ու մտածեին միայն իրենց հանրապետության մասին, նրա քաղաքների ու դաշտերի, նրա մշակույթի մասին, ապա կարող էր ազգայնական դիրքերը գլորվելու վտանգ առաջանալ: Հայաստանում մենք տեսանք միանգամայն այլ բան: Իրենց հանրապետության նկատմամբ հայրենասիրական բարձր ոգին հայերի, ինչպես որ սովետական մյուս բոլոր ժողովուրդների մեջ զուգորդվում է առավել լայն առումով հայրենասիրական ոգու հետ՝ նվիրվածությամբ ու սիրով դեպի մեր ընդհանուր մեծ սոցիալիստական հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը:

Վերջապես, երրորդ առանձնահատկությունն այն է, որ Սովետական Հայաստանի ժողովուրդը՝ կոմունիստներն ու անկուսակցականները, բանվորությունը, գյուղացիությունն ու մտավորականությունը հայրենասիրության ոգին սքանչելիորեն զուգորդում են սովետական մարդու մի այլ, ոչ պակաս արժեքավոր, հատկության՝ ինտերնացիոնալիզմի հետ:

Լինել հայրենասեր և միևնույն ժամանակ տոկուն, համոզված ինտերնացիոնալիստ՝ նշանակում է խորապես ըմբռնել սոցիալիստական աշխարհայացքը, սոցիալիստական մշակույթը, նշանակում է հավատարիմ լինել լենինյան մեծ ուսմունքին:

Վերջում ընկ. Լ. Ի. Բրեժնևը Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեին, հանրապետության Գերագույն սովետի նախագահությանն ու կառավարությանը և բովանդակ հայ ժողովրդին մեկ անգամ ևս ի սրտե շնորհավորեց պանծալի հոբելյանի առթիվ և նրանց աշխատանքային նոր հաջողություններ մաղթեց ի բարօրություն հայրենիքի:

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի ճառը ներկաների կողմից լսվեց հսկայական ուշադրությամբ և բազմիցս ընդհատվում էր ջերմագին, երկարատև ծափահարություններով:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ

# ԸՆԿԵՐ Ա. Ե. ՔՈՉԻՆՅԱՆԻ ԶԵԿՈՒՅՑՈՒՄԸ

### ԵՐԵՎԱՆՈՒՄ ԿԱՅԱՑԱԾ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏՈՒՄ, 1970 ԹՎԱԿԱՆԻ ՆՈՅԵՄԲԵՐԻ 29-ԻՆ

*Թանկագին ընկերնե՛ր, բարեկամնե՛ր:*

*Ուղիղ 50 տարի առաջ հինավուրց Հայաստանի հողի վրա ճառագեց մեծ Հոկտեմբերի արևը, որը լուսավորեց աշխատավոր ժողովրդի ուղին դեպի սոցիալական և ազգային արդարության աշխարհը, դեպի նոր, երջանիկ կյանք, դեպի կոմունիզմ:*

*Հայ ժողովուրդը, որի պատմությունը սկիզբ է առնում հազարամյակների խորքից, այսօր տոնում է իր իսկական վերածննդի կեսդարյա հոբելյանը: Սովետական իշխանության հաղթանակը նշանավորեց հայ ժողովրդի պատմության նոր դարագլխի սկիզբը: Լուծելով սոցիալական արմատական պրոբլեմները, սովետական իշխանությունը միաժամանակ հայ ժողովրդին փրկեց ֆիզիկական բնաջնջումից, հաստատեց նրա գոյատևման, խաղաղ, ստեղծարար աշխատանքի իրավունքը:*

*Անցած 50 տարիները ոգեշունչ աշխատանքի, պայքարի ու հաղթանակների տարիներ էին: Այսօր հուզմունքի և հպարտության առանձնահատուկ զգացումով ենք նայում անցած ճանապարհին, ամփոփելով այն հրաշալի հաջողությունների արդյունքները, որոնց հասել են Հայաստանի աշխատավորները սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում, Սովետական Միության կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ:* (Բուռն ծափահարություններ): *Իրենց բոլոր նվաճումները հանրապետության աշխատավորները անխզելիորեն կապում են Լենինի անվան հետ, նրա պատգամների իրականացման հետ, լենինյան անմահ գաղափարների հաղթանակի հետ, որոնք դարձել են սովետական մարդկանց բոլոր սերունդների հուսալի կողմնացույցը, ուղեցույց աստղը:*

*Հայ ժողովուրդը իր ազգային մեծ տոնը նշում է լենինյան հոբելյանական տարում: Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակի տոնակատարությունը, ինչպես ասել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժ-*

նէր, հանդիսացավ ժողովրդի հաշվետվությունը Լենինին, առաջադեմ մարդկության պատմական զեկույցը աշխարհում առաջին սոցիալիստական տերության հիմնադրին, մեր ժողովրդի հավատարմության երդումը լենինիզմին, լենինաբար ապրելու, պայքարելու և աշխատելու նրա երդումը: (Ծափահարություններ):

Վ. Ի. Լենինի անմահ գաղափարներն ու գործերը ապրում ու հաղթանակում են նրա՛ ստեղծած Սովետական Միության կոմունիստական կուսակցության բազմաբովանդակ գործունեության մեջ, որը հին աշխարհի հեղափոխական վերակառուցման, նոր, կոմունիստական հասարակարգի հաղթանակի համար մղվող պայքարի դրոշակակիրն է: Մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ դրոշով մեր կուսակցությունը սովետական ժողովրդին հաստատ ու աներեր տանում է հաղթանակից-հաղթանակ, դեպի կոմունիզմի շողշողուն գագաթները:

Սովետական ժողովուրդների եղբայրական անխախտ ընտանիքում հայ ժողովրդի ձեռք բերած պատմական հաջողությունները կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության փայլուն արգասիքն են, սովետական ժողովուրդների բարեկամության ու փոխօգնության ուժի և կենսունակության վառ վկայությունը:

Հանրապետության աշխատավորները իրենց պանծալի հոբելյանը նշում են ՍՄԿԿ XXIV համագումարի նախաշեմին: Ինչպես ամբողջ սովետական ժողովուրդը, նրանք լի են հարազատ կոմունիստական կուսակցության համագումարը արժանավայել դիմավորելու, այն աշխատանքային հաջողություններով նշանավորելու վճռականությամբ: (Երկարատև ծափահարություններ):

Ընկերնե՛ր: Փառավոր հիսնամյակի արդյունքները, Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության նոր ու հրաշալի կյանքը ազատության ու երջանկության մասին ժողովրդի իրականացած երազանքի մարմնացումն են, պայծառ գալիքի համար նրա բազմադարյան համառ պայքարի ոսկե պսակը:

Հայ ժողովուրդը անցել է սոցիալական և ազգային-ազատագրության պայքարի դժվարին և փշոտ ճանապարհ: Օտար զավթիչների անվերջ ասպատակությունները և սեփական հարստահարիչների կամայականությունը աշխատավորներին դատապարտել էին իրավազրկության, աղքատության, սովի ու գաղթի: Օտարերկրյա նվաճողների դեմ ծանր, դարավոր պայքարը զուգորդվում էր շահագործողների դեմ մղվող սոցիալական պայքարի հետ: Հայաստանի պատմությունը ժողովրդական ապստամբությունների և ազգային-ազատագրական պատերազմների տարեգրություն է:

Ստեղծված պատմական ծանր պայմաններում սեփական պետականության կորստի և բնաջնջման ու ձուլման սպառնալիքի պայմաններում մղելով ազատագրական պայքար, հայ ժողովուրդը 17-րդ դարից սկսած իր հայացքը հուսով ուղղել է դեպի հյուսիս, այնտեղ, ուր աճում և ամրանում էր ռուսական պետությունը:

1828 թվականին Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին հայ ժողովրդի բախտի համար առաջադիմական մեծ նշանակություն ունեցող ակտ հանդիսացավ:

Հայ մեծ դեմոկրատ Խաչատուր Աբովյանը գրել է. «Օրհնվի էն սհաթը, որ ռըսի օրհնված ոտը հայոց լիս աշխարհը մտավ»:



Աբովյանի, Նալբանդյանի, Թումանյանի և բազմաթիվ այլ առաջավոր գործիչների գնահատականները, որ տրվել են հայ ժողովրդի նոր պատմության տարբեր էտապներում, մեր ժողովրդի գիտակցության մեջ Ռուսաստանի հետ դաշինքի գաղափարի հաջորդականության վկայությունն են: Հայ ժողովուրդը հավատարիմ է եղել, հավատարիմ է և հավատարիմ կլինի իր ավագ եղբոր՝ ռուս մեծ ժողովրդի հետ ունեցած հավիտենական բարեկամությանը: (Երկարատև ծափահարություններ):

Ականավոր հեղափոխական-դեմոկրատ Գերցենի և Չերնիշևսկու համախոհ և զինակից Միքայել Նալբանդյանը, դեռևս անցյալ դարի կեսերին, հրատակորեն կանխատեսում էր ռուսական հեղափոխական շարժման որոշիչ դերը համաշխարհային զարգացման պրոցեսում: Նրա այն մարգարեական խոսքերը, որ «Ռուսիո ազատությունը, ընդհանուր մարդկության ազատության վերաբերությամբ, մեծ խորհուրդ ունի», լիովին արդարացան պատմության հետագա ամբողջ զարգացմամբ:

Ռուսաստանում պրոլետարական շարժման առաջացումն ու հուժկու ծավալումը որոշեց սոցիալական ազատագրության, լավագույն ապագայի համար ամբողջ աշխատավոր մարդկության, Ռուսաստանի բոլոր ժողովուրդների պայքարի բնույթը և նրա հետագա ամբողջ ընթացքը: Երախտապարտ մարդկությունը սիրով հարգանքի և հիացմունքի տուրք է տալիս ռուս հեղափոխական պրոլետարիատին, որը բաց արեց սոցիալիզմի և կոմունիզմի մայրուղին:

Ռուսաստանի պրոլետարիատի դասակարգային վիթխարի ճակատամարտերի գլուխ կանգնած էր Վ. Ի. Լենինի ստեղծած բոլշևիկների կուսակցությունը՝ բանվոր դասակարգի մարտական հեղափոխական ավանգարդը, որը առաջնորդվում է գիտական կոմունիզմի անմահ ուսմունքով: Այդ հեղափոխական ճակատամարտերի որոտը հուժկու արձագանք գտավ Հայաստանի քաղաքներում և գյուղերում: Արդեն 19-րդ դարի վերջերին Հայաստանի աշխատավորները ներգրավվեցին ցարիզմի դեմ Ռուսաստանի պրոլետարիատի հերոսական պայքարի մեջ: Երևանում, Ալեքսանդրապոլում, Կարսում, Ջալալօղլիում, Հաղպատում ստեղծված մարքսիստական խմբակներն ու կազմակերպությունները միաձուլվեցին Ռուսաստանում վերահաս հեղափոխության ընդհանուր հոսանքին: Անդրկովկասի բանվորական շարժումը իր ծագման օրվանից ինտերնացիոնալ բնույթ ուներ, հանդիսանում էր համառուսական պրոլետարական շարժման անբաժան մասը: Աշխատավոր հայերը ռուսների, վրացիների, ադրբեջանցիների հետ ընթանում էին Անդրկովկասի արդյունաբերական կենտրոնների աշխատավորների դասակարգային մարտերի ավանգարդում:

1902 թվականին Թիֆլիսում ստեղծվեց «Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը», որն իրեն հայտարարեց Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության բաղկացուցիչ մասը: Վլադիմիր Իլյիչ Լենինը բարձր գնահատական տվեց միության մանիֆեստին: «Իսկրա» թերթում նա գրեց. «Մենք ամբողջ հոգով ողջունում ենք «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» մանիֆեստը և մանավանդ ազգային հարցի ճիշտ դրվածքը տալու նրա ուշագրավ փորձը»[1]:

Հայ բոլշևիկները համոզիչ կերպով ապացուցում էին, որ միայն պրոլետարիատի դասակարգային պայքարի ճանապարհով, սոցիալիստական հե-

1 Վ. Ի. Լենին— Երկեր, հ. 6, էջ 411:

ղափոխության հաղթանակի շնորհիվ են հնարավոր հարազատ ժողովրդի իսկական ազգային ազատագրությունը, ազատության ու բարգավաճման նրա նվիրական երազանքի իրականացումը։

Մեր ժողովրդի լավագույն զավակները, դեռևս պրոլետարական հեղափոխական շարժման արշալույսին, համախմբվեցին Վ. Ի. Լենինի շուրջը, դարձան նրա մերձավորագույն զինակիցները։

Հայաստանի աշխատավորները օրինական հպարտության զգացումով են նշում, որ բոլշևիկների լենինյան գվարդիայի հրաշալի համաստեղության մեջ հեղափոխության փառաբանված ասպետների հետ ուս-ուսի բանվորական գործի հաղթանակի համար կռվում էին հայ ժողովրդի որդիներն ու դուստրերը։ Ստեփան Շահումյանի, Սուրեն Սպանդարյանի, Բոգդան Կնունյանցի, Սիմոն Տեր-Պետրոսյանի (Կամո), Ալեքսանդր Մյասնիկյանի և ուրիշ շատերի անունները ոսկե տառերով են գրված Ռուսաստանի հեղափոխական շարժման հերոսական տարեգրության մեջ։ (Ծափահարություններ)։ Հայաստանում իրենց կազմակերպչական գործունեությամբ և տեսական աշխատություններով, որոնցում մարքսիզմ-լենինիզմի դիրքերից լուսաբանվում էին մեր ժողովրդի սոցիալ-քաղաքական պայքարի հիմնական հարցերը, նրանք կազմավորեցին հայ հասարակական մտքի պատմության մարքսիստական էտապը և հայ պրոլետարիատին լենինյան ուղիով առաջնորդեցին հանուն կոմունիզմի հաղթանակի։

Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին հայ ժողովուրդը վերապրեց իր ամբողջ բազմադարյան պատմության մեջ կրած աղետներից ամենաահավորը։ Օսմանյան Թուրքիայի ռեակցիոն շրջանների կողմից կազմակերպված Արևմտյան Հայաստանի բնակչության մասսայական բնաջնջումը սպառնալիքի տակ դրեց մեր ժողովրդի բուն գոյությունը։ Բոլշևիկները վճռականապես հանդես եկան Թուրքական ռասիստների հրեշավոր ոճրագործության դեմ, եղան հայ ժողովրդի իրավունքների ու շահերի ամենահետևողական պաշտպանները։

Հայ ժողովրդի ճակատագրի նկատմամբ Վ. Ի. Լենինի և բոլշևիկների կուսակցության մեծ հոգատարության վառ դրսևորումն էր Սովետական Ռուսաստանի դեկրետը «Թուրքահայաստանի մասին», որը ժողովրդական կոմիսարների խորհրդի նախագահ Վլադիմիր Իլյիչ Լենինը ստորագրեց 1917 թվականի դեկտեմբերի 29-ին, Սովետական Ռուսաստանի համար իսկ ամենածանր՝ հետհոկտեմբերյան առաջին օրերին։

Իմպերիալիստական դավերի զոհ դարձած, բախտահալած հայ ժողովուրդը ի դեմս Սովետական Ռուսաստանի գտավ իր անկեղծ բարեկամին ու փրկարարին։ Հայաստանի աշխատավորներն իրենց բոլոր հույսերն ու իղձերը կապեցին Լենինի անվան հետ, Սովետական Ռուսաստանի հետ։ (Ծափահարություններ)։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը, որը արմատական շրջադարձ էր մարդկության պատմության մեջ, ցնցեց երկրի հասարակական-քաղաքական ամբողջ կյանքը, հուժկու թափ հաղորդեց ցարական Ռուսաստանի բոլոր ժողովուրդների հեղափոխական պայքարին։

Անդրկովկասի աշխատավորները, ոգեշնչված ռուսական պրոլետարիատի հեղափոխական սխրագործությամբ, պայքարի դրոշ բարձրացրին ընդդեմ կալվածատերերի ու կապիտալիստների ատելի լծի։ Բաքվի փառապանծ կո-



մունան ցուցադրեց նրանց հեղափոխական վճռականությունը՝ վերջ տալու հին աշխարհին, Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի վրա ծածանելու մեծ Հոկտեմբերի հաղթական կարմիր դրոշը։ Բաքվի ինտերնացիոնալ պրոլետարիատի անօրինակ խիզախության, կոմունայի պաշտպանների արիության և անձնվիրության մեջ խտացել էր Անդրկովկասի բոլոր ազգությունների աշխատավոր մասսաների միաձույլ շարքերի հզոր ուժը։

Վրաստանի, Հայաստանի և Ադրբեջանի բուրժուա-նացիոնալիստական կուսակցություններին հաջողվեց իմպերիալիստական տերությունների բացահայտ աջակցությամբ երկրամասի բոլոր հակահեղափոխական մութ ուժերը մոբիլիզացնել՝ պայքարելու հեղափոխական բանվորների և գյուղացիների դեմ։ Նրանց դավաճանական քաղաքականությունը, որի նպատակն էր Անդրկովկասն անջատել Սովետական Ռուսաստանից, հղի էր ճակատագրական հետևանքներով։ Երկրամասի բոլշևիկները ակտիվ պայքար էին մղում այդ դավաճանական քաղաքականության դեմ։ Որպես տագնապալի ահազանգ հնչեցին Կովկասի գործերի արտակարգ կոմիսար Ստեփան Շահումյանի խոսքերը. «Կովկասը կանգնած է անդունդի եզրին։ Փրկեցե՛ք նրան։ Ստեղծեք այստեղ ինտերնացիոնալ բանվորական-գյուղացիական կառավարություն, որը Ռուսաստանի սովետական կենտրոնների ու ժողովրդական կոմիսարների սովետի հետ սերտ միասնություն ստեղծելով վերջ կդնի Կովկասի հակահեղափոխությանը և երկրի բանվոր ու գյուղացի բնակչությանը կառաջնորդի դեպի լուսավոր ապագան, դեպի սոցիալիզմի թագավորությունը»։

Հետագա իրադարձությունները հայ ժողովրդին նոր թշվառություններ ու տառապանքներ բերեցին։ 1918 թվականի գարնանը թուրքական զորքերը հարձակման անցան և խորացան երկրի ներսը, սփռելով մահ և ավերածություն։ Հայրենիքը պաշտպանելու ելած հայ ժողովուրդը մահացու գոտեմարտում կանգնեցրեց թշնամուն Երևանի մատույցներում, իսկ ապա՝ ջախջախեց նրան։ Սարդարապատի ճակատամարտը արտահայտեց մեր ժողովրդի աննկուն կամքը՝ պաշտպանելու իր գոյությունը, հայրենի երկրում ապրելու և աշխատելու իր իրավունքը։ (Ծափահարություններ)։

Հայաստանի աշխատավորների համար անասելի ծանր էին դաշնակցական տիրապետության տարիները։ Իր հակաժողովրդական, արկածախնդրական քաղաքականությամբ դաշնակցությունը հայ ժողովրդին հասցրեց ազգային աղետի եզրին։ Երկրում մոլեգնում էին սովը, համաճարակներն ու մահը։

Դաշնակցական կառավարողների քաղաքականությունը դավաճանություն էր ժողովրդի շահերին՝ ի հաճույս ազգային բուրժուազիայի և նրա իմպերիալիստական տերերի։ Հայաստանի բոլշևիկները, մերկացնելով դաշնակցական արկածախնդիրների և նրանց իմպերիալիստական տերերի քաղաքականության հակաժողովրդական էությունը, աշխատավորներին կոչ էին անում վճռական պայքար մղել հանուն սովետական իշխանության։

Դասակարգային ծանր պայքարում կազմակերպորեն առնականանում և քաղաքականապես ամրանում էին Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունները, աճում էր նրանց ազդեցությունը բանվորների և գյուղացիների լայն խավերի վրա։

Հասունանում էր կուսակցական կազմակերպությունները միասնական օրգանիզմի՝ Հայաստանի կոմունիստական կուսակցության մեջ միավորելու անհրաժեշտությունը։ 1919 թվականի սեպտեմբերին Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների ներկայացուցիչների խորհրդակցությունը

ընտրեց միասնական ղեկավար կենտրոն՝ ՌԿ(բ)Կ Հայկական կոմիտե (Արմենկոմ)։ Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման գործում վճռական դեր խաղաց 1920 թվականի հունվարին Երևանում կայացած բոլշևիկյան կազմակերպությունների առաջին կոնֆերանսը։ 1920 թվականի ամռանը Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորումը կարևոր ուղենիշ դարձավ հայ ժողովրդի պատմության մեջ։

Սերելով աշխատավոր մասսաների ծոցից, ժողովրդի մսից ու արյունից, կոփվելով դասակարգային մարտերի դաժան դպրոցում, Հայաստանի կոմունիստական կուսակցությունը դարձավ աշխատավոր դասակարգերի խոհերի և իղձերի հետևողական արտահայտիչը, սովետական իշխանության հաղթանակի, նոր երջանիկ կյանքի կառուցման համար նրանց պայքարի մարտական ավանգարդն ու ղեկավար ուժը։

Հայաստանի աշխատավորների ամբողջ հետագա նվաճումները, հայ ժողովրդի սոցիալիստական վերածննդի ամբողջ պրոցեսը անխզելիորեն կապված են Հայաստանի կոմունիստական կուսակցության գործունեության հետ, որը Սովետական Միության կոմունիստական կուսակցության մարտական ջոկատներից մեկն է։

Անդրկովկասի հեղափոխական շարժման պատմության փառապանծ էջն է 1920 թվականի Մայիսյան հերոսական ապստամբությունը։ Բանվորների և գյուղացիների մայիսյան հեղափոխական ելույթը խարխլեց դաշնակցական նեխած վարչակարգի հիմքերը, ցուցադրեց բանվորների և գյուղացիների վճռականությունը՝ վերջ տալու կապիտալիստների և կալվածատերերի ատելի տիրապետությանը։

Մայիսյան ապստամբությունը եղավ 1920 թվականի նոյեմբերի հեղափոխական հաղթական մարտերի ավետաբերը։ Հայաստանի կոմունիստական կուսակցությունը, որը ստեղծված օրհասական վիճակից ժողովրդին դուրս բերելու ընդունակ միակ քաղաքական ուժն էր, աշխատավորներին վճռական մարտի հանեց հանուն սովետական իշխանության հաղթանակի։

1920 թվականի նոյեմբերի 29-ին ապստամբած բանվորներն ու գյուղացիները Հայաստանը հռչակեցին սովետական։ (Ծափահարություններ)։ Ապստամբ աշխատավոր ժողովրդի խնդրանքով նրան օգնության եկավ 11-րդ կարմիր բանակը՝ լենինյան գվարդիայի պանծալի գործիչներ Ս. Մ. Կիրովի, Գ. Կ. Օրջոնիկիձեի, Ա. Ի. Միկոյանի գլխավորությամբ։ (Ծափահարություններ)։ Բազմաչարչար Հայաստանի վրա ընդմիշտ ծածանվեց մեծ Հոկտեմբերի կարմիր դրոշը, որը ազդարարեց նրա նոր պատմության՝ սոցիալական և ազգային վերածննդի սկիզբը։ (Ծափահարություններ)։

Հայ ժողովրդի մեծ բարեկամ Վ. Ի. Լենինը ի սրտե ողջունեց «Իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին» (Երկարատև ծափահարություններ)։

Նշելով Սովետական Հայաստանի և Հայաստանի կոմունիստական կուսակցության փառապանծ հիսնամյակը, մեր հանրապետության աշխատավորները ջերմ շնորհակալության ու երախտագիտության զգացումով են հիշում հեղափոխության խիզախ մարտիկների անունները, որոնք իրենց կյանքը նվիրաբերեցին ժողովրդի երջանկությանն ու պայծառ ապագային։ Պատմությունը գալիք սերունդների համար կպահպանի Ստեփան Ալավերդյանի, Սարգիս Մուսայելյանի, Բագրատ Ղարիբջանյանի, Հովհաննես Սարուխանյանի, Եգոր Սևյանի, Ղուկաս Ղուկասյանի, Արմենակ Բուդաղյանի,



Արշալույս Փանյանի, Արտաշես Մելքոնյանի, Վասիլի Ալեքսեևի, Նիպարիտ Մխչյանի, Պյոտր Մատիչկոյի, Ենոք Մկրտումյանի, Խրիստովսկու, Բատիկ Բատիկյանի, Բագրատ Հարությունյանի, Քրիստափոր Մկրտչյանի, Մակիչ Մաշուրյանի, Սուրեն Մակարյանի, Վաղինակ Հովսեփյանի, Սեդրակ Հակոբջանյանի, Հեյդար Ջեյնալովի, Գրիգոր Գրիգորյանի, Մարիամ Խաչատրյանի, Գրիգոր Այվազյանի, բոլոր նրանց պայծառ հիշատակը, ովքեր հերոսաբար ընկան հանուն Հայաստանում սովետական իշխանության հաղթանակի։ (Ծափահարություններ)։

Դաշնակցական մաուզերիստների դեմ մղված պայքարում քաջի մահով ընկան 11-րդ կարմիր բանակի շատ մարտիկներ ու հրամանատարներ։ Մենք հարգանքի խորունկ զգացումով և երախտագիտությամբ մեր գլուխն ենք խոնարհում ռուս ժողովրդի և մեր երկրի մյուս եղբայրական ժողովուրդների հիանալի զավակների հիշատակի առաջ, որոնք իրենց կյանքը տվեցին հանուն Հայաստանի ապագայի։ (Ծափահարություններ)։ Թո՛ղ հայ ժողովրդի երախտագիտությունը հավերժ փառքի հուշարձան լինի դիվիզիայի հրամանատար Պյոտր Կուրիշկոյին, բրիգադի հրամանատար Նիկոլայ Երմոլենկոյին, բրիգադի կոմիսար Ալեքսանդր Լեոնովին, գնդի հրամանատար Անդրեյ Ցիշելևիչին, զրահագնացքի հրամանատար Կոնստանտին Օզիենկոյին և հեղափոխության գործին նվիրված ուրիշ շատ կարմիր բանակայինների ու կարմիր հրամանատարների համար։ (Ծափահարություններ)։

Այսօր, մենք խորին հարգանքի տուրք ենք տալիս Սարգիս Կասյանի, Ալեքսանդր Մյասնիկյանի, Սահակ Տեր-Գաբրիելյանի, Սարգիս Լուկաշինի, Ալեքսանդր Բեկզադյանի, Ասքանազ Մռավյանի, Գևորգ Աթարբեկյանի, Հայկ Բժշկյանի, Աղասի Խանջյանի և կուսակցական ու պետական ուրիշ շատ գործիչների հիշատակին, որոնք իրենց բոլոր ուժերը, եռանդն ու տաղանդը նվիրաբերեցին Հայաստանում սովետական իշխանության հաղթանակի և ամրապնդման գործին։ (Ծափահարություններ)։

Հայաստանի կոմունիստները, հանրապետության բոլոր աշխատավորները ջերմորեն ողջունում են մեր կուսակցության վետերաններին, Հայաստանում սովետական իշխանության հաղթանակի համար մղված հեղափոխական մարտերի մասնակիցներին, նոր կյանքի ակտիվ կերտողներին, որոնք այսօր էլ գտնվում են կոմունիզմ կառուցողների առաջին շարքերում։ Թույլ տվեք, դիմելով նրանց և այս դահլիճում գտնվող նրանց ներկայացուցիչներին, ասել.

Թանկագին ընկերնե՛ր։ Հայաստանի կոմունիստական կուսակցությունը, մեր հանրապետության աշխատավորները բարձր են գնահատում ձեր անձնվեր գործունեությունը հանուն սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի։ Լենինիզմին ձեր նվիրվածությունը, ձեր ամբողջ հրաշալի կյանքի ուղին կոմունիստական կուսակցությանն ու սովետական ժողովրդին ազնվորեն ծառայելու ոգեշնչող օրինակ է։ Թույլ տվեք ձեզ մաղթել քաջառողջություն, երկար կյանք և նոր հաջողություններ ձեր բեղմնավոր հասարակական գործունեության մեջ։ (Ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։

Հիսուն տարի է բաժանում մեզ այն հերոսական օրերից, երբ Հայաստանի վրա ճառագեց նրա սոցիալիստական վերածննդի արշալույսը։ Սովետական Հայաստանի օրինակը սոցիալիզմի ստեղծարար հզոր ուժի վառ հաստատումն է։ Սոցիալական և ազգային ճնշումից ազատագրված աշխա-

տավոր ժողովուրդը պատմական կարճ ժամանակում չտեսնված թռիչք գործեց դարավոր հետամնացությունից դեպի արդի առաջադիմության բարձունքները:

Սովետական երիտասարդ իշխանության և Հայաստանի կոմունիստական կուսակցության առջև ծառացան Հայաստանի հիմնիվեր քայքայված էկոնոմիկայի վերականգնման ու զարգացման դժվարին խնդիրները: Այդ ծանր օրերին Հայաստանին վերստին օգնության եկավ Սովետական Ռուսաստանը: Հայաստանում սովետական իշխանության հաղթանակից մի քանի օր անց Վ. Ի. Լենինը Ս. Տեր-Գաբրիելյանի և Ա. Մռավյանի հետ ունեցած զրույցի ժամանակ ասաց. «Մենք ինքներս էլ դժվարին դրության մեջ ենք, բայց Սովետական Հայաստանին կօգնենք ամեն կերպ»:

Սովետական Ռուսաստանը, որը կրել էր եռամյա հյուծիչ քաղաքացիական պատերազմի բոլոր զրկանքները և ինքն էլ հացի ու պարենի սուր կարիք ուներ, Հայաստանի աշխատավորներին ուղարկեց հացահատիկ, արդյունաբերական և պարենային ապրանքներ, դեղորայք, ցույց տվեց ֆինանսական մեծ օգնություն: Սովետական Ռուսաստանի տնտեսական աջակցության շնորհիվ հաջողվեց փրկել սովամահության մատնված տասնյակ հազարավոր մարդկանց և զգալիորեն արագացնել հանրապետության ժողովրդական տնտեսության վերականգնումը:

Հայ ժողովուրդը սովետական իշխանության հաղթանակի շնորհիվ ստեղծեց իր սոցիալիստական պետականությունը՝ խարսխված սովետական կարգերի ամուր հիմքի և սովետական բոլոր ժողովուրդների հետ սերտ միասնության ու եղբայրության վրա: 1922 թվականի սկզբներին ընդունված՝ Սովետական Հայաստանի առաջին սահմանադրությունը իրավաբանորեն վավերագրեց աշխատավորների հեղափոխական նվաճումները, որոշեց պետական նոր կարգի քաղաքական ու տնտեսական հիմքերը:

Անդրկովկասյան ֆեդերացիայի կազմվելը, սոցիալիզմի կառուցման համար մղվող պայքարում Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի աշխատավորների ջանքերի միավորումը նշանավորվեց քաղաքական ու տնտեսական կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերած խոշոր հաջողություններով:

Պատմական նշանակություն ունեցող մեծագույն ակտ հանդիսացավ Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմումը:

Հայ ժողովուրդը սովետական ժողովուրդների մեծ ու համերաշխ ընտանիքում, ՍՍՀՄ-ի կազմում գտավ վերածնության ու բարգավաճման իր իսկական երջանկությունը: Սովետական Միությունը դարձավ հայ ժողովրդի, մեր երկրի բոլոր ժողովուրդների հարազատ տունը. նրանց մեծ հայրենիքը:

Սոցիալիզմի կառուցման լենինյան պլանը, ինչպես նշել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը. «ընդգրկեց սոցիալական շենքի բոլոր հարկերը՝ թե՛ արտադրողական ուժերի զարգացումը, թե՛ մարդկանց հոգևոր աշխարհի վերակառուցումը»:

Առաջնորդվելով լենինյան գաղափարներով, հենվելով մասսաների հեղափոխական խանդավառության վրա, Հայաստանի կոմունիստական կուսակցությունն աշխատավորներին մոբիլիզացրեց ստեղծելու սոցիալիստական էկոնոմիկա, ապահովելու նոր հասարակական հարաբերությունների հաղթանակը: Անշեղորեն իրականացնելով երկրի ինդուստրացման՝ կուսակցության



գլխավոր գիծը, հանրապետության աշխատավորները կառուցում էին գործարաններ ու ֆաբրիկաներ, էլեկտրակայաններ ու ջրանցքներ:

Աշխատանքային արիության և սոցիալիզմի գործին անսահման նվիրվածության օրինակ հանդիսացավ Շիրակի և Սարդարապատի ջրանցքների, Լենինականի տեքստիլ կոմբինատի, Ձորագէսի, Արարատի ցեմենտի գործարանի, Կիրովականի քիմիական կոմբինատի, Երևանի սինթետիկ կաուչուկի գործարանի և հանրապետության սոցիալիստական էկոնոմիկայի մյուս առաջնեկների կառուցման էպոպեան:

Կառուցման պաթոսով ոգեշնչված Սովետական Հայաստանի աշխատավորներն արդեն առաջին հնգամյակների տարիներին դրեցին հանրապետության սոցիալիստական էկոնոմիկայի հիմքը, այն դուրս բերեցին ինդուստրիալ զարգացման լայն ասպարեզ: Այդ տարիներին կառուցված ավելի քան 200 արդյունաբերական ձեռնարկությունները վկայում են սոցիալիզմի առաջամարտիկների խիզախ սերնդի աշխատանքային անօրինակ սխրագործությունը:

Հանրապետության գյուղատնտեսության կոլեկտիվացումը, որն իրականացվեց լենինյան կոոպերատիվ պլանի հիման վրա, փոխեց սոցիալական հարաբերությունները գյուղում, վերակերտեց գյուղացու կենցաղը, նրան փրկեց աղքատությունից և սովից: Կոլտնտեսային դաշտերը եկան տրակտորներ, կոմբայններ և գյուղատնտեսական այլ մեքենաներ: Կենսագործելով խոփգացիայի զարգացման վերաբերյալ Վ. Ի. Լենինի խորհուրդները, Հայաստանի աշխատավորները հանրապետությունը գոտևորեցին ջրանցքների ժապավեններով, ոռոգեցին տասնյակ հազարավոր հեկտար չորային հողեր, այդ տարածություններում ստեղծեցին նոր տնտեսություններ: Արդեն 1940 թվականին Հայաստանի կոլտնտեսություններն ու սովխոզները տվեցին գրեթե 2,5 անգամ շատ մթերք, քան արտադրվել էր նախահեղափոխական Հայաստանում 1913 թվականին:

Կուլտուրական հեղափոխությունն արմատապես փոխեց մարդկանց հոգևոր կերպարանքը: Սովետական եղբայրական ժողովուրդների կուլտուրաների փոխազդեցությամբ, մարքսիզմ-լենինիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարական հիմքի վրա հուժկու զարգացում ստացավ հայ ժողովրդի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան:

Կոմունիստական կուսակցության լենինյան քաղաքականության կարևոր հաղթանակը հանդիսացավ սովետական ազգային հանրապետությունների տնտեսական և կուլտուրական հետամնացության վերացումը: Հասարակության կյանքում կատարված արմատական վերափոխությունների շնորհիվ, էկոնոմիկայի, կուլտուրայի, հոգևոր կյանքի բուռն զարգացման և իսկական ծաղկման պայմաններում, սովետական ժողովուրդների միասնական ընտանիքում ձևավորվեց սոցիալիստական հայ ազգը:

Սովետական ժողովուրդների պատմական նվաճումներն իրենց արտացոլումը գտան 1936 թվականին ընդունված ՍՍՀՄ սահմանադրության՝ հաղթանակած սոցիալիզմի երկրի հիմնական օրենքի մեջ: Հայկական ՍՍՀ նոր սահմանադրությունը վավերագրեց հանրապետության աշխատավորների սոցիալիստական նվաճումները:

Շահագործող դասակարգերի վերացման, բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ինտելիգենցիայի նպատակների ու շահերի

ընդհանրության հիման վրա, եղբայրական ժողովուրդների ամրապնդվող բարեկամության պայմաններում կազմավորվեց սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը։

Սովետական մարդկանց խաղաղ, ստեղծարար աշխատանքը ընդհատվեց մեր սրբազան հայրենիքի վրա հիտլերյան զավթիչների կատարած ուխտադրուժ հարձակմամբ։ Հայրենական մեծ պատերազմը սովետական պետության, նրա քաղաքական ու հասարակական կարգի, սովետական ժողովուրդների անխախտ բարեկամության ամրության ու կենսունակության դաժան քննությունը եղավ։ Ֆաշիստական հրոսակախմբերի դեմ մահացու գոտեմարտում երևան եկան սովետական մարդկանց կոմունիստական կուսակցության կողմից կոփված բարոյա-քաղաքական հրաշալի հատկությունները՝ անձնվիրությունը, տոկունությունը, արիությունը, կյանքի գնով մեծ Հոկտեմբերի նվաճումները պաշտպանելու պատրաստակամությունը։ Սովետական մարդկանց այդ առասպելական սխրագործությունը ընդմիշտ կմնա սերունդների հիշողության մեջ որպես մեր հայրենիքի երջանկության և ազատության պայքարում ցուցաբերած իսկական հայրենասիրության ու հերոսության օրինակ։

Մարդկության ոխերիմ թշնամու դեմ սրբազան պատերազմի ելան սովետական բազմազգ երկրի բոլոր ժողովուրդները՝ ռուս դյուցազուն ժողովրդի գլխավորությամբ։

Հայ ժողովուրդը ֆաշիզմի դեմ պատերազմ ուղարկեց իր մոտ կես միլիոն որդիներին ու դուստրերին։ Հայաստանի կոմունիստների կեսից ավելին զենքը ձեռքներին մարտնչում էին հիտլերյան հորդաների դեմ։ Գործող բանակի կազմում կռվում էին հայկական հինգ դիվիզիաներ։ Դրանցից 89-րդ Թամանյան դիվիզիան, գեներալ Նվեր Սաֆարյանի հրամանատարությամբ, իր մարտական սխրագործությունն ավարտեց տապալված Բեռլինում։ (Ծափահարություններ)։

Մեր ժողովրդի որդիներն ու դուստրերը բազում վառ էջեր են գրել Հայրենական մեծ պատերազմի հերոսամատյանում։ Սովետական Միության կրկնակի հերոս, խիզախ օդաչու Նելսոն Ստեփանյանի, Սովետական Միության հերոսներ Հունան Ավետիսյանի, Ջահան Կարախանյանի և ուրիշ շատերի սխրագործությունները խորհրդանշում են հայ ժողովրդի նվիրվածությունը սոցիալիստական իր մեծ հայրենիքին, լենինյան կոմունիստական կուսակցությանը։ (Ծափահարություններ)։

Հայրենական մեծ պատերազմի տարիներին սովետական բանակում և ռազմածովային նավատորմում կային 60-ից ավելի հայ գեներալներ ու ծովակալներ։ Ականավոր զորապետների թվումն էին Սովետական Միության մարշալ Հովհաննես Բաղրամյանը, նավատորմի ծովակալ Հովհաննես Իսակովը, զրահատանկային զորքերի մարշալ Համազասպ Բաբաջանյանը, ավիացիայի մարշալ Սերգեյ Խուդյակովը (Արմենակ Խանփերյանց) և ուրիշ շատերը։ (Ծափահարություններ)։

Պատերազմի տարիներին 103 հայ ռազմիկների շնորհվեց Սովետական Միության հերոսի բարձր կոչում, մեր ժողովրդի հարյուր հազարավոր ներկայացուցիչներ պարգևատրվեցին մարտական շքանշաններով ու մեդալներով։

Հայ ժողովրդի ռազմիկ զավակների հերոսական գործերի անջնջելի վկայությունների մեջ մեզ համար առանձնապես թանկ է Հայրենական մեծ պա-



տերազմի ծանր օրերին, 1942 թվականի ամռանը, Հյուսիսային Կովկասի ռազմաճակատում լույս տեսած «Անմահություն» խորագրով մի գրքույկ, որը նվիրված է Սովետաական Միության հերոս, հրետանային մարտկոցի հրամանատար Սերգեյ Օհանյանի և նրա հետ զոհված մարտիկների լեգենդար սխրագործությանը։ Խորին երախտագիտության զգացումով հարկ է նշել, որ հայ մարտիկների սխրանքների մասին սերունդներին պատմող այդ առաջին գիրքը ծանր մարտերի ծուխ ու բոցի մեջ խմբագրել և տպագրության է հանձնարարել բրիգադի կոմիսար Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը։ (Ծափահարություններ)։

Այսօր, այդ եղելությունից 28 տարի անց, երախտագետ Հայաստանի հողի վրա մենք ուզում ենք այդ նվիրական գիրքը՝ մեր հայերեն և ռուսերեն նոր հրատարակությամբ, նվիրել իր խմբագրին՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար, մեր սիրելի Լեոնիդ Իլյիչ Բրեժնևին՝ ի հիշատակ դաժան փորձությունների տարիներին հայ ռազմիկների հետ ունեցած նրա մարտական բարեկամության։ (Բուռն ծափահարությունների ներքո ընկ. Ա. Ե. Քոչինյանը գիրքը հանձնում է ընկեր Լ. Ի. Բրեժնևին)։

«Ամեն ինչ ռազմաճակատի համար, ամեն ինչ հաղթանակի համար», կուսակցության այս մարտական կոչը պատերազմի տարիներին դարձավ Սովետական Հայաստանի բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի կյանքի և աշխատանքի գլխավոր նպատակը, հիմնական բովանդակությունը։

Հայաստանի կոմունիստական կուսակցության քաղաքական և կազմակերպչական ամբողջ գործունեությունն ուղղված էր ռազմաճակատի կարիքները ապահովելու, հանրապետության առջև դրված պատասխանատու խնդիրները կատարելու նպատակին։

Հիտլերիզմի դեմ մղված պայքարին ակտիվորեն մասնակցում էին սփյուռքահայ աշխատավորները։ Նրանցից շատերը կռվում էին դիմադրության մարտիկների, պարտիզանական ջոկատների շարքերում։ Մենք բարձր ենք գնահատում սփյուռքահայության բարոյական և նյութական աջակցությունը սովետական բանակին։ Նրանց միջոցներով ստեղծված տանկային շարասյուները հանդիսացան այն մեծ համակրանքի և սիրո առհավատչյան, որ սփյուռքահայ աշխատավորները տածում են դեպի սոցիալիզմի մեծ երկիրը, դեպի բանվորների և գյուղացիների առաջին պետությունը։ (Ծափահարություններ)։

Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի համաշխարհային պատմական հաղթանակը սոցիալիստական կարգերի իսկական տրիումֆն էր, նրա կենսունակության և անպարտելիության հաստատումը։ Մենք հպարտ ենք, որ այդ մեծ հաղթանակի մեջ իր արժանի ավանդն է ներդրել նաև սովետական հայրենիքին, սոցիալիզմի և կոմունիզմի գործին անսահմանորեն նվիրված հայ ժողովուրդը։ (Ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Հետպատերազմյան տարիներին աշխարհը վկա եղավ սովետական ժողովրդի մի նոր անօրինակ սխրագործության։

Սովետական երկրի փառապանծ բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ինտելիգենցիայի ջանքերով կարճ ժամանակում իրականացվեց ժողովրդական տնտեսության վերականգնման, պատերազմի ահավոր հետքերի վերացման վիթխարի ծրագիրը։ Միայն կոմունիստական կուսակցության կողմից իր հայրենիքին անսահման նվիրվածության ոգով

ընդհանրության հիման վրա, եղբայրական ժողովուրդների ամրապնդվող բարեկամության պայմաններում կազմավորվեց սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը։

Սովետական մարդկանց խաղաղ, ստեղծարար աշխատանքը ընդհատվեց մեր սրբազան հայրենիքի վրա հիտլերյան զավթիչների կատարած ուխտադրուժ հարձակմամբ։ Հայրենական մեծ պատերազմը սովետական պետության, նրա քաղաքական ու հասարակական կարգի, սովետական ժողովուրդների անխախտ բարեկամության ամրության ու կենսունակության դաժան քննությունը եղան։ Ֆաշիստական հրոսակախմբերի դեմ մահացու գոտեմարտում երևան եկան սովետական մարդկանց կոմունիստական կուսակցության կողմից կոփված բարոյա-քաղաքական հրաշալի հատկությունները՝ անձնվիրությունը, տոկունությունը, արիությունը, կյանքի գնով մեծ Հոկտեմբերի նվաճումները պաշտպանելու պատրաստակամությունը։ Սովետական մարդկանց այդ առասպելական սխրագործությունը ընդմիշտ կմնա սերունդների հիշողության մեջ որպես մեր հայրենիքի երջանկության և ազատության պայքարում ցուցաբերած իսկական հայրենասիրության ու հերոսության օրինակ։

Մարդկության ոխերիմ թշնամու դեմ սրբազան պատերազմի ելան սովետական բազմազգ երկրի բոլոր ժողովուրդները՝ ռուս դյուցազուն ժողովրդի գլխավորությամբ։

Հայ ժողովուրդը ֆաշիզմի դեմ պատերազմ ուղարկեց իր մոտ կես միլիոն որդիներին ու դուստրերին։ Հայաստանի կոմունիստների կեսից ավելին զենքը ձեռքներին մարտնչում էին հիտլերյան հորդաների դեմ։ Գործող բանակի կազմում կռվում էին հայկական հինգ դիվիզիաներ։ Դրանցից 89-րդ Թամանյան դիվիզիան, գեներալ Նվեր Սաֆարյանի հրամանատարությամբ, իր մարտական սխրագործությունն ավարտեց տապալված Բեռլինում։ (Ծափահարություններ)։

Մեր ժողովրդի որդիներն ու դուստրերը բազում վառ էջեր են գրել Հայրենական մեծ պատերազմի հերոսամատյանում։ Սովետական Միության կրկնակի հերոս, խիզախ օդաչու Նելսոն Ստեփանյանի, Սովետական Միության հերոսներ Հունան Ավետիսյանի, Ջահան Կարախանյանի և ուրիշ շատերի սխրագործությունները խորհրդանշում են հայ ժողովրդի նվիրվածությունը սոցիալիստական իր մեծ հայրենիքին, լենինյան կոմունիստական կուսակցությանը։ (Ծափահարություններ)։

Հայրենական մեծ պատերազմի տարիներին սովետական բանակում և ռազմածովային նավատորմում կային 60-ից ավելի հայ գեներալներ ու ծովակալներ։ Ականավոր զորապետների թվումն էին Սովետական Միության մարշալ Հովհաննես Բաղրամյանը, նավատորմի ծովակալ Հովհաննես Իսակովը, զրահատանկային զորքերի մարշալ Համազասպ Բաբաջանյանը, ավիացիայի մարշալ Սերգեյ Խուդյակովը (Արմենակ Խանֆերյանց) և ուրիշ շատերը։ (Ծափահարություններ)։

Պատերազմի տարիներին 103 հայ ռազմիկների շնորհվեց Սովետական Միության հերոսի բարձր կոչում, մեր ժողովրդի հարյուր հազարավոր ներկայացուցիչներ պարգևատրվեցին մարտական շքանշաններով ու մեդալներով։

Հայ ժողովրդի ռազմիկ զավակների հերոսական գործերի անջնջելի վկայությունների մեջ մեզ համար առանձնապես թանկ է Հայրենական մեծ պատերազմի ծանր օրերին, 1942 թվականի ամռանը, Հյուսիսային Կովկասի ռազմաճակատում լույս տեսած «Անմահություն» խորագրով մի գրքույկ, որը նվիրված է Սովետական Միության հերոս, հրետանային մարտկոցի հրամանատար Սերգեյ Օհանյանի և նրա հետ զոհված մարտիկների լեգենդար սխրագործությանը։ Խորին երախտագիտության զգացումով հարկ է նշել, որ հայ մարտիկների սխրանքների մասին սերունդներին պատմող այդ առաջին գիրքը ծանր մարտերի ծուխ ու բոցի մեջ խմբագրել և տպագրության է հանձնարարել բրիգադի կոմիսար Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը։ (Ծափահարություններ)։

Այսօր, այդ եղելությունից 28 տարի անց, երախտագետ Հայաստանի հողի վրա մենք ուզում ենք այդ նվիրական գիրքը՝ մեր հայերեն և ռուսերեն նոր հրատարակությամբ, նվիրել իր խմբագրին՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար, մեր սիրելի Լեոնիդ Իլյիչ Բրեժնևին՝ ի հիշատակ դաժան փորձությունների տարիներին հայ ռազմիկների հետ ունեցած նրա մարտական բարեկամության։ (Բուռն ծափահարությունների ներքո ընկ. Ա. Ե. Քոչինյանը գիրքը հանձնում է ընկեր Լ. Ի. Բրեժնևին)։

«Ամեն ինչ ռազմաճակատի համար, ամեն ինչ հաղթանակի համար», կուսակցության այս մարտական կոչը պատերազմի տարիներին դարձավ Սովետական Հայաստանի բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի կյանքի և աշխատանքի գլխավոր նպատակը, հիմնական բովանդակությունը։

Հայաստանի կոմունիստական կուսակցության քաղաքական և կազմակերպչական ամբողջ գործունեությունն ուղղված էր ռազմաճակատի կարիքները ապահովելու, հանրապետության առջև դրված պատասխանատու խնդիրները կատարելու նպատակին։

Հիտլերիզմի դեմ մղված պայքարին ակտիվորեն մասնակցում էին սփյուռքահայ աշխատավորները։ Նրանցից շատերը կռվում էին դիմադրության մարտիկների, պարտիզանական ջոկատների շարքերում։ Մենք բարձր ենք գնահատում սփյուռքահայության բարոյական և նյութական աջակցությունը սովետական բանակին։ Նրանց միջոցներով ստեղծված տանկային շարասյուները հանդիսացան այն մեծ համակրանքի և սիրո առհավատչյան, որ սփյուռքահայ աշխատավորները տածում են դեպի սոցիալիզմի մեծ երկիրը, դեպի բանվորների և գյուղացիների առաջին պետությունը։ (Ծափահարություններ)։

Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի համաշխարհային պատմական հաղթանակը սոցիալիստական կարգերի իսկական տրիումֆն էր, նրա կենսունակության և անպարտելիության հաստատումը։ Մենք հպարտ ենք, որ այդ մեծ հաղթանակի մեջ իր արժանի ավանդն է ներդրել նաև սովետական հայրենիքին, սոցիալիզմի և կոմունիզմի գործին անսահմանորեն նվիրված հայ ժողովուրդը։ (Ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Հետպատերազմյան տարիներին աշխարհը վկա եղավ սովետական ժողովրդի մի նոր անօրինակ սխրագործության։

Սովետական երկրի փառապանծ բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ինտելիգենցիայի ջանքերով կարճ ժամանակում իրականացվեց ժողովրդական տնտեսության վերականգնման, պատերազմի ահավոր հետքերի վերացման վիթխարի ծրագիրը։ Միայն կոմունիստական կուսակցության կողմից իր հայրենիքին անսահման նվիրվածության ոգով

դաստիարակված սովետական ժողովուրդը, միայն հսկայական հնարավորություններ ունեցող սոցիալիստական կարգն էր ի վիճակի իրագործելու այդ դժվարագույն խնդիրը։

Մեր երկրում սոցիալիզմի լիակատար և վերջնական հաղթանակը, կոմունիզմի ծավալուն կառուցմանն անցնելը սովետական հերոսական ժողովրդի ոգեշունչ աշխատանքի, նրա ստեղծագործական խիզախումների, աշխատավոր մասսաներին լենինյան ուղիով վստահորեն առաջնորդող Սովետական Միության կոմունիստական կուսակցության քաղաքական ու կազմակերպչական վիթխարի գործունեության պատմական հանրագումարն է։

Սովետական Հայաստանը իր կեսդարյա փառապանծ հոբելյանը դիմավորում է հոգևոր և նյութական ուժերի հզոր ծաղկման մեջ, տնտեսական, քաղաքական և հասարակական կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերած հսկայական նվաճումներով։

Հանրապետության աշխատավորների հիսուն տարվա հոյակապ նվաճումների նյութականացված արտահայտությունն են սոցիալիստական զարգացած էկոնոմիկան, առաջավոր գիտությունն ու կուլտուրան, բնակչության բարեկեցության աճը։

Սովետական Հայաստանի կեսդարյա ուղու գլխավոր տնտեսական արդյունքը հզոր արդյունաբերության ստեղծումն է, Ռուսաստանի երբեմնի հետամնաց ագրարային ծայրամասի վերածումը զարգացած գյուղատնտեսություն ունեցող ինդուստրիալ հանրապետության։

Ամբողջ ժողովրդական տնտեսության վերելքի հիմքը եղավ նախ և առաջ էներգետիկ բազայի ստեղծումը։ Կատարելով լենինյան պատգամները, Հայաստանը դարձավ համատարած էլեկտրիֆիկացման հանրապետություն, որի յուրաքանչյուր անկյունը լուսավորված է Իլյիչի լամպերով։ Առաջին հնգամյակներում գործն սկսելով ներկայումս փոքր թվացող հիդրոէլեկտրակայանների կառուցումից, այնուհետև անցնելով Սևան—Հրազդան էներգախիդացին կոմպլեքսի ստեղծմանը, իսկ ապա՝ ջերմաէլեկտրակայանների և ատոմային էլեկտրակայանների կառուցմանը, մենք արմատապես լուծում ենք էներգետիկ բազայի պրոբլեմը։

Բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությամբ Հայկական ՍՍՀ-ն առաջ է անցել կապիտալիստական բազմաթիվ զարգացած երկրներից։ Ընթացիկ տարում հանրապետությունում կարտադրվի ավելի քան վեց միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, այսինքն՝ գրեթե երեք անգամ շատ, քան ամբողջ ցարական Ռուսաստանում 1913 թվականին։ Եվ մենք ուրախ ենք այսօր զեկուցելու, որ կեսդարյա հոբելյանին Հայաստանի էներգասիստեմը լրիվին կբավարարի արագ զարգացող ժողովրդական տնտեսության էլեկտրաէներգիայի պահանջմունքները։

Հեղափոխությունից առաջ Հայաստանում համեմատաբար զարգացած էին միայն լեռնահանքային և կոնյակի արտադրությունները։ Սովետական իշխանության տարիներին Հայաստանի արդյունաբերությունը քանակական և որակական բուռն վերելք ապրեց։ Բավական է ասել, որ վերջին 25 տարում արդյունաբերության համախառն արտադրանքի տարեկան միջին աճը կազմել է ավելի քան 13 տոկոս։ Այդ տեմպերը տարեցտարի արագանում էին։

Հայաստանի արդյունաբերությունը արագ տեմպերով էր զարգանում նաև վերջին տասնամյակում, հատկապես ՍՄԿԿ Կենտկոմի 1964 թվականի հոկտեմբերյան պլենումից հետո։ Պլենումի և կուսակցության XXIII համագումա-



րի որոշումները նոր հեռանկարներ բացեցին երկրի քաղաքական ու տնտեսական կյանքի կուսակցական ղեկավարման մեթոդներն ու ոճը կատարելագործելու, ժողովրդական տնտեսության կառավարման նկատմամբ գիտական մոտեցում ցուցաբերելու համար։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, նշելով ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում սովետական էկոնոմիկայի օպտիմալ զարգացման ուղիները, որոշել է տնտեսական վերելքի ստրատեգիական ուղղությունը՝ հանրային արտադրության արդյունավետության վճռական բարձրացումը։

Հետևողականորեն առաջնորդվելով ՍՄԿԿ XXIII համագումարի և Կենտկոմի 1969 թվականի դեկտեմբերյան և 1970 թվականի հուլիսյան պլենումների որոշումներով, հանրապետության կուսակցական կազմակերպությունները, սովետական և տնտեսական մարմինները գլխավոր ուշադրությունը նվիրում են գիտատեխնիկական առաջադիմության ապահովմանը, արտադրության մեջ գիտության նվաճումների արմատավորմանը, աշխատավորներին մոբիլիզացնում են հաղթահարելու արդյունաբերության կազմակերպման և կառավարման գործում եղած թերությունները, բարձրացնելու բոլոր աշխատողների պատասխանատվությունը արտադրական կոլեկտիվների տնտեսական գործունեության արդյունքների համար։

Ընթացիկ հնգամյակում Հայաստանի արդյունաբերության աշխատողները նոր, հիանալի հաջողությունների են հասել արտադրության համակողմանի զարգացման և նրա արդյունավետության բարձրացման գործում։

Կարևոր առաջադիմական փոփոխություններ են կատարվել արդյունաբերության կառուցվածքում։ Աշխատանքի ընդհանուր միութենական բաժանման մեջ Հայաստանն այժմ ներկայացված է լայնորեն զարգացած մեքենաշինությամբ, գունավոր մետալուրգիայով, քիմիական արդյունաբերությամբ, շինանյութերի ինդուստրիայով, ինչպես նաև թեթև և սննդի արդյունաբերությամբ։ Էլեկտրատեխնիկական և հաստոցաշինական ճյուղերի զարգացման հետ մեկտեղ՝ վերջին տարիներս մեզ մոտ գերազանցող տեմպերով են զարգանում ճշգրիտ սարքաշինությունը, էլեկտրոնիկան և ռադիոտեխնիկան։ Ստեղծված են արդյունաբերության նոր ճյուղեր՝ ավտոմոբիլային, բժշկական և կենսաբանական։ Հանրապետության ինդուստրիալ բնանկարը զարդարում են հարյուրավոր խոշոր կոմբինատները, գործարաններն ու ֆաբրիկաները, որոնք թողարկում են արդյունաբերական արտադրանքի ամենաժամանակակից տեսակներ։

Երկրի ընդհանուր արդյունաբերական արտադրանքի մեջ Հայաստանը նկատելի տեղ է գրավում մոլիբդենի կոցենտրատների, ռաֆինացված պղնձի, սինթետիկ կաուչուկի, ավտոդողերի, շարժական էլեկտրակայանների, գեներատորների, ուժային տրանսֆորմատորների, կաբելի, էլեկտրալամպերի, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների, կիսահաղորդչային տարրերի, ճշգրիտ սարքերի և ավտոմատացման միջոցների, ժամացույցների, ռադիոտեխնիկական և էլեկտրոնային առարկաների, մետաղահատ հաստոցների, կենտրոնախույս պոմպերի, գործվածքների, կոշկեղենի, գորգերի, տրիկոտաժի և արտադրանքի ուրիշ շատ տեսակների թողարկմամբ։

Սովետական իշխանության տարիներին հանրապետության արդյունաբերական արտադրանքի արտադրության ծավալը աճել է 180 անգամ։ Այժմ հանրապետության արդյունաբերությունը երկու օրում ավելի շատ արտադրանք

է թողարկում, քան ամբողջ 1913 թվականին։ Հանրապետության հասարակական ամբողջ արտադրանքի մեջ արդյունաբերության բաժինը ներկայումս կազմում է 73 տոկոս։

Սովետական Հայաստանի ինդուստրիալ զարգացման բարձր մակարդակի վկայությունն է, որ նրա արդյունաբերական արտադրանքի ավելի քան 150 տեսակներ արտահանվում են 70 արտասահմանյան երկրներ։ Մեր հանրապետությունը ետ մնացող երկրներին տեխնիկական օգնություն է ցույց տալիս արդյունաբերական խոշոր օբյեկտներ ստեղծելու գործում։

Հայաստանի արդյունաբերության ժամանակակից զարգացման բնորոշ կողմերից մեկը նրա ռացիոնալ տեղաբաշխումն է։ Արդյունաբերությունը արդեն խոշոր քաղաքների մենաշնորհը չէ, նա ամուր հաստատվել է հանրապետության բոլոր շրջաններում։ Եթե մոտ անցյալում նա ներկայացված էր ոչ ավելի, քան տասը քաղաքներում, ապա այժմ արդյունաբերական օբյեկտներ ունենք 126 քաղաքներում ու բնակավայրերում։

Վերջին հիսուն տարում Հայաստանում մեծապես զարգացան երկաթուղային, ավտոմոբիլային ու օդային տրանսպորտը և կապը։

Հանրապետության ժողովրդական տնտեսության հետագա վերելքի և ձեռք բերված հաջողությունների հիմքը կազմում են կապիտալ շինարարության հարաճուն տեմպերը։

Մեր ժողովուրդը սիրում է կառուցել։ Հանրապետության տերիտորիայում պահպանված պատմական մեծաթիվ հուշարձանները վկայում են հայ ճարտարապետների մեծ վարպետության մասին։ Սակայն միայն սովետական իշխանության օրոք անհրաժեշտ պայմաններ ստեղծվեցին ժողովրդի կառուցողական տաղանդի համակողմանի ծաղկման համար։

Հայաստանն այժմ մի հսկայական շինարարական հրապարակ է հիշեցնում։ Նոր բնակելի զանգվածները, մեծաթիվ կառույցների կորպուսները, ամբարձիչ կռունկների դեպի երկինք ուղղված սլաքները քաղաքային և գյուղական բնանկարի անկապտելի մասն են կազմում, խորհրդանշում վաղվա հանդեպ աշխատավորների հավատը։ (Երկարատև ծափահարություններ): Մեր պանծալի շինարարները տարեցտարի արագացնում են շինարարության տեմպերը։ Միայն այս հնգամյակում հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ ավելի շատ կապիտալ ներդրումներ են կատարվել, քան նախորդ տասը տարում։

Համաժողովրդական հոգատարությամբ և ուշադրությամբ են շրջապատված հանրապետության կարևորագույն կառույցները՝ Արփա—Սևան 48 կիլոմետրանոց եզակի թունելը, հիդրոէլեկտրակայանների Որոտանի կասկադը, Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատը, Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանը, ատոմային էլեկտրակայանը, Զոդի կոմբինատը, Երևան—Սևան ավտոմայրուղին և արդյունաբերական, բնակելի ու կուլտուր-կենցաղային այլ օբյեկտներ։ Այդ խոշոր օբյեկտների ինչպես և սոցիալիստական ինդուստրիայի առաջնեկների կառուցման համար հայ բանվորների հետ ուս-ուսի հերոսաբար աշխատում են ռուս, ուկրաինական, բելոռուս, վրաց ադրբեջանական ժողովուրդների և մեր մեծ հայրենիքի մյուս ժողովուրդների հազարավոր որդիներ ու դուստրեր։ (Ծափահարություններ): Այդ կառույցները սովետական երկրի եղբայրական ժողովուրդների իսկական պրոլետարական համերաշխության կենդանի օրինակ են։



Հայաստանը ինդուստրիալ հանրապետության վերածվելու սոցիալ-քաղաքական կարևոր արդյունքը եղավ բանվոր դասակարգի հզոր ջոկատի կազմավորումը, որը հանրապետության առաջատար հասարակական-քաղաքական ուժն է։ Եթե 1928 թվականին կար ընդամենը 50 հազար բանվոր ու ծառայող, ապա 1970 թվականին այդ թիվն անցնում է 830 հազարից։ Արդյունաբերական արտադրական անձնակազմի թիվը այդ ժամանակամիջոցում ավելացել է 20 անգամ։

Սովետական Հայաստանի բանվոր դասակարգին՝ մեր մեծ երկրի փառապանծ բանվոր դասակարգի մարտական ջոկատներից մեկին վճռական դեր է պատկանում հանրապետության էկոնոմիկայի ստեղծման ու հզոր զարգացման գործում։

Թույլ տվեք այս բարձր ամբիոնից Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության և Մինիստրների սովետի անունից, հանրապետության բոլոր աշխատավորների անունից արդյունաբերության բնագավառի բոլոր աշխատողներին՝ բանվորներին, ինժեներա-տեխնիկական անձնակազմի բազմահազարանոց ջոկատին, անկեղծ շնորհակալություն հայտնել և նրանց մաղթել նոր, հրաշալի աշխատանքային հաղթանակներ՝ հանուն կոմունիզմի։ (Երկարատև ծափահարություններ):

Գյուղատնտեսության կարիքների և նրա հետագա վերելքի նկատմամբ կուսակցության մշտական հոգատարությունը, կոլտնտեսականների, կոլտնտեսուհիների, սովխոզների բանվորների և մասնագետների անձնվեր աշխատանքը ապահովեցին Հայաստանի սոցիալիստական գյուղատնտեսության անշեղ զարգացումը։

Սակավահողության և հաճախակի երաշտների պայմաններում կարևորագույն նշանակություն ուներ ոռոգման և կիսաանապատային, աղակալած, քարքարոտ խոպան հողերի յուրացման պրոբլեմի լուծումը։ Կատարված մեծ աշխատանքի շնորհիվ Հայաստանում ոռոգելի հողերի տարածությունը, 1913 թվականի համեմատությամբ, ընդարձակվել է ավելի քան չորս անգամ։ Հատուկ ուշադրություն է նվիրվում խաղողի և պտղատու այգիների ընդարձակմանը, որոնք կարևոր տեղ են գրավում հանրապետության գյուղատնտեսության մեջ։

Գյուղի հաջողությունների վճռական հիմքը գյուղատնտեսության լայն մեքենայացումն էր։ Այժմ հանրապետությունում կա 476 կոլտնտեսություն և 290 սովխոզ, որոնց դաշտերում աշխատում են ավելի քան 9 հազար տրակտոր, մոտավորապես 1.700 հացահատիկի կոմբայն, ավելի քան 9 հազար բեռնատար ավտոմոբիլ և տասնյակ հազարավոր գյուղատնտեսական այլ մեքենաներ ու ագրեգատներ։ Տեխնիկական մեծ զինվածությունը գյուղի աշխատավորներին թույլ է տվել լուրջ հաջողությունների հասնելու արտադրական շատ պրոցեսների մեքենայացման գործում։

Ոռոգելի հողերի ընդլայնման, մեքենայացման և էլեկտրիֆիկացման, քիմիական պարարտանյութերի կիրառման, գիտության նվաճումների արմատավորման հիման վրա բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, անշեղորեն աճում է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Կոլտնտեսություններն ու սովխոզները ներկայումս արտադրում են գրեթե 20 անգամ շատ խաղող, չորս անգամ շատ ծխախոտ, 8 անգամ շատ բանջարեղեն, ավելի քան 2 անգամ շատ կաթ և միս, գրեթե 5 անգամ շատ ձու, քան նախապատերազմյան 1940 թվականին։

Երկրի ժողովրդական տնտեսության մեջ մեր հանրապետությունը նշանակալի տեսակարար կշիռ ունի խաղողի, պտուղների, ծխախոտի, եթերայուղի, պահածոյի, կոնյակի, բարձրորակ գինիների արտադրությամբ։

Տարեցտարի աճում են կոլտնտեսությունների և սովխոզների եկամուտները։ Փոխվել են գյուղի աշխատավորների հոգևոր կերպարն ու կենցաղը։ Քաղաքի և գյուղի սահմանագծերի աստիճանական ջնջումը, գյուղացիների կենցաղի մեջ էլեկտրականության, գազի, ռադիոյի, հեռախոսի և հեռուստատեսության արմատավորումը, կուլտուր-լուսավորական հիմնարկների և կինոյի լայն ցանցը գյուղական կյանքի մակարդակը մոտեցրել են քաղաքայինին։ Ծեծկված, անելանելի կարիքի և տգիտության ճիրաններում խարխափող հայ գյուղը կավաշեն հյուղերից և գետնափոր խրճիթներից դուրս է եկել և վստահորեն կանգնել տնտեսական ու կուլտուրական վերածնության ուղու վրա։

Ձեռք բերած հաջողությունները հուսալի հիմք են հանրապետության գյուղատնտեսության հետագա հզոր վերելքի համար։ Գյուղի աշխատավորները այժմ ձեռնամուխ են եղել գյուղատնտեսության հետագա զարգացման մեծ ծրագրի իրականացմանը, որն իր լիակատար արտացոլումն է գտել ՍՄԿԿ Կենտկոմի 1970 թվականի հուլիսյան պլենումի որոշումների մեջ։

Այս տոնական օրը մենք սրտագին շնորհակալության զգացումով ենք նշում կոլտնտեսականների, սովխոզների բանվորների, գյուղատնտեսության մասնագետների ու կազմակերպիչների անձնվեր աշխատանքը։

Թույլ տվեք Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության և Մինիստրների սովետի անունից, հանրապետության բոլոր աշխատավորների անունից ջերմորեն ողջունել գյուղի փառապանծ աշխատավորներին և նրանց նոր, մեծ հաջողություններ մաղթել սոցիալիստական գյուղատնտեսության հետագա հուժկու զարգացման վերաբերյալ կուսակցության ծրագիրն իրականացնելու գործում։ (Երկարատև ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։

Ժողովրդի բարեկեցության բարձրացումը Սովետական Միության կոմունիստական կուսակցության մշտական հոգատարության առարկան է։ Սոցիալ-տնտեսական արմատական վերափոխումները, Հայաստանի ժողովրդական տնտեսության հաջողությունները բարենպաստ պայմաններ են ստեղծել աշխատավորների նյութական բարեկեցության անշեղ վերելքի համար։ Դա ձեռք է բերվել ազգային եկամտի աճի շնորհիվ։ Ազգային եկամուտը վերջին 10 տարիներին ավելացել է 2,3 անգամ։ Արագ տեմպերով են աճում հանրային սպառման ֆոնդերը։

Աշխատավորների բարեկեցության ցուցանիշն են բնակարանային շինարարության բուռն աճը, առողջապահության, սպորտի, առևտրի, կենցաղային սպասարկման սիստեմի զարգացումը, կենսաթոշակային ապահովության և սոցիալական մյուս ծառայությունների արմատական բարելավումը։

Պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունը վերջին տասը տարիներին աճել է 2,5 անգամ, բնակչության կենցաղային սպասարկման ծառայությունների ծավալը՝ ավելի քան 4 անգամ, այդ թվում գյուղում՝ 13 անգամ։

Հանրապետությունն ունի բժշկական հիմնարկների ժամանակակից զարգացած ցանց։ Ժողովրդական առողջապահության սիստեմը երաշխավորում է ժամանակին և անվճար բուժօգնություն ամբողջ բնակչությանը։



1913 թվականին եղած 6 հիվանդանոցի փոխարեն, որոնք ունեն 212 մահճակալ, այժմ Հայաստանում կա 265 հիվանդանոց՝ 20 հազար մահճակալով, չհաշված սանատորիաների և մյուս առողջապահական հիմնարկների ցանցը, իսկ 10 հազար բնակչին ընկնող բժիշկների թվով Հայաստանը գրեթե երկու անգամ գերազանցել է զարգացած կապիտալիստական շատ երկրների։

Տարեցտարի արագանում են բնակարանային շինարարության տեմպերը։ Միայն վերջին 10 տարում, ավելի քան 1,5 միլիոն քաղաքացիներ փոխադրվել են նոր բնակարաններ կամ բարելավել իրենց բնակարանային պայմանները։ Ընթացիկ հնգամյակում շահագործման է հանձնվել ավելի քան 6 միլիոն քառակուսի մետր բնակտարածություն, այդ թվում ավելի քան 2 միլիոն քառակուսի մետր՝ գյուղական վայրերում։

Հզոր թափ է ստացել քաղաքաշինությունը։ Այդ մասին են վկայում վեր խոյացած քաղաքները, մեր հանրապետության ամբողջ հոյակապ կերպարանքը։ Երևանը, Լենինականը, Կիրովականը, Հրազդանը, Կամոն, Աբովյանը, Ալավերդին, Ղափանը, Ջարենցավանը, Հոկտեմբերյանը, Էջմիածինը, Սևանը և մյուս քաղաքները դարձել են ինդուստրիալ կենտրոններ։

Եթե 1920 թվականին հանրապետության բնակչության թիվը կազմել է 760 հազար, ապա այժմ այն անցնում է 2,5 միլիոնից։

Սոցիալական խոշոր տեղաշարժերի հիման վրա արմատապես փոխվել է հանրապետության քաղաքային և գյուղական բնակչության թվի հարաբերակցությունը։ Եթե 1913 թվականին քաղաքային բնակիչների թիվը կազմում էր բնակչության 10,4 տոկոսը, ապա այժմ այն հասել է մոտ 60 տոկոսի։

Հայաստանի մայրաքաղաք Երևանի հեքիաթային աճը վառ կերպով բնութագրում է ամբողջ Հայաստանի սոցիալիստական վերածննդի կեսդարյա էպոպեան։ Անցնելով 2700-ամյա ճանապարհ, նախասովետական Երևանը մնացել էր մի գավառական քաղաք 30 հազար բնակչությամբ։ Այսօր Երևանը երկրի արդյունաբերական, կուլտուրական և գիտական խոշորագույն կենտրոններից մեկն է, որտեղ ապրում է մոտավորապես 800 հազար մարդ։

Սովետական իշխանության 50 տարիները եղան հայ ժողովրդի սոցիալիստական կուլտուրայի բուռն զարգացման տարիներ։ Մեր ժողովուրդը, որը ավելի քան 1.600 տարի առաջ ստեղծել է իր գիրն ու գրականությունը, որը համաշխարհային կուլտուրան հարստացրել է գրականության, արվեստի, գիտական մտքի գլուխգործոցներով, դարեր շարունակ զրկված է եղել իր որդիներին և դուստրերին կրթություն տալու հնարավորությունից։ Անգրագիտությունը եղել է նախասովետական Հայաստանի բնակչության մեծամասնության դառը բաժինը։

Հայաստանում կուլտուրական հեղափոխության հիմնական լծակը հանդիսացավ կրթության սովետական սիստեմը։ Սովետական իշխանությունը գիտելիքների լույսով լուսավորեց մարդու հոգևոր աշխարհը։ Մասսայական դպրոցը, աշխատանքային ռեզերվների ուսումնարանները, տեխնիկումները, բուհերը դարձել են Սովետական Հայաստանի քաղաքների և գյուղերի անբաժան ուղեկիցները։

Ներկայումս հանրապետությունում հաջողությամբ իրականացվում է ընդհանուր միջնակարգ պարտադիր կրթությունը։ Ուսուցման սիստեմի մեջ ընդգրկված է Հայկական ՍՍՀ-ի յուրաքանչյուր երրորդ քաղաքացին։ Հանրապետության դպրոցներում, տեխնիկումներում և 12 բուհերում սովորում է ավելի քան 700 հազար մարդ, այսինքն գրեթե այնքան, որքան եղել է Հայաստանի բնակչությունը 1920 թվականին։

Ժողովրդական կրթության սիստեմը եղավ տնտեսության և կուլտուրայի կադրերի դարբնոցը։ Ներկայումս հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ աշխատում է բարձրագույն կրթությամբ մոտավորապես 80 հազար և միջնակարգ մասնագիտական կրթությամբ ավելի քան 60 հազար մասնագետ։ Մեծ նվաճում է սովետական իշխանության տարիներին հանրապետության բարձրորակ տեխնիկական ինտելիգենցիայի ստեղծումը, որն ի վիճակի է լուծելու գիտատեխնիկական առաջադիմության ամենաբարդ պրոբլեմները։

Սովետական Հայաստանն ունի ժամանակակից գիտության հրատապ պրոբլեմների լուծման վրա աշխատող տաղանդավոր գիտնականների մի մեծ բանակ։ Սովետական գիտության զարգացման գործում ծանրակշիռ ավանդ է մուծում Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիան, որին գլխավորում է ականավոր գիտնական, սոցիալիստական աշխատանքի հերոս, ակադեմիկոս Վիկտոր Հայբարձումյանը։ (Ծափահարություններ): Հանրապետությունում կան մոտ 100 գիտահետազոտական հիմնարկներ, որոնց աշխատանքը գիտական ու ժողովրդատնտեսական կարևոր նշանակություն ունի։ Հանրապետության այդ հիմնարկներում ու բուհերում արդյունավետ աշխատանք են կատարում գիտությունների 421 դոկտորներ և ավելի քան 3.000 թեկնածուներ։

Հանրապետության սահմաններից հեռու հայտնի են մեր գիտնականների ֆունդամենտալ աշխատանքները աստրոֆիզիկայի և աստղագիտության, տեսական ֆիզիկայի և տարրային մասնիկների ֆիզիկայի, մաթեմատիկայի և հաշվողական տեխնիկայի, առաձգականության և պլաստիկության տեսության, սիլիկատների, պոլիմերների և բիոլոգիական ակտիվ միացությունների, քիմիայի, ռադիոբիոլոգիայի և ագրոքիմիայի, հայոց լեզվի, Հայաստանի պատմության, էկոնոմիկայի, կուլտուրայի և գրականության ասպարեզներում։

Հենվելով անցյալի առաջադիմական ժառանգության հարուստ տրադիցիաների վրա, մարքսիզմ-լենինիզմի գաղափարախոսության և սոցիալիստական ռեալիզմի բարեբեր հողի վրա սովետական իշխանության տարիներին ծաղկում ապրեցին հայ գրականությունն ու արվեստը, որոնք ժողովրդի հոգևոր աշխարհը հարստացրին սոցիալիստական հումանիզմի, ժողովուրդների բարեկամության, հետևողական ինտերնացիոնալիզմի գաղափարներով և կոմունիզմի մեծ իդեալներով։

Մեր գրականության և արվեստի գլխավոր նպատակն է անձնվեր ծառայել ժողովրդին, կոմունիստական կուսակցությանը, նոր կյանք կառուցող սովետական մարդու շահերին։

Սովետական իրականությունը ծնունդ տվեց հայ գրականության և արվեստի հրաշալի վարպետների մի ամբողջ պլեադայի, որոնց շատ ստեղծագործություններ, աչքի ընկնելով խոր գաղափարայնությամբ և գեղարվեստական բարձր մակարդակով, մտել են հայրենական և համաշխարհային կուլտուրայի գանձարանը։ Եղիշե Չարենցի, Մարտիրոս Սարյանի, Ալեք-



սանդր Թամանյանի, Արամ Խաչատրյանի և սովետահայ գրականության և արվեստի այլ տաղանդավոր վարպետների հրաշալի գործերում վառ մարմնավորում են գտել հայ ժողովրդի ինքնատիպ կուլտուրայի լավագույն գծերը։

Սովետական ժողովուրդների սոցիալիստական կուլտուրաների փոխազդեցության և փոխհարստացման պրոցեսը սովետահայ գրականության և արվեստի զարգացման ու ծաղկման կարևոր պայմաններից մեկն է։ Այդ կենարար պրոցեսում մեծ է ռուսական կուլտուրայի և ռուսաց լեզվի դերը։ Մեծ Հոկտեմբերի լեզուն սովետական բոլոր ժողովուրդների կուլտուրական զարգացման և շփման հզոր լծակն է։ Նրա միջոցով մեր ժողովուրդների հոգևոր հարստությունները դառնում են սովետական և համաշխարհային հասարակայնության սեփականությունը։

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը ամեն ինչ անում են կուլտուրայի հետագա զարգացման համար։ Դրա վկայությունն է կուլտուրական շինարարության թափը, սովետական իշխանության տարիներին ստեղծված թատրոնների և կինոթատրոնների, կուլտուրլուսավորական հիմնարկների պետական ցանցը, գրահրատարակչական գործի, պարբերական մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության լայն աճը։

Մենք խորապես համոզված ենք, որ մեր գիտնականները, գրողները, կոմպոզիտորները, նկարիչները, ճարտարապետները, թատրոնի և կինոյի գործիչները իրենց նոր հետազոտություններով և տաղանդավոր ստեղծագործություններով այսուհետև ևս արժանի ավանդ կներդնեն կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում։ (Ծափահարություններ):

Թույլ տվեք Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության և Մինիստրների սովետի անունից, հանրապետության բոլոր աշխատավորների անունից մեր փառապանծ ինտելիգենցիային սրտանց շնորհավորել մեծ տարելիցի՝ Հայկ. ՍՍՀ-ի և Հայաստանի կոմունիստական կուսակցության կեսդարյա հոբելյանի առթիվ և նոր հաջողություններ մաղթել նրա բեղմնավոր ու վեհ գործունեության մեջ։ (Երկարատև ծափահարություններ):

Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության և կուլտուրայի շեշտակի զարգացումը ուղեկցվել է նոր մարդու՝ կոմունիզմ կառուցող մարդու ձևավորման պրոցեսի հետ։ Սովետական մարդը նոր հասարակական հարաբերությունների, հումանիզմի և կոլեկտիվիզմի ամենավեհ սկզբունքների վրա հիմնված նոր հասարակարգի ծնունդն է։ Նոր մարդու ձևավորումը սովետական հասարակարգի, կոմունիստների լենինյան կուսակցության խոշոր հաղթանակն է։

Սովետական Հայաստանի նվաճումները հնարավոր դարձրին հայ ժողովրդի աշխարհով մեկ սփռված որդիների և դուստրերի՝ հայրենիք վերադառնալու նվիրական երազանքի իրականացումը։ Հայ գաղթականների ճակատագրի նկատմամբ Վ. Ի. Լենինի հոգատարությունը, նրա ցուցումները դրվեցին դեռևս 20-ական թվականներին սկսված հայրենադարձության հիմքում, որի շնորհիվ մեր հարյուր հազարավոր հայրենակիցներ արտասահմանյան երկրներից վերադարձան Սովետական Հայաստան։ (Ծափահարություններ):

Հայրենիք ձեռք բերած, Սովետական Հայաստանում ազատ աշխատան-

քի բերկրանքն ու երջանկությունը ճաշակած մարդիկ ակտիվորեն ներգրավվել են սոցիալիստական շինարարության մեջ։

Մեր հայրենակիցների մասսայական հայրենադարձությունը հնարավոր եղավ սովետական կարգերի շնորհիվ, Սովետական Միության կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ։

Հայ ժողովուրդը անսահմանորեն շնորհակալ է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեից, նրա քաղբյուրոյից և սովետական կառավարությունից՝ Սովետական Հայաստան գալ ցանկացող աշխատավոր հայերի բախտի նկատմամբ մեծ հոգատարության և ուշադրության համար։ (Բուռն ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանում տեղի ունեցած զարմանալի փոփոխությունները, նրա տնտեսական և կուլտուրական զարգացման հաջողությունները սովետական բոլոր մարդկանց բարեկեցության նկատմամբ կոմունիստական կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի և սովետական կառավարության ցուցաբերած հսկայական հոգատարության արգասիքն են, հայ ժողովրդի հանդեպ նրանց հոգատարության և ուշադրության արգասիքը։ (Ծափահարություններ)։

Թույլ տվեք, արտահայտելով հանրապետության բոլոր աշխատավորների զգացմունքները, ամբողջ սրտով շնորհակալություն հայտնել կոմունիստների լենինյան կուսակցությանը, մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեին և սովետական կառավարությանը, այդ մեծ հոգատարության համար։ (Ծափահարություններ)։

Հանրապետության աշխատավորները այդ հոգատարությանը միշտ պատասխանել և պատասխանում են աշխատանքային նոր սխրագործություններով, իրենց շարքերն էլ ավելի համախմբելով կոմունիստների փառապանծ կուսակցության և նրա Կենտրոնական կոմիտեի շուրջը։ (Ծափահարություններ)։

Լենինյան հոբելյանի շնորհիվ առաջացած աշխատանքային և քաղաքական խանդավառությունը հարաճուն ուժով շարունակում է կուսակցության XXIV համագումարը արժանավայել դիմավորելու համար երկրով մեկ լայնորեն ծավալված հայրենասիրական շարժման մեջ։ Հայաստանի կոմունիստները ակտիվորեն են պատրաստվում համագումարին, համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ ընթանում բոլոր աշխատավորների ավանգարդում։ Այս տոնական օրերին հանրապետության առաջավոր ձեռնարկությունների ու կառույցների շատ կոլեկտիվներ, կոլտնտեսություններ ու սովխոզներ զեկույց են տալիս մեր կուսակցության համագումարի պատվին ստանձնած սոցիալիստական բարձր պարտավորությունների կատարման մասին։

Մենք ուրախ ենք զեկուցելու Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեին և անձամբ Ձեզ, թանկագին Լեոնիդ Իլյիչ, որ մեր հանրապետության արդյունաբերության բանվորներն ու ինժեներատեխնիկական աշխատողները հաջողությամբ են ավարտում հնգամյակը, պլանը կատարում են բոլոր հիմնական ցուցանիշներով։ (Ծափահարություններ)։

Կուսակցության XXIII համագումարի դիրեկտիվներով նախատեսված արդյունաբերական արտադրանքի ծավալի բարձր աճը՝ մոտավորապես 1,5 անգամ, կկատարվի։ (Երկարատև ծափահարություններ)։ Այս հոբելյանական տարում արդյունաբերական արտադրանքի աճը հանրապետությունում կկազ-



մի մոտավորապես 14 տոկոս։ (Ծափահարություններ)։ Դա ձեռք կբերվի որակական ցուցանիշների և արտադրության արդյունավետության զգալի բարձրացման, նոր ձեռնարկությունների գործարկման և գործող ձեռնարկությունների վերակառուցման միջոցով։ Ընթացիկ հնգամյակի կարևոր նվաճումն է աշխատանքի արտադրողականության նշանակալի աճը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։

Հանրապետության շինարարները ժամկետից շուտ կատարեցին հնգամյա պլանի առաջադրանքները, որոնք բխում են կուսակցության XXIII համագումարի դիրեկտիվներից։ Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ ներդրված են 1,6 անգամ շատ կապիտալ միջոցներ, քան նախորդ հինգ տարում։ (Ծափահարություններ)։

Հանրապետության աշխատավորները հոբելյանը նշանավորեցին ժողովրդատնտեսական կարևոր նշանակություն ունեցող մի շարք այնպիսի խոշոր օբյեկտների գործարկումով, ինչպիսիք են՝ Տաթևի հիդրոէլեկտրակայանը, Հրազդանի լեռնա-քիմիական կոմբինատի ցեմենտի արտադրության առաջին հերթը, Երևանի քիմիական կոմբինատի՝ բենզինի թթվեցման մեթոդով քացախաթթվի ստացման երկրում առաջին արտադրությունը։ Կիրովականի քիմկոմբինատի ցիանուրային քացախաթթվի, Երևանի լաքերի և ներկերի գործարանի ջրա-էմուլսիայի, Արզնու «Հախճապակու» գործարանի տեսակավոր սպասքի արտադրամասերը, Գառնի—Երևան ջրատարը, ինչպես նաև 70 հազար տեղանոց նոր ստադիոնը, Լենինականի դրամատիկական թատրոնի նոր շենքը, Երևան—Ջանգեզուր ռադիո-ռելեյի գծի առաջին հերթը և այլն։

Վերջին աշխատանքներն են կատարվում թողարկելու համար Հրազդանի պետական շրջանային ջերմաէլեկտրակայանի 200 հազար կիլովատ կարողությամբ առաջին էներգաբլոկը։

Իրենց խնդիրները պատվով կատարեցին նաև հանրապետության գյուղատնտեսության աշխատավորները։

Զգալիորեն ավելացել է գյուղատնտեսական բոլոր մթերքների արտադրությունը, բարձրացել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը։ Նախորդ հինգ տարիների համեմատությամբ պետական մթերումների ծավալն ավելացել է. կարտոֆիլինը՝ 2,5 անգամ, բանջարեղենինը՝ 1,9, խաղողինը՝ 1,6, պտղինը՝ 3, բոստանային կուլտուրաներինը՝ 2,5 անգամ, մսինը՝ 19 տոկոսով, կաթինը՝ 24 և ձվինը՝ 52 տոկոսով։

Ընթացիկ տարում խաղողի, բանջարեղենի, մսի և կաթի արտադրության ու պետական գնումների ծավալը ամենաբարձրն էր՝ նախորդ բոլոր տարիների համեմատությամբ։

Հանրապետության աշխատավորները հանդիսավորությամբ նշում են Հայաստանի կոմունիստական կուսակցության 50-ամյա հոբելյանը, որը ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի ղեկավարությամբ, Կենտրոնական կոմիտեի քաղբյուրոյի ամենօրյա և համակողմանի օգնության պայմաններում գաղափարական-քաղաքական և կազմակերպական մեծ աշխատանք է կատարում կոմունիստական շինարարության խնդիրները կենսագործելու ուղղությամբ։ Հայաստանի կոմունիստական կուսակցությունը եղել է, է և կլինի Սովետական Միության կոմունիստական կուսակցության հավատարիմ, մարտական ջոկատը։ (Ծափահարություններ)։

Հեղափոխական հրաշալի տրադիցիաներով դաստիարակված Հայաստա-

նի կոմկուսակցությունը իր պատմության բոլոր էտապներում հետևողականորեն պայքարել է Սովետական Միության կոմունիստական կուսակցության գլխավոր գծի կենսագործման համար։ (Ծափահարություններ)։ Նա վճռականորեն հանդես է եկել կուսակցության մեջ եղած բոլոր թշնամական հոսանքների, տրոցկիզմի, աջ օպորտունիզմի, նացիոնալ-ուկլոնիզմի դեմ, կոմունիստների մեծ կուսակցության մարտական շարքերի լենինյան անխախտ միասնության համար։

Հայաստանի կոմունիստական կուսակցությունը աշխատավորներին դաստիարակում է Վ. Ի. Լենինի անմահ գործին, սոցիալիստական հայրենիքին անսահման նվիրվածության ոգով։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի ղեկավարությամբ նա միշտ եղել է և կլինի պրոլետարական ինտերնացիոնալիզմի ու սովետական ժողովուրդների սրբազան բարեկամության հետևողական ջատագովը։ (Ծափահարություններ)։

Հայաստանի կոմունիստները գտնվում են ՍՄԿԿ XXIII համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1969 թվականի դեկտեմբերյան և 1970 թվականի հուլիսյան պլենումների որոշումների իրականացման պայքարի առաջին շարքերում։

130 հազար անդամ միավորող Հայաստանի կոմունիստական կուսակցությունը իր կեսդարյա հոբելյանը դիմավորում է քաղաքականապես ու կազմակերպորեն էլ ավելի ամրապնդված, ինչպես երբեք, սերտորեն համախմբված ՍՄԿԿ լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը։

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն կարող է վստահ լինել, որ Հայաստանի կոմկուսը, բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, ինտելիգենցիան ամեն ինչ կանեն կոմունիստական շինարարության խնդիրները հաջողությամբ իրականացնելու, ՍՄԿԿ Կենտկոմի բոլոր որոշումներն ու դիրեկտիվները կենսագործելու համար։ (Ծափահարություններ)։

Տնտեսական և կուլտուրական շինարարության կարևորագույն խնդիրների լուծմանն ավելի ու ավելի ակտիվորեն են մասնակցում աշխատավորների դեպուտատների սովետները։ Ամենօրյա հասարակական-քաղաքական մեծ աշխատանք են կատարում Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի և աշխատավորների դեպուտատների տեղական սովետների մոտավորապես 26 հազար դեպուտատները, սովետներին առընթեր մշտապես գործող հանձնաժողովները։ Իշխանության ամենամասսայական մարմինները՝ Սովետները պայքարում են էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա վերելքի համար։

Հայաստանի արհմիությունները, որոնք միավորում են ավելի քան 850 հազար մարդ, բանվորներին ու ծառայողներին մոբիլիզացնում են հաջողությամբ իրականացնելու կուսակցության կանխագծումները։ Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ նրանք իրոք իրենց դրսևորում են որպես կառավարման և տնտեսավարման դպրոց, կոմունիզմի դպրոց։ (Ծափահարություններ)։

Հայաստանի կոմունիստական կուսակցությունը միշտ կարևոր նշանակություն է տվել ու տալիս է երիտասարդության՝ կոմունիզմի ապագա կառուցողների փառապանծ սերնդի դաստիարակությանը։ Հանրապետության կոմերիտմիությունը, որն իր շարքերում միավորում է 260 հազար պատանիներ ու աղջիկներ, կուսակցության հուսալի օգնականն է։ Մենք բարձր ենք գնահատում երիտասարդության հայրենասիրական աշխատանքը և նրա մեծ ավանդը հանրապետության տնտեսական ու կուլտուրական աճի գործում։ (Ծափահարություններ)։



Ընկերնե՛ր։ Մեծ են Սովետական Հայաստանի կեսդարյա ուղու արդյունքները, որոնք նա ձեռք է բերել Հոկտեմբերի անպարտելի դրոշի ներքո։

Հայկական հինավուրց երկրում իսկական հրաշք է կատարվել։ Տառապյալ ժողովուրդը, որի համար դեռ 50 տարի առաջ իմպերիալիստական փտած աշխարհի «մարգարեները» գուշակում էին լիակատար անհետացում պատմության թատերաբեմից, այսօր կանգնել է սոցիալիզմի աշխարհը կերտող ժողովուրդների շարքում և ամբողջ մարդկությանը պարզում է իր պատմական հաղթանակների դրոշը, որ նա անվանում է մեկ, բայց ծանրակշիռ բառով՝ վերածնունդ։ (Բուռն ծափահարություններ)։

Հայ ժողովուրդը խորապես գիտակցում է, որ իր ձեռք բերած պատմական հաջողությունները անխզելիորեն կապված են սովետների մեծ երկրի եղբայրական բոլոր ժողովուրդների և առաջին հերթին ռուս մեծ ժողովրդի ամենօրյա օգնության հետ։ (Ծափահարություններ)։

Աշխարհայացքի և նպատակների ընդհանրությամբ միավորված սովետական ժողովուրդների եղբայրական աջակցությունն ու փոխօգնությունը յուրաքանչյուր սովետական հանրապետության և ամբողջ սովետական ժողովրդի երջանկության ու բարգավաճման ու սոցիալիստական մեր մեծ հայրենիքի անխորտակելի հզորության անսպառ աղբյուրը, վճռական պայմանն են։

Ռուս ժողովրդի, մեր երկրի մյուս բոլոր եղբայրական ժողովուրդների հետ հայ ժողովուրդը վստահորեն ընթանում է մեծ Լենինի նշած ուղիով։

Հայաստանի զարգացումն ու բարգավաճումը, սովետական իշխանության տարիներին հայ ժողովրդի վերածնունդը Սովետական Միության կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության անշեղ իրականացման, մեր երկրում սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ամբողջ պրոցեսի օրինաչափ արդյունքն են։

Հայ ժողովուրդը իր վերածննդով պարտական է կոմունիստների մեծ կուսակցությանը՝ մեր բոլոր հաղթանակների ոգեշնչողին ու կազմակերպչին։ (Բուռն ծափահարություններ)։

Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ մեր երկրի ժողովուրդները գրոհեցին հին աշխարհի ամրոցների վրա։ Կուսակցության ղեկավարությամբ նրանք Հոկտեմբերի հաղթական դրոշը տարան Հայրենական մեծ պատերազմի բոցերի միջով։ Հարազատ կոմունիստական կուսակցության փորձված ղեկավարությամբ սովետական ժողովուրդները կառուցեցին սոցիալիզմը, համարձակորեն գնում են գալիքին ընդառաջ, վստահ՝ կոմունիզմի լիակատար հաղթանակին։ (Ծափահարություններ)։

Մեր ժողովուրդը գիտե, որ ճիշտ ուղիով դեպի կոմունիզմի նվիրական ափերը աներեր ընթացող սովետական հզոր նավի ղեկի մոտ կանգնած է պայքարում կոփված, փորձով իմաստնացած նավավարը՝ հարազատ կոմունիստական կուսակցության լենինյան Կենտրոնական կոմիտեն։ (Ծափահարություններ)։

Հայաստանի աշխատավորները, հայ ժողովուրդը, ինչպես մեր երկրի բոլոր ժողովուրդները միահամուռ պաշտպանում են Սովետական Միության կոմունիստական կուսակցության, լենինյան Կենտրոնական կոմիտեի և սովետական կառավարության ներքին և արտաքին քաղաքականությունը։

Հայաստանի աշխատավորները անարգանքի սյունին են գամում Ամերիկայի Միացյալ Նահանգների իմպերիալիստներին, որոնք հանցավոր պա-

տերազմ են մղում Հնդկաչինում։ Նրանք վճռականորեն հանդես են գալիս Մերձավոր Արևելքում իմպերիալիստական մեքենայությունների դեմ, որոնք սպառնում են արաբական ժողովուրդների անկախությանը, հղի են ամբողջ աշխարհի խաղաղության գործի համար լուրջ վտանգով։

Մենք հպարտանում ենք մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեի իմաստուն քաղաքականությամբ, որի նպատակն է էլ ավելի ամրապնդել սոցիալիստական համագործակցությունը, միջազգային կոմունիստական շարժման շարքերի միասնությունը, համախմբել սոցիալիզմի և առաջադիմական բոլոր ուժերը՝ իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում։

Ընկերնե՛ր։

Հիսուն տարի է, ինչ մեր մեծ հայրենիքի ամենահարավային սահմաններում, ալեհեր Արարատի ստորոտին, վերածնված հայ ժողովուրդը կառուցում է իր նոր երջանիկ կյանքը։

Դարեր կանցնեն,, բայց սերունդները բարի կհիշեն վերածնված Հայաստանի առաջին կառուցողների գործերը, որոնք դրեցին իրենց ժողովրդի ազատության ու երջանկության գրանիտե հիմքը։

Լենինի կրկնակի շքանշանակիր Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության աշխատավորները իրենց վերածննդի պատմության երկրորդ հիսնամյակն են թևակոխում՝ վստահ պայծառ ապագային, լի ուժերով ու եռանդով, սերտորեն համախմբված մեր դարաշրջանի միտքը, պատիվն ու խիղճն իր մեջ մարմնավորած՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցության շուրջը, նրա մարտական շտաբ, լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը։

Հանրագումարի բերելով անցած ուղու արդյունքները, մեր հանրապետության կոմունիստները, աշխատավորները բարձր պատասխանատվության զգացումով են գիտակցում այն խնդիրների վեհությունն ու բարդությունը, որոնք պետք է լուծվեն։ Նրանք համարձակորեն են նայում առաջ, և նրանց հայացքի առջև բացվում է Սովետական Հայաստանի գալիքի հոյակապ հեռանկարը՝ նրա նոր քաղաքներն ու գյուղերը, գործարաններն ու ֆաբրիկաները, էլեկտրակայաններն ու ջրանցքները, ծաղկուն դաշտերն ու այգիները։

Սովետական Միության կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ հայ ժողովուրդը պատրաստ է աշխատանքային նոր սխրանքների, նոր մեծագործությունների՝ ի փառս սոցիալիստական մեր հայրենիքի։ (Ծափահարություններ)։

Թո՛ղ կոմունիզմի արևը շողա Հայաստանի հինավուրց հողի վրա։ (Ծափահարություններ)։

Կեցցե՛ Սովետական Սոցիալիստական Հայաստանը։ (Ծափահարություններ)։

Կեցցե՛ Հայաստանի կոմունիստական կուսակցությունը։ (Ծափահարություններ)։

Փա՜ռք մեր մեծ Հայրենիքին՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությանը։ (Բուռն ծափահարություններ)։

Փա՜ռք Սովետական Միության կոմունիստական կուսակցությանը՝ ժողովուրդների բարեկամության ու երջանկության դրոշակակրին։ (Բուռն, երկարատև ծափահարություններ։ Բոլորը ոտքի են կանգնում)։

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՒՐՍՈՎ

(Ընկեր Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ զեկուցումների, ճառերի և հոդվածների երկհատորյակի հայերեն լույս ընծայման առթիվ)

Պ. Գ. ՍԱՖՅԱՆ

Կոմունիստական կուսակցության և սովետական պետության ականավոր գործիչների երկերի, հոդվածների, ճառերի հրատարակությունը նշանակալից իրադարձություն է մեր երկրի հասարակական-քաղաքական կյանքում։ Դրանցում շարադրված են կոմունիստական կուսակցության, սովետական ժողովրդի անցած ուղու պատմությունը, նախանշված են այն խնդիրները, որոնք դրված են մեր երկրի աշխատավորության առջև։

Վերջերս «Հայաստան» հրատարակչությունը հայ ընթերցողի սեղանին դրեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի զեկուցումների, ճառերի և հոդվածների երկհատորյակը։ Այն ընդգրկում է կոմունիստական կուսակցության փառապանծ ուղու նշանակալից փուլի, 1964—1970 թթ. նկարագիրը։ Երկհատորյակի խորագիրն է «Լենինյան կուրսով», որն իր ներքին տրամաբանական կապով և օրգանական միասնությամբ, ամբողջական աշխատություն է, ուր միանգամայն ճիշտ և համոզիչ կերպով ընթերցողի առջև բացահայտվում է կոմունիստական կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի մշակած քաղաքականությունը մեր երկրի ներքին և արտաքին կյանքի բոլոր բնագավառներում։

Երկհատորյակում զետեղված նյու-




թերում գիտականորեն, խոր և բազմակողմանի վերլուծվում են մեր երկրում կոմունիստական շինարարության լենինյան տեսության և պրակտիկայի, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման, արդյունաբերության և գյուղատնտեսության վերելքի հարցերը, ինչպես նաև միջազգային

կոմունիստական շարժման, սոցիալիզմի համագործակցության երկրների կապերի ամրապնդման և հետագա առաջադիմության խնդիրները։ Այստեղ հատկապես քննարկվում են նոր, անդասակարգ հասարակարգի կառուցման բնագավառում կոմունիստական կուսակցության բազմակողմանի գործունեության և ղեկավար դերի հարցերը։ Երկհատորյակում տեղ են գտել քաղաքական ու գաղափարական արժեքավոր հույժ կարևոր վավերագրեր, ինչպիսիք են՝ «ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումը ՍՄԿԿ XXIII համագումարին», «Սոցիալիզմի մեծ հաղթանակների 50 տարին» զեկուցումը և եզրափակման ճառը ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի և ՌՍՖՍՀ Գերագույն սովետի համատեղ հանդիսավոր նիստում, 1967 թ. նոյեմբերի 3—4), «Հանուն կոմունիստների համախմբվածության ամրապնդման, հանուն հակաիմպերիալիստական պայքարի նոր վերելքի» (ելույթ կոմունիստական ու բանվորական կուսակցությունների Մոսկվայի միջազգային խորհրդակցությունում, 1969 թ. 7-ը հունիսի), «Լենինի գործն ապրում է և հաղթանակում» (զեկուցում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի և ՌՍՖՍՀ Գերագույն սովետի համատեղ նիստում՝ նվիրված Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին, 1970 թ. ապրիլի 21-ին) և այլ փաստաթղթեր։

Երկհատորյակում զետեղված նշված և բազմաթիվ այլ նյութերում ցույց են տրված, թե ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, սովետական կառավարությունը ինչ միջոցներ են իրականացնում մեր երկրում կոմունիզմի կառուցման վիթխարի խնդիրների լուծման գործում աշխատավորական զանգվածներին ներգրավելու համար, ինչպես են կատարելագործվում ժողովրդական տրնտեսության ղեկավարման մեթոդներն ու ձևերը, ինչպես է իրագործվում կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման ծրագիրը, ինչպես և ինչպիսի ձևերով է կոմունիստական կուսակցությունը իրականացնում իր ղեկավար դերը սոցիալիստական հասարակարգում։ Երկհատորյակում պատշաճ խորությամբ են լուսաբանված ՍՄԿԿ և մյուս մարքսիստական-լենինյան կուսակցությունների պայքարը հանուն միջազգային կոմունիստական շարժման միասնության ամրապնդման, ժողովուրդների անվտանգության, խաղաղության։

Կոմունիզմի կառուցման ներկա փուլում տնտեսական պրոբլեմների լուծումը ՍՄԿԿ գործունեության առաջնահերթ խնդիրն է. ահա թե ինչու նրա տնտեսական քաղաքականության մեջ առանձնահատուկ տեղ է տրվում մեր երկրում կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման, տեխնիկական առաջընթացի խնդիրներին։ Աշխատավորության ամենօրյա հետևողական պայքարի, ժողովրդական տնտեսության արդյունավետության բարձրացման, նրա կառավարման կատարելագործման հարցերը միշտ գտնվում են ՍՄԿԿ Կենտկոմի ուշադրության կենտրոնում։ Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի, սոցիալիստական արտադրողական ուժերի նոր հզոր վերելքի ապահովումն այսօր մեր երկրի հիմնական գործնական խնդիրն է։ Ահա թե ինչու, նշում է ընկեր Բրեժնևը. «Ժողովրդական տնտեսության ղեկավարման ասպարեզում Կենտրոնական կոմիտեի գործունեության նպատակն է լուծել ծրագրային տնտեսական գլխավոր խնդիրը՝ ստեղծել կոմունիզմի նյութա-տեխնիկական բազա (հ. 1-ին, էջ 408)։

Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը հնարավորություն կտա ՍՍՀՄ-ում մեծ չափերով զարգացնելու արտադրողական ուժերը և դրա հիման վրա ապահովելու աշխարհում ամենաբարձր արտադրողականություն։ Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը մեր երկրում կապահովի բնակչության ամենաբարձր կենսամակարդակը և պայմաններ կստեղծի հետագայում ըստ պահանջմունքների բաշխման անցնելու համար։

Ներկա էտապում ՍՄԿԿ-ն իր գործունեությունն ուղղել է տեխնիկական առաջընթացի տեմպերի արագացմանը, որից մեծ չափով կախված է աշխատանքի արտադրողականության աճի ապահովումը։ Մեր երկրի ժողովրդական տնտեսությունը շարունակ հագեցվում է նոր և նորագույն մեքենաներով, սարքավորումներով, կատարելագործվում են արտադրական պրոցեսները, արմատավորվում առաջավոր տեխնոլոգիան, կոմպլեքսային մեքենայացման ենթարկվում և ավտոմատացվում արտադրամասերը, արդյունաբերական ձեռնարկությունները։ Այլ կերպ չի կարող լինել, քանի որ, ինչպես ասում է Վ. Ի. Լենինը, կոմունիզմը առաջավոր տեխնիկան օգտագործող բանվորների աշխատանքի արտադրողականության առավել բարձր աստիճանն է, կապիտալիստականի համեմատությամբ։

Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման և աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում ՍՄԿԿ Կենտկոմի վերջին տարիների ամենաարդյունավետ ձեռնարկումներից է տնտեսական ռեֆորմի իրականացումը։ Տնտեսական ռեֆորմին անցնելը ճիշտ և վճռական քայլ էր, այն բխում էր մեր կոմունիստական հասարակության կառուցման շահերից։ «Կոմունիստական շինարարության շահերը, առաջացած դժվարությունները հաղթահարելու անհրաժեշտությունը պահանջում էին ոչ թե առանձին մասնակի ուղղումներ, այլ այնպիսի միջոցառումների սիստեմի մշակում, որոնք ապահովեին երկրում ստեղծված վիթխարի արտադրողական ուժերի ավելի ռացիոնալ օգտագործումը, ժողովրդի բարեկեցության ավելի արագ աճը, մեր հասարակարգի առավելությունների լիակատար բացահայտումը» (հ. 1-ին, էջ 418)։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության մեջ կիրառվող տնտեսական ռեֆորմը տնտեսավարման լենինյան սկզբունքների ստեղծագործական և համարձակ կիրառման նոր փուլ է, այն լայն ասպարեզ է բացում աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման և արտադրական հարաբերությունների կատարելագործման համար։

Երկհատորյակում զետեղված վավերագրերում և փաստաթղթերում համապատասխան տեղ է տրված նաև մեր երկրի գյուղատնտեսության առջև ծառացած խնդիրներին և այն միջոցառումներին, որոնց իրագործումը ապահովելու է գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացումը։

ՍՄԿԿ XXIII համագումարը սահմանեց արդի փուլում կուսակցության ընդհանուր կուրսը գյուղատնտեսության զարգացման բնագավառում, իսկ համագումարին հաջորդած ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումները այն կոնկրետ միջոցառումներն էին, որոնք ապահովում են գյուղատնտեսության հետագա վերելքը։ Այդ միջոցառումներն իրենց արտահայտությունն են գտել երկհատորյակում զետեղված հետևյալ փաստաթղթերում. «ՍՍՀՄ գյուղատնտեսության հետագա զարգացման անհետաձգելի միջոցառումների մասին» (զեկուցում ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, 1965 թ. մարտի 24-ին), «Հողերի մելիորացումը երկրում կայուն գյուղատնտեսական արտադրություն ստեղծելու արմատական հարցն է» (ճառ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, 1966 թ. հուլիսի 10-ին), «Գյուղատնտեսության հարցերի վերաբերյալ կուսակցության XXIII համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումների կատարման ընթացքի մասին» (զեկուցում ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, 1968 թ. հոկտեմբերի 30-ին)։

ՍՄԿԿ Կենտկոմը ընթացիկ տարվա հուլիսին նորից անդրադարձավ երկրում գյուղատնտեսության զարգացման բնագավառում կուսակցության հերթական խնդիրներին. այն համարվեց համաժողովրդական գործ, սովետական ժողովրդի, յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտքը։ «Մեր ժամանակներում,— ասում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— ոչ ոք իրավունք չունի կողմ քաշվել ժողովրդա-տնտեսական քաղաքական այնպիսի մեծ խնդրի լուծումից, ինչպիսին է գյուղատնտեսական արտադրության հետագա զգալի բարձրացումը»։

Արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման գործում կոմունիստական կուսակցության վարած հետևողական քաղաքականությունը Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման և աշխատավորների կենսամակարդակի բարձրացման հաստատուն երաշխիքն է։ Անշեղորեն ընթանալով լենինյան կուրսով, կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն ամեն ինչ անում են հանուն ժողովրդի բարօրության, նրա պայծառ ապագայի՝ մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցման։ Մեծ են ու նշանակալից այդ գործում ձեռք բերված նվաճումները, որոնք մեր պանծալի բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ինտելիգենցիայի, ՍՍՀՄ եղբայ-

տական բոլոր ժողովուրդների ստեղծագործական աշխատանքի, հերոսական մաքառումների արդյունք են։ Չհանգստանալով ձեռք բերվածով, նրանք հարազատ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ անդադրում պայքար են տանում ժողովրդական տնտեսության, կուլտուրայի, գիտության ու լուսավորության բնագավառներում նորանոր հաջողությունների հասնելու և իրենց առջև դրված բոլոր խնդիրները պատվով կատարելու համար։

Ժողովածուում ամփոփված փաստաթղթերի մի այլ ստվար բաժին վերաբերում է Սովետական Միության կոմունիստական կուսակցության գործունեությանը՝ միջազգային կոմունիստական շարժման, համաշխարհային հեղափոխական պրոցեսի տեսության ու պրակտիկայի, ստրատեգիայի ու տակտիկայի, ազգային ազատագրական շարժումների արդի փուլի, հասարակական երկու սիստեմների պայքարի վերլուծությանը և բազմաթիվ այլ պրոբլեմների։

Միջազգային կոմունիստական շարժման կուռ միասնության ապահովումը մեր ժամանակի բարձրագույն պահանջն է, արդի բոլոր հեղափոխական ուժերի պայքարի առաջնահերթ խնդիրը։ Ներկա փուլում միջազգային լարվածության պայմաններում, երբ կապիտալիզմը անցել է բացարձակ ագրեսիվ գործողությունների, միջազգային կոմունիստական շարժման միասնությունը, ընդգծված է երկհատորյակի փաստաթղթերում, բոլոր կոմունիստական կուսակցությունների գործունեության հաջողության երաշխիքն է։

ՍՄԿԿ-ն իր ողջ գործունեության ընթացքում պայքարել և պայքարում է միջազգային կոմունիստական շարժման միասնության համար։ «Մեր ժամանակի ամենատիրական պահանջը, — ասված է Լ. Ի. Բրեժնևի 1967 թ. մայիսի 12-ին Սոֆիայում կայացած միտինգում արտասանած ճառում,— սոցիալիստական համագործակցության համախմբվածությունն ամրապնդելու, համաշխարհային կոմունիստական շարժման միասնությունն ամրապնդելու խնդիրն է» (հ. 2-րդ, էջ 50)։

Բանվորական և կոմունիստական կուսակցությունների պայքարը հանուն միասնության, նրանց ներքին կյանքի օրենքն է, զարգացման գլխավոր պայմանը։

Երկհատորյակում առանձնահատուկ տեղ է գրավում ՍՄԿԿ պայքարը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ամրապնդման և զարգացման համար։ ՍՄԿԿ հավատարիմ է պրոլետարական ինտերնացիոնալիզմի մարքս-լենինյան սկզբունքներին, ակտիվորեն պայքարում է սոցիալիստական համագործակցության, ինչպես նաև բոլոր երկրների կոմունիստական կուսակցությունների եղբայրական կապերի ամրապնդման համար։ «Մենք պաշտպանել ենք և կպաշտպանենք մեր ժամանակի հեղափոխական և առաջադիմական բոլոր ուժերի գլխավոր ապավեն, համաշխարհային սոցիալիստական համագործակցության միասնությունը» (հ. 1-ին, էջ 257)։

Կոմունիզմի կառուցումը ՍՍՀՄ-ում ՍՄԿԿ դիտում է որպես միջազգային կոմունիստական շարժման հանդեպ իր ինտերնացիոնալ մեծ պարտքի դրսևորում։ Եվ պատահական չէ, որ ամբողջ աշխարհի աշխատավորները ՍՍՀՄ-ում կոմունիզմի կառուցման հաջողությունները համարում են իրենց հեղափոխական պայքարին նպաստող էական գործոն։ Սովետական Միության հաջողություններն ամրապնդում են ողջ սոցիալիստական լագերի միասնությունը։ ՍՄԿԿ իր ինտերնացիոնալ պարտքի բարձր գիտակցությամբ միշտ անշահախնդիր օգնություն է ցույց տալիս սոցիալիստական երկրների եղբայրական կուսակցություններին՝ նոր կյանքի կառուցման նրանց հերոսական պայքարում։ Սոցիալիզմի լագերի միասնության, ժողովրդական դեմոկրատիայի նվաճումների պաշտպանության, ինտերնացիոնալիզմի դրսևորման փայլուն օրինակ է ՍՍՀՄ և սոցիալիստական համագործակցության մյուս երկրների օգնությունը չեխոսլովակյան ժողովրդին, 1968 թ. օգոստոսյան դեպքերի ժամանակ։

ՍՍՀՄ-ում կոմունիզմի կառուցման և ժողովրդական դեմոկրատիայի երկրների սոցիալիստական կարգերի ամրապնդման ու զարգացման հաջողությունները մեծ չափով պայմանավորված են ամբողջ աշխարհում կայուն խաղաղության ամրապնդմամբ։ Ահա թե ինչու Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, սոցիալիստական համագործակցության երկրների բանվորական և կոմունիստական կուսակցություններն իրենց գործունեությունը, միջազգային առաջադեմ ուժերի բոլոր ջանքերն ուղղում են իմպերիալիզմի, նրա ոտնձգությունների դեմ՝ հօգուտ խաղաղության պաշտպանության։ Այս հարցերի խոր և բազմակողմանի վերլուծությանն են նվիրված երկհատորյակում տեղ գտած Լ. Ի. Բրեժնևի շատ հոդվածներ, ճառեր և ելույթներ։

Երկհատորյակում բազմաթիվ են այն նյութերը, որոնք վերաբերում են կոմունիստական կուսակցությանը, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի գիտականորեն հիմնավորված, կյանքի պահանջներն արտահայտող քաղաքականությանը։ ՍՄԿԿ ղեկավար դերը կոմունիզմի կառուցման արդի փուլում ավելի է մեծացել, այն ձեռք է բերել վիթխարի ուժ, խորացել և ընդարձակվել են նրա ազդեցության ոլորտները։ Կոմունիստական կուսակցությունը ՍՍՀՄ-ում միակ ուժն է, որը ղեկավարում և ուղղություն է տալիս հասարակությանը, լուծում նրա առջև ծառացած խնդիրները։ «Կոմունիստական կուսակցությունից բացի մեզ մոտ չկա և չի կարող լինել մի այլ քաղաքական կազմակերպություն, որը հաշվի առներ մեզանում գոյություն ունեցող դասակարգերի և սոցիալական խմբերի, բոլոր ազգերի ու ազգությունների, բոլոր սերունդների շահերն ու առանձնահատկությունները, իր քաղաքականության մեջ զուգորդեր այդ շահերը։ Կուսակցությունը հոգում է, որպեսզի ընթացիկ ամենօրյա գործերի մանր ու մանրագույն առվակները ներդաշնակորեն միաձուլվեն միասնական հզոր հոսանքի մեջ» (հ. 2-րդ, էջ 186)։

Կոմունիստական կուսակցության ուժը ժողովրդի հետ ունեցած սերտ կապի մեջ է, ժողովուրդն անսահմանորեն վստահում է կուսակցությանը, նրա մեջ տեսնում իր ուսուցչին ու առաջնորդին։ ՍՄԿԿ-ն իր քաղաքական գործունեության բոլոր միջոցներն ու ձևերը օգտագործում է աշխատավորներին դաստիարակելու լենինիզմին նվիրվածության ոգով, գաղափարապես զինելու ժողովրդին, նրա մեջ նոր հասարակարգի կառուցման կամք և պատրաստակամություն պատվաստելու, սովետական երկրի բոլոր քաղաքացիներին ակտիվորեն ներգրավելու կոմունիզմի կառուցմանը։ «... Այսօր խնդիրն այն է, որ հասարակության յուրաքանչյուր անդամին օգնենք ավելի լավ որոշելու իր տեղը, իր դերը կոմունիստական շինարարության ասպարեզում» (հ. 2-րդ, էջ 185)։

Կոմունիստական կուսակցությունը կյանքի պայմաններին համընթաց շարունակ կատարելագործում է իր գործունեությունը, գտնում մասսաների և ժողովրդական տնտեսության ղեկավարման առավել արդյունավետ և գործուն եղանակներ։ Նա մասսաների ղեկավարությունը իրագործում է սովետների, արհմիությունների, կոմերիտմիության և այլ կազմակերպությունների միջոցով, ապահովում հասարակության վերընթաց զարգացումը։

Հասարակության գիտական կառավարումը կուսակցական կազմակերպություններից պահանջում է խորամուխ լինել արտադրության ղեկավարման հարցերում, ուսումնասիրել ձեռնարկությունների զարգացման հեռանկարային հնարավորությունները, բանվոր-ծառայողների սոցիալական զարգացման խնդիրները։

Երկհատորյակում բացահայտված են մասսաների ղեկավարման լենինյան այն ձևերն ու մեթոդները, որոնք անընդհատ կատարելագործվում են կուսակցության կողմից։ Կոմունիստական շինարարության ծավալի մեծացման հետ մեկտեղ անընդհատ աճում է ՍՄԿԿ, նրա բոլոր անդամների դերն ու պատասխանատվությունը։ ՍՄԿԿ անդամը բարոյական բարձր սկզբունքների և իդեալների մարմնացում է։ «Կոմունիստի կոչումը շատ բանի է պարտավորեցնում։ Կոմունիստները ոչ մի արտոնություն չունեն... բացի մի բանից. միշտ լինել առջևում, միշտ լինել այնտեղ, ուր ավելի դժվար է» (հ. 2-րդ, էջ 187—188)։

Հավատարիմ մնալով լենինյան ավանդներին, կուսակցությունը ինքնաքննադատաբար է վերաբերվում իր գործունեությանը։ Քննադատությունն ու ինքնաքննադատությունը ՍՄԿԿ փորձված զենքն է, կուսակցական աշխատանքի լենինյան ոճի բնորոշ գիծը։ Այն օգնում է սովետական մարդկանց քննադատական մոտեցում ունենալ աշխատանքի նկատմամբ, բացահայտել և վերացնել թույլ տրված թե-

րություններն ու սխալները, շարունակ առաջ ընթանալ։

Ժամանակակից արտադրությունը ենթադրում է աշխատանքային բարձր կարգապահություն ու կազմակերպվածություն։ ՍՄԿԿ XXIII համագումարը, Կենտկոմի հետհամագումարյան պլենումները կուսակցական կազմակերպություններից պահանջեցին իրենց ամենօրյա գործունեության առաջնակարգ խնդիրը դարձնել կուսակցական ու պետական կարգապահության, կոմունիստների կողմից կանոնադրական պահանջների անշեղ կատարման հարցերը։ Սխալվում են նրանք, որոնք կարծում են, թե կուսակցական երկաթյա կարգապահության անհրաժեշտության վերաբերյալ լենինյան ցուցումը նշանակություն ունի սոսկ անմիջական հեղափոխական գործողությունների ժամանակաշրջանի համար և հետագայում՝ սոցիալ-տնտեսական ու դեմոկրատական վերափոխությունների փուլում կորցնում է իր հրատապությունը։ «Փորձը անհերքելիորեն ուսուցանում է,— ասում է, ընկեր Բրեժնևը,— որ ամուր գիտակցական կարգապահությունը կուսակցությանը հարկավոր է թե այն ժամանակ, երբ նա մասսաներին տանում է դեպի հեղափոխություն, թե այն ժամանակ, երբ նա մասսաների գլուխն անցած պայքարում է սոցիալիստական հասարակարգի ստեղծման համար, թե կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում։ Սա է կուսակցության ուժի, նրա հաջողությունների, նրա հաղթանակների կարևորագույն աղբյուրներից մեկը» (Հ. 2-րդ, էջ 273)։

Հանդիսանալով սոցիալիստական հասարակության քաղաքական առաջնորդը, մեր կուսակցությունը սովետական մարդկանց ուշադրությունը կենտրոնացնում է չլուծված խնդիրների վրա, մոբիլիզացնում նրանց ուժերը կոմունիզմի կառուցման ճանապարհին ծագած հարցերն ու պրոբլեմները ավելի արդյունավետ լուծելու համար։

Կոմունիստական կուսակցության գործունեության իմաստը սովետական ժողովրդին ծառայելու, հանուն նրա երջանկության իրեն նվիրաբերելու մեջ է։ Այս է կուսակցության գերագույն նպատակը։ «Մենք՝ կոմունիստներս, նշում է ընկեր Բրեժնևը,— ամենայն պատասխանատվությամբ հայտարարում ենք, որ այսուհետև էլ ժողովրդին, նրա շահերի ու երջանկության համար մղվող պայքարին ... նվիրաբերենք մեր բոլոր գիտելիքները, ուժերն ու ընդունակությունները» (Հ. 2-րդ, էջ 188)։

Երկհատորյակի բոլոր նյութերը հագեցված են մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ գաղափարների ոգով. այնտեղ զետեղված վավերագրերը սովետական մարդկանց համար կյանքի, գործունեության ուղեցույց են։

Երկհատորյակում ամփոփված վավերագրերի խոր և բազմակողմանի ուսումնասիրությունը մեծ չափով կօգնի մեր կադրերի քաղաքական և տեսական պատրաստականության զարգացմանը, նրանց կնպատակամղի կոմունիզմի կառուցման համար ակտիվ, պրակտիկ գործունեության։



# ԺՈՂՈՎՐԴԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԸ

**Մ. Ա. ՄԵԼԻՔՅԱՆ**

Համալսարանի պրոռեկտոր, պրոֆեսոր

Տակավին չեն լռել մեր ժողովրդի ազգային վերածննդի հիսնամյա հոբելյանի արձագանքները և ահա նշում ենք հայ սոցիալիստական պետականության հետ սերտորեն առնչվող մեր հոգևոր կյանքի ատաղձի՝ Երևանի պետական համալսարանի հիմնադրման հիսուն տարին: Իրոք մեծ խորհուրդ ունի այն իրողությունը, որ հայ ազգի սոցիալիստական վերածնունդը և նրա համալսարանի երկունքը կատարվեցին համարյա միաժամանակ:

Սոցիալիզմի ուղին բռնած Հայաստանի աշխատավորությունը ժամանակակից քաղաքակրթության բարձրունքներին կարող էր հասնել միայն գիտության գագաթների նվաճումով: Ուստի համալսարանի հիմնադրումը կենսական անհրաժեշտություն էր, հրամայական պահանջ: Այս հարցը լուծվեց Հայաստանի կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ջանքերով, որոնք ոչինչ չխնայեցին Երևանում ստեղծելու համալսարան, մեր ժողովրդի գիտության ու լուսավորության ամենազորեղ դարբնոցը: Եվ ահա, 1920 թ. դեկտեմբերին, Հայաստանում սովետական իշխանության հաստատումից մի ամիս չանցած, հիմնադրվեց հայ ժողովրդի նոր պատմության անդրանիկ բարձրագույն ուսումնական հաստատությունը՝ *Երևանի ժողովրդական համալսարանը*, որն այնուհետև վերանվանվեց *Երևանի պետական համալսարան*, դարձավ հանրապետության կրթության ու գիտական հետազոտության հիմնական օջախներից մեկը:

Համալսարանն ամեն մի ժողովրդի ինքնիշխանության, նրա տնտեսական ու մշակութային զարգացման բարձր մակարդակի վկայությունն է և այդ իսկ առումով, օրինաչափ էր, որ հայկական համալսարանը սկիզբ առավ հայ ժողովրդի սոցիալիստական կյանքի առաջին իսկ օրերին:

Անցյալում բազմաթիվ են եղել հայկական համալսարանները, բայց երկրի նվաճման ու ավերման հետևանքով նրանք դարեր ի վեր դադարել էին գործելուց: Միայն XIX դարում, երբ Արևելյան Հայաստանը միացվեց Ռուսաստանին, երբ Ռուսաստանում ու այլուր ստեղծվեցին հայկական միջնակարգ կրթության օջախներ, կրկին բարձրացավ հայկական համալսարան հիմնելու հարցը: Դարի առաջավոր գործիչները՝ Խաչատուր Աբովյանն ու Ստեփանոս Նազարյանը,

Սմբատ Շահազիզն ու Միքայել Նալբանդյանը և այնուհետև Հովհաննես Թու-
մանյանը որոշակիորեն դրեցին բարձրագույն կրթության հայկական օջախ
ստեղծելու հարցը: Սակայն ցարական ինքնակալությունն ամեն կերպ արգելա-
կում էր իր իշխանության տակ գտնվող ժողովուրդների ազգային բարձրագույն
կրթության օջախների կազմակերպումը:

Այդ նույն քաղաքականությունն էր վարում նաև ցարիզմին հաջորդած
բուրժուական ժամանակավոր կառավարությունը:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը նախ-
կինում գաղութակալված ժողովուրդների առջև բացեց ինքնուրույն կյանքի,
իրենց տնտեսության ու մշակույթի զարգացման, ինչպես և բարձրագույն կրթ-
թության ազգային օջախների ստեղծման հնարավորություն: 1918 թ. հիմնա-
դրվեց Թբիլիսիի համալսարանը, 1919 թ. Բաքվի (ադրբեջանական) համալսա-
րանը: 1920 թ. հունվարին Ալեքսանդրապոլում, հիմնականում հայ առաջադեմ
մտավորականության ջանքերով ու մասնակցությամբ, բացվեց հայկական հա-
մալսարանը: Սակայն ստեղծված ծանր պայմանները, թուրքական բանակի
հարձակումը, ավերումներն ու սովը, ինչպես և «Հայաստանի անկախ հանրա-
պետության» կառավարողների արկածախնդրային քաղաքականությունը հնա-
րավորություն չտվեցին համալսարանին հարատևելու: Շուտով համալսարանի
գույքը տեղափոխվեց Երևան և մնաց փակի տակ մինչև դաշնակների անփա-
ռունակ իշխանության տապալումը:

Սովետական իշխանությունը հայ ժողովրդին բերեց կայուն խաղաղություն,
ծանր վերքերը բուժելու արդյունավետ միջոցներ և կրթության ու մշակույթի
աննախընթաց ծաղկման ամենալայն հնարավորություններ: Նա հայերենը
հռչակեց պետական լեզու, պետականացրեց բոլոր կրթական ու մշակութային
հիմնարկները և, արմատականորեն վերակազմելով նախորդ համալսարանից
մնացածը, հիմնադրեց ըստ էության նոր, ժողովրդական, պետական համալսա-
րան: Այդ համալսարանի առաջին իսկ կանոնադրության մեջ նշվեց, որ համա-
լսարանը «բանվորա-գյուղացիական ազատ դպրոց է, որը մասսաների սեփա-
կանությունն է դարձնում բնական ու սոցիալական գիտություններն ու նրանց
ուսումնասիրության մեթոդները, նպաստելով կյանքի գիտակցական վերաշի-
նությանը կոմունիստական աշխարհայացքի հիմունքներով»:

Դժվարին ու ծանր պայմաններում սկսեց իր գործունեությունը Սովետա-
կան Հայաստանի անդրանիկ բարձրագույն ուսումնական հաստատությունը,
բայց նա շատ արագ ոտքի կանգնեց ու ծավալվեց, որովհետև կոմունիստական
կուսակցությունն ու սովետական կառավարությունը, ամբողջ ժողովուրդը ջան-
քեր ու միջոցներ չխնայեցին նրա համար: Այդ հոգատարության շնորհիվ հա-
մալսարանը շատ կարճ ժամանակամիջոցում կարողացավ լուծել որակյալ դա-
սախոսական կադրերի ապահովման, ուսումնական պլանների մշակման և աշ-
խատավոր խավերից ուսանողների հավաքագրման բարդ խնդիրները և արդյու-
նավետ... բացնել իր վրա դրված մեծ հույսերը:

Սովետական կառավարության հրավերով համալսարան դասավանդելու
եկան աշխարհով մեկ ցրված հայ գիտնականներն ու մանկավարժները՝ Հակոբ
Մանանդյանը, Լեոն, Հրաչյա Աճառյանը, Մանուկ Աբեղյանը, Գրիգոր Ղա-
փանցյանը, Ստեփան Ղամբարյանը, Լևոն Ռոտինյանը, Գրիգոր Չուբարյանը,
Արշակ Տոնյանը, Վահան Արծրունին, Ալեքսանդր Թամանյանը, Թորոս Թորա-
մանյանը, Պապա Քալանթարյանը, Հակոբ Հովհաննիսյանը, Ավետիք Տեր-Պո-
ղոսյանը, Հայկ Գյուլիքեխյանը, Ալեքսանդր Հակոբյանը, Աշոտ Հովհաննիս-



յանն և շատ ուրիշներ, որոնք կրթություն էին ստացել ռուսական և արևմտա-
եվրոպական համալսարաններում և ունեին դասախոսական աշխատանքի կզալի
փորձ: Համալսարանի առաջին ռեկտոր ընտրվեց նշանավոր հայ պատմաբան,
հետագայում ՍՍՀՄ ԳԱ ակադեմիկոս Հակոբ Մանանդյանը:

Հայաստանի հեղկոմի և լուսավորության ժողովրդական կոմիսարիատի
գլխավորությամբ նորաստեղծ համալսարանի ղեկավարությունը կազմակերպեց
հասարակագիտական և բնագիտական ֆակուլտետներ, մշակեց ուսումնական
ծրագրեր և առաջին իսկ տարուց ձեռնամուխ եղավ մայրենի լեզվով թարգմա-
նական և ինքնուրույն դասագրքերի և ուսումնական ձեռնարկների հրատարա-
կությանը:

Վերածնվող երկրին մասնագետներ էին հարկավոր ժողովրդական տնտե-
սության ու մշակույթի ամենաբազմազան բնագավառների համար, հարկավոր
էին ուսուցիչներ, գյուղատնտեսներ, ճարտարապետներ, բժիշկներ, տնտեսա-
գետներ, սովետական հիմնարկների աշխատողներ: Եվ համալսարանն իր երկ-
րորդ ուսումնական տարվանից վերակառուցվեց այդ պահանջներին համապա-
տասխան, բացվեցին սովետական շինարարության, մանկավարժական, արևե-
լագիտական, տեխնիկական, իսկ այնուհետև նաև գյուղատնտեսական և բժշ-
կական ֆակուլտետները:

Սակայն դա միայն գործի կեսն էր: Անհրաժեշտ էր համալսարանում ուս-
ման ներգրավել աշխատավոր զանգվածներին՝ բանվորներին և գյուղացիներ-
րին, որոնք մինչև սովետական կարգերը չունեին սովորելու հնարավորություն,
և, հետևաբար, բավարար գիտելիքներ բարձրագույն կրթություն սկսելու հա-
մար: Այդ նպատակով կուսակցությունը և կառավարությունը համալսարան սո-
վորելու գործուղեցին բազմաթիվ տաղանդավոր երիտասարդների, իսկ 1923 թ.
համալսարանին կից բացվեց բանվորական ֆակուլտետ, ուր իրենց կրթության
պակասը լրացրած հարյուրավոր բանվորներ ու գյուղացիներ համալրեցին հա-
մալսարանի հիմնական ֆակուլտետները:

Առաջին իսկ ուսումնական տարիներին համալսարանական ավանդական
դասընթացների հետ միասին Երևանի համալսարանում սկսեցին դասավանդել
նաև լենինիզմ, դիալեկտիկական և պատմական մատերիալիզմ, քաղաքատնտե-
սություն, որոնց շնորհիվ ուսանող երիտասարդությունը հաղորդակից եղավ
գիտական-մարքսիստական աշխարհայացքին: Կոմունիստական ոգով ուսանո-
ղության դաստիարակության բնագավառում խոշոր գործ կատարեցին համալսա-
րանում կազմակերպված կուսակցական և կոմերիտական բջիջները, ինչպես և
ուսանողական ինքնագործ կազմակերպությունները, որոնք ուսանող երիտա-
սարդությանը ներգրավեցին ակտիվ հասարակական-քաղաքական գործունեու-
թյան:

Այսպիսով և՛ իր առջև դրվող նպատակներով, և՛ ուսումնական գործի կազ-
մակերպումով, և իր ուսանողության կազմով Երևանի համալսարանը հենց
սկզբից հանդես եկավ որպես հայ ժողովրդի արմատական շահերն արտահայ-
տող, նրա կյանքի հեղափոխական վերափոխմանը նպաստող սոցիալիստական
բարձրագույն ուսումնական հաստատություն:

Հետագայում ժողովրդական տնտեսության ու մշակույթի զարգացման պա-
հանջներին համապատասխան համալսարանում կազմակերպվել են ֆակուլ-
տետներ ու մասնագիտացումներ, որոնք ապահովել են անհրաժեշտ կադրերի
պատրաստումը:

Մինչև 1930 թ. համալսարանի ֆակուլտետների կազմում եղան մի շարք

փոփոխություններ, որոնք բխում էին ժողովրդական տնտեսության և մշակույթի կարգացման և հասարակական կառավարման կոնկրետ պահանջներից: Այսպես, արևելագիտական և մանկավարժական ֆակուլտետների հիմքի վրա մի առ ժամանակ կազմակերպվեցին պատմագրական, հասարակագիտական, իրավատնտեսագիտական ֆակուլտետները, մանկավարժական ֆակուլտետը առանձնացվեց որպես ինքնուրույն ինստիտուտ, ապա կրկին միացվեց համալսարանին:

1925 թվականին համալսարանի գյուղատնտեսական ֆակուլտետը և մանկավարժական ֆակուլտետի պատմագրական բաժինը տվեցին անդրանիկ 58 շրջանավարտները: Իսկ հաջորդ տարիներին առաջին շրջանավարտներն ունեցան իրավա-տնտեսագիտական, բժշկական, տեխնիկական ֆակուլտետները: Նրանք բոլորն աշխատանքի անցան հանրապետության քաղաքներում ու գյուղերում, իրենց կգալի ավանդը մուծելով երկրի սոցիալիստական վերակառուցման գործում:

Մինչև 1930 թ. համալսարանն ուներ բարձրագույն կրթության բոլոր ճյուղերը, այնինչ երկրի բուռն կարգացումը, մասնավորապես արդյունաբերության լայն ծավալումը, արդեն պահանջում էին ժողովրդական տնտեսության որոշակի բնագավառների մասնագիտացված կադրեր: Այդ բանից ելնելով 1930 թ. համալսարանի ֆակուլտետների հիմքի վրա կազմակերպվեցին մի քանի ինքնուրույն մասնագիտական բարձրագույն ուսումնական հաստատություններ՝ Երևանի պոլիտեխնիկական, բժշկական, գյուղատնտեսական, մանկավարժական և առևտրա-կոոպերատիվ ինստիտուտները: Սակայն, ինչպես կյանքը ցույց տվեց, դրանց հետ միասին համալսարանի գոյությունը ևս անհրաժեշտություն էր, դրա համար էլ 1933 թ. համալսարանը վերաբացվեց և աստիճանաբար վերականգնեց գիտության հիմնական բնագավառների համալսարանական ավանդական ֆակուլտետները: Հետագայի փոփոխությունները վերաբերվեցին սոսկ համալսարանի ներսում այս կամ այն ֆակուլտետների կազմակերպմանը կամ մի որևէ մասնագիտության, օրինակ, բանասիրության գծով առանձին մասնագիտացված ֆակուլտետների հիմնադրմանը:

Առաջին հնգամյակների տարիներին համալսարանը երկրին տվեց հազարավոր ֆիզիկոսներ ու մաթեմատիկոսներ, երկրաբաններ ու աշխարհագետներ, կենսաբաններ ու տնտեսագետներ, պատմաբաններ, բանասերներ ու իրավաբաններ: Համալսարանի շրջանավարտներն աշխատում էին ժողովրդական տնտեսության, գիտության ու մշակույթի բոլոր բնագավառներում, պետական, կուսակցական ու հասարակական կառավարման բոլոր օղակներում: Համալսարանի կոլեկտիվը, նրա կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունները քայլում էին երկրի հասարակական-քաղաքական կյանքի առաջին շարքերում, անմիջականորեն արձագանքելով կուսակցության ու կառավարության ձեռնարկումներին: Եվ երբ սկսվեց սովետական ժողովրդի մեծ Հայրենական պատերազմը, համալսարանի հազարավոր ուսանողներ ու դասախոսներ, նրանցից շատերը կամավոր, մեկնեցին ռազմաճակատ: Նրանց մի մասը պատերազմից չվերադարձան, իսկ հարյուրավոր համալսարանականներ փառքով պսակված վերադարձան ու շարունակեցին կիսատ թողած ուսումն ու դասավանդումը:

Հետպատերազմյան տարիներին համալսարանը մեր երկրի բուռն կարգացմանը համընթաց աճեց ու լայնացավ: Կազմակերպվեցին մի քանի նոր ֆակուլտետներ, բազմաթիվ նոր մասնագիտացումներ, հատկապես գիտության նոր կարգացող բնագավառների գծով: Ավանդական դասընթացների հետ միասին



ուսանողները սկսեցին տիրապետել ռադիոֆիզիկայի, պոլիմերների քիմիայի, կիբեռնետիկայի, նուրբ օրգանական սինթեզի, գեոֆիզիկայի, մաթեմատիկական տնտեսագիտության, մոլեկուլյար գենետիկայի, միջուկային ֆիզիկայի ու կենսաֆիզիկայի գաղտնիքներին:

Հասարակական գիտությունների բնագավառում էլ համալսարանը ետ չմնաց գիտության կարգացման նորագույն խնդիրներից: Պատմության ու բանասիրական ֆակուլտետների կազմում ստեղծվեցին արևելագիտության, լրագրության, փիլիսոփայության, հնագիտության ու աղբյուրագիտության բաժիններ, մի քանի տարի էլ գործեց միջազգային հարաբերությունների պատմության ինքնուրույն ֆակուլտետ, որը մյուս ֆակուլտետների հետ միասին երկրին տվեց հասարակական-պետական կառավարման և գիտության բազմաթիվ բարձրորակ կադրեր:

Իր գոյության կես դարում Երևանի պետական համալսարանը երկրին տվել է շուրջ 23 հազար շրջանավարտ՝ բարձրագույն մասնագիտական կրթություն ունեցող ֆիզիկոսների, մաթեմատիկոսնելի, քիմիկոսների, երկրաբանների, աշխարհագետների, կենսաբանների, տնտեսագետների, պատմաբանների, փիլիսոփաների, ինչպես և առաջին տարիներին՝ բժիշկների, գյուղատնտեսների, ճարտարապետների մի ամբողջ բանակ, սոցիալիզմի կառուցման գործին կրքոտ նվիրված 23 հազար մարտիկներ, որոնք Ասքանազ Մռավյանի դիպուկ արտահայտությամբ, համալսարանում «մեր շրջանի հեղափոխական, գաղափարական դաստիարակության կնիքն են ստացել»:

Համալսարանը հանդիսացել է նաև Սովետական Հայաստանում ժամանակակից գիտության կարգացման անդրանիկ օջախը և այժմ էլ գիտության ամենաբազմազան ճյուղերի գծով հետազոտական աշխատանքի խոշորագույն կենտրոններից մեկն է:

Համալսարանի ֆակուլտետների ու ամբիոնների, նրանց կից գործող լաբորատորիաների հիմքի վրա են կազմակերպվել հանրապետության մի շարք գիտահետազոտական հիմնարկներ: ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի հայկական ֆիլիալի և հետագայում ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի հիմնադիր անդամների մեծ մասը եղել են համալսարանի դասախոսներ: Դրանցից շատերն իր ժամանակին ռուսական և արևմտաեվրոպական գիտական հայտնի կենտրոններում կրթություն ստացած, մի շարք լեզուների տիրապետող մասնագետներ էին: Սակայն գործունեության արդեն իսկ առաջին տասնամյակում համալսարանում ծայր առավ սեփական շրջանավարտներից գիտական-մանկավարժական կադրերի աճեցման գործը:

Արդեն իսկ առաջին շրջանավարտներից լավագույնները որպես ասիստենտներ մնացին համալսարանում, 1928 թվականից համալսարանում սկսեց գործել ասպիրանտուրա: Հատկանշական է, որ համալսարանի բոլոր անդրանիկ ասպիրանտները դարձան ճանաչված գիտնականներ ու դասախոսներ և նրանց մեծ մասն այժմ էլ շարունակում է դասավանդել մայր համալսարանում: Անցած 50 տարում համալսարանի շրջանավարտներից ավելի քան 1000 հոգի արժանացել են գիտության թեկնածուի, իսկ մի քանի հարյուր հոգի գիտության դոկտորի գիտական աստիճանի: Դրանց թվում պետք է նշել այնպիսի ճանաչված գիտնականների, ինչպես ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս Մ. Չայլախյանը, թղթակից-անդամներ Է. Հասրաթյանը և Ս. Մերգելյանը, ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոսներ Գ. Դավթյանը, Մ. Ներսիսյանը, Ա. Հովհաննիսյանը, Ա. Շահինյանը, Մ. Զրբաշյանը, Ա. Բաբայանը, Ա.

Նալբանդյանը, Լ. Մնջոյանը, Հ. Բունիաթյանը, Վ. Գուլքանյանը, Գ. Աղաջանյանը, Ա. Ղարիբյանը, թղթակից-անդամներ Մ. Մկրյանը, Էդ. Աղայանը, Գ. Ջահուկյանը, Գ. Սևակը, Ա. Գաբրիելյանը, Գ. Սահակյանը, Ա. Թալալյանը, Հ. Չալթիկյանը, Ա. Ասլանյանը և ուրիշ ականավոր գիտնականներ:

Համալսարանի գիտնականների հետազոտությունների մի շարք արդյունքներ և բնական, և հասարակական գիտությունների բնագավառում հանրապետության և Միության գիտական հասարակայնությանը լայնորեն հայտնի են ոչ միայն մենագրություններից ու հոդվածներից և համալսարանի ավանդական տարեկան գիտական նստաշրջանների հրապարակումներից (իսկ այդպիսի նստաշրջանների թիվը մոտենում է 50-ի), այլև մեր դասախոսների ելույթներից համամիութենական և միջազգային գիտաժողովներում: Վերջին տարիներին, մասնավորապես, համալսարանի հարյուրավոր դասախոսներ գիտական զեկուցումներով ու հաղորդումներով հանդես են եկել Սովետական Միության բազմաթիվ գիտական կենտրոններում, Անգլիայում, ԱՄՆ-ում, Կանադայում, Դանիայում, Ֆրանսիայում, Լեհաստանում, Հունգարիայում, Բուլղարիայում, Չեխոսլովակիայում, Ճապոնիայում և Հնդկաստանում կայացած միջազգային գիտաժողովներում: Ավելին, վերջին տարիներում Երևանի համալսարանն ինքն է դարձել բարձրագույն մաթեմատիկայի, խաղերի տեսության, անալիտիկ քիմիայի, գրականագիտության համամիութենական և միջազգային գիտաժողովների կազմակերպիչ:

Գիտական աշխատանքի համար համալսարանում համապատասխան նյութական և կազմակերպական լայն հնարավորություններ են ստեղծվել: Մի քանի տասնյակ ուսումնա-գիտական լաբորատորիաների հետ միասին համալսարանում գործում են ֆիզիկայի, քիմիայի, կենսաբանության առանձին բնագավառների հատուկ գիտահետազոտական (պրոբլեմային) լաբորատորիաներ, ՀՍՍՀ ԳԱ և համալսարանի միացյալ հաշվիչ կենտրոնը, Երկրի արհեստական ուղեկիցների դիտման կայանը, ուսումնա-փորձնական հատուկ բազաներ: Կոմունիստական կուսակցության և կառավարության մշտական հոգատարության շնորհիվ դրանցից շատերը կահավորված են հայրենական և արտասահմանյան նորագույն գիտական սարքավորումներով:

Ուսումնական և գիտական աշխատանքի համար լայն հնարավորություններ է ընձեռում համալսարանի գիտական գրադարանը, որը խոշորագույններից մեկն է հանրապետությունում և իր գրապահոցներում ունի գիտության ամենատարբեր բնագավառներին վերաբերող մեկ միլիոն երկու հարյուր հազար գիրք: Գրադարանի տասնյակ ընթերցասրահներում միաժամանակ կարող են պարապել ավելի քան հազար հոգի:

Համալսարանի գործունեության մեջ կզալի տեղ է գրավում գիտական հետազոտությունների արդյունքների, դասագրքերի և ուսումնական ձեռնարկների հրատարակությունը: Այդ գործը սկսվեց համարյա թե համալսարանի հիմնադրման հետ միասին՝ ուսումնական նյութեր հրապարակող ապակետիպի հիմնադրումով: 1927 թ. հրատարակչության և տպագրական բազայի կազմակերպումից հետո համալսարանը հրապարակել է շուրջ երկու հազար անուն գիրք և հարյուրից ավելի գիտահետազոտական աշխատությունների ժողովածուներ: Համալսարանի հրատարակած բազմաթիվ գիտական մենագրություններ մտել են մեր գիտության և գրականության ոսկե ֆոնդը, մասամբ թարգմանվել ռուսերեն և այլ լեզուներով ու հայտնի դարձել հանրապետության սահմաններից դուրս: Համալսարանն այժմ հրատարակում է տարեկան շուրջ վեց տասնյակ մենա-



գրություններ, դասագրքեր, ուսումնական ձեռնարկներ, ինչպես և «Բանբեր Երևանի համալսարանի», «Գիտական տեղեկագիր», «Երիտասարդ գիտաշխատող» գիտական պարբերականները, «Երևանի համալսարան» տեղեկատու հանդեսը և «Երևանի համալսարան» բազմաքանակ շաբաթաթերթը:

Անցած կես դարում համալսարանի կյանքում վիթխարի փոփոխություններ են տեղի ունեցել. երկրի առաջընթացի հետ միասին նա էլ աճել ու հասակ է առել, հասել մի նոր մակարդակի: Իր հիմնադրման ժամանակ համալսարանն ուներ երկու ֆակուլտետ, մի քանի տասնյակ դասախոս և ընդամենը 255 ուսանող: Իսկ այժմ համալսարանն ունի 15 ֆակուլտետ, 80 ամբիոն, շուրջ 13 հազար ուսանող և 900 դասախոս, այդ թվում 30 ակադեմիկոսներ և թղթակից անդամներ, 70 գիտության դոկտոր և պրոֆեսոր, 320 գիտության թեկնածու և դոցենտ: Համալսարանում դասավանդում են հանրապետության համարյա բոլոր ականավոր գիտնականները: Դրանց խոշոր մասը հենց իրեն՝ Երևանի պետական համալսարանի նախկին սաներն են, որոնց անունները հիշատակվեցին վերևում: Նրանց հետ միասին համալսարանում նոր կադրերի աճեցման գործը ղեկավարում են աշխարհահռչակ գիտնական, ակադեմիկոս Վ. Համբարձումյանը, ՍՍՀՄ ԳԱ թղթակից-անդամ Ա. Ալիխանյանը, ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոսներ Ն. Հարությունյանը, Ս. Համբարձումյանը, Հ. Մաղաքյանը, Ս. Մկրտչյանը և շատ ու շատ ուրիշներ:

Արդի գիտության գլխավոր բնագավառները ներկայացնում են համալսարանի հիմնական՝ մեխանիկա-մաթեմատիկական, ֆիզիկայի, քիմիայի, երկրաբանության, աշխարհագրության, կենսաբանության, պատմության, բանասիրության, իրավաբանության, տնտեսագիտության և ապրանքագիտության ֆակուլտետները: Դրանց կողքին համալսարանում ստեղծված են հատուկ ֆակուլտետներ, որոնք մի կողմից ապահովում են համալսարան ընդունվող երիտասարդության գիտելիքների բարձր և միասնական մակարդակը (արտասահմանյան քաղաքացիների նախապատրաստական ֆակուլտետ), ինչպես և բարձրագույն կրթություն ունեցող կադրերի վերապատրաստումը (տնտեսական կադրերի վերապատրաստման և մաթեմատիկայի ու պատմության բուհական դասախոսների որակավորման բարձրացման ֆակուլտետներ): Ընդ որում, մի շարք մասնագիտությունների գծով ցերեկային ուսուցմանը զուգընթաց գործում են երեկոյին և հեռակա բաժիններ, ուր առանց արտադրությունից կտրվելու բարձրագույն կրթություն են ստանում արտադրական ձեռնարկներում ու գիտական հիմնարկներում աշխատող հազարավոր երիտասարդներ:

Համալսարանը, ինչպես բոլոր սովետական կրթական հիմնարկները, երիտասարդներին ոչ միայն գիտելիք ու մասնագիտություն է տալիս, այլև դաստիարակում է նրանց կոմունիստական ոգով, ներարկում սոցիալիստական հայրենասիրություն ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի վեհ գաղափարներ: Այդ գործում վարչական մարմինների հետ միասին նշանակալի ավանդ են ներդնում համալսարանի կուսակցական, կոմերիտական և արհմիութենական կազմակերպությունները, ուսանողական ինքնագործ կազմակերպությունները: Հազարավոր ուսանողներ այսօր ակտիվորեն մասնակցում են ուսանողական գիտական ընկերության աշխատանքներին, ամառային արձակուրդների ընթացքում շինարարական ջոկատների կազմում մասնակցում են հանրապետության և Միության կառույցներին, խամ ու խոպան հողերի յուրացմանը, վերականգնում են ավերված պատմական հուշարձանները, կազմակերպում հայրենագիտական տուրիստական արշավներ, շեֆական աշխատանք կատարում դըպ-

րոցներում, կազմակերպում համերգներ, սպորտային մրցույթներ, գիտական բանավեճեր, հրատարակում գիտական աշխատանքների ժողովածուներ:

Երևանի պետական համալսարանի հոբելյանն ըստ էության Սովետական Հայաստանի բարձրագույն կրթության հոբելյանն է, նրա կեսդարյա նվաճում-ների հանրագումարը: Իսկ այդ նվաճումներն, իրոք, հսկայական են: Սոցիա-լիզմի ուղիով ընթացող Սովետական Հայաստանն այսօր դարձել է ոչ միայն առաջավոր արդյունաբերության ու գյուղատնտեսության, այլև ծաղկուն մշա-կույթի ու գիտության երկիր: Նրա 12 բարձրագույն ուսումնական հաստատու-թյուններում սովորում է 55 հազար ուսանող: Բնակչության 10 հազար հոգուն ընկնող ուսանողների քանակով 50 տարի առաջ ոչ մի ուսանող չունեցող եր-կիրն այժմ գրավում է աշխարհում առաջին տեղերից մեկը, իսկ սովետահայ գիտության օջախների ու գիտնականների նվաճումները լայնորեն հայտնի են ամբողջ Սովետական Միությունում և նրա սահմաններից դուրս: Եվ դա սո-ցիալիստական կյանքի ուղին բռնած սովետական ժողովուրդների եղբայրա-կան միության ու անխախտ համերաշխության, Սովետական Միության կոմու-նիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության ուղղակի արդյունքն է:

Որպես այդ քաղաքականության անվերապահ հաղթանակի վկայություն, այսօր գործում է Երևանի պետական համալսարանը, որը հանրապետության մյուս բուհերի հետ միասին մայրենի լեզվով բարձրագույն կրթություն է տալիս Սովետական Հայաստանում և նրա սահմաններից դուրս ապրող հայ երիտա-սարդությանը: Հայ ժողովրդի պատմական ճակատագրի հետևանքով ամբողջ աշխարհով մեկ սփռված մոտ երկու միլիոն հայությունը, բնականորեն, իր ապրած երկրում չունի մայրենի լեզվով բարձրագույն կրթություն ստանալու հնարավորություն, սակայն հայ ժողովրդի նկատմամբ կոմունիստական կու-սակցության և սովետական կառավարության հոգատարության շնորհիվ նա հնարավորություն ունի այժմ մայրենի լեզվով բարձրագույն մասնագիտական կրթություն ստանալու իր սովետական հայրենիքում: Դրա ապացույցը Երևանի պետական համալսարանում, ինչպես և հանրապետության մյուս բուհերում սո-վորող հարյուրավոր սփյուռքահայ երիտասարդներն են, որոնք ուսանելու են ժամանել արտասահմանյան 20 երկրներից: Նրանցից շատերն արդեն հաջո-ղությամբ ավարտել են իրենց ուսումնառությունը և վերադարձել իրենց բնա-կավայրերը՝ զինված ոչ միայն մասնագիտական գիտելիքներով, այլ հայրենի երկրի հարուստ մշակույթի խոր իմացությամբ:

Համալսարանի դերը սփյուռքահայության կյանքում գնալով մեծանում է: Եվ դա ոչ միայն նրա համար, որ համալսարանի օտարերկրացիների նախա-պատրաստական ֆակուլտետում ամեն տարի հայրենիքի բուհերն ընդունվելու համար իրենց միջնակարգ կրթության պակասն են լրացնում, նրա ֆակուլտետ-ներում բարձրագույն կրթություն են ստանում և ասպիրանտուրայում շարու-նակում են մասնագիտանալ նոր ու նոր տասնյակ սփյուռքահայ երիտասարդ-ներ, այլև նրա համար, որ համալսարանը սփյուռքից ժամանած բոլոր պատվի-րակությունների ու բազմահազար հայ տուրիստների համար Սովետական Հա-յաստանի բարձրագույն կրթության նվաճումները մարմնացնող օջախն է: Եվ երբ Ամերիկայի Միացյալ Նահանգներից կամ եվրոպական երկրներից ժամա-նած հայ տուրիստները գալիս են համալսարան ու խնդրում, որ իրենց թույլա-տրեն «գոնե մեկ ժամ հայոց լեզվով համալսարանական դաս լսել», մենք հաս-



կանում ենք, որ նրանք ուզում են անձամբ համոզվել այդպիսի կրթության իրականության մասին և պատմել իրենց հարազատներին:

Կես դար առաջ հայ երիտասարդները բարձրագույն կրթություն ստանալու համար ստիպված էին մեկնել օտար երկրներ և ուսանել օտար լեզվով: Դա հա-ջողվում էր քչերին, այն էլ գլխավորապես հարուստների զավակներին: Իսկ այսօր Սովետական Հայաստանում բարձրագույն կրթություն են ստանում ոչ միայն հայ բանվորների ու գյուղացիների զավակները, այլև այլ երկրներից, այդ թվում և արտասահմանյան երկրներից ժամանած տարբեր ազգերի երի-տասարդներ: Այսօր Երևանի համալսարանի ֆիզիկայի, մաթեմատիկայի և կեն-սաբանության ֆակուլտետներում մասնագիտական բարձրագույն կրթություն են ստանում 100-ից ավելի գերմանացի (ԳԴՀ-ից), վիետնամցի և բուլղարացի պատանիներ ու աղջիկներ: Ավելին, արտասահմանյան մի շարք երկրներից՝ Անգլիայից, Լեհաստանից, Նորվեգիայից, Չեխոսլովակիայից, Հունգարիայից երիտասարդներ են ժամանում հայոց լեզու և հայ ժողովրդի պատմություն ու-սումնասիրելու, հայ ժողովրդի արդի գիտությանն ու մշակույթին ծանոթանա-լու, հայկական աղբյուրների հիման վրա գիտական հետազոտություններ կա-տարելու համար:

Այսպիսով, Երևանի պետական համալսարանը մի նոր աստիճանի է հաս-նում. նա մնալով և զարգանալով որպես հայկական համալսարան, միաժամա-նակ դառնում է նաև բարձրագույն կրթության միջազգային կենտրոն: Դրան նպաստում է Սովետական Միության և արտասահմանյան մի շարք երկրների համալսարանների հետ ուսումնական և գիտական կապերի աննախընթաց ընդլայնումը: Այդ կապերի մեջ առանձնահատուկ տեղ են գրավում ուսումնա-արտադրական պրակտիկայի համար ուսանողական խմբերի փոխանակումը, որն այս տարի իրականացվել է Երևանի համալսարանի և Մոսկվայի, Լենին-գրադի, Նովոսիբիրսկի, Կիևի, Տարտուի, Թբիլիսիի, Վիլնյուսի, ինչպես և Պրա-գայի, Բրատիսլավայի, Վարշավայի, Բուդապեշտի, Դրեզդենի համալսարանների միջև:

Ստեղծագործական նման համագործակցությունը նպաստում է ոչ միայն գիտահետազոտական աշխատանքների արդյունավետ բարձրացմանը, այլև արգասաբեր միջոց է ժողովուրդների եղբայրության ու մերձեցման գործում:

Մեր օրերում մեծանում է համալսարանական կրթության դերը ժողովրդա-կան լուսավորության սիստեմում, գիտական կադրերի պատրաստման գործում:

Ժամանակակից գիտա-տեխնիկական առաջընթացը, գիտական նորագույն ուղղությունները տեսականորեն մշակվում ու հիմնավորվում են գիտություն-ների ակադեմիայի և այլ հաստատությունների հետազոտական ինստիտուտնե-րում, այնպես էլ համալսարանի ամբիոններում: Մեր խնդիրն է ներդաշնակո-րեն զուգակցել գիտա-մանկավարժական աշխատանքները, բոլոր պայմաններն ստեղծել հետազոտական հակում ունեցող երիտասարդներին առաջադիմելու գիտական ստեղծագործական բնագավառում և երկրին տալ ավելի բարձր որա-կավորում ունեցող մասնագետ կադրեր:

Դասախոսների, ուսանողների և աշխատողների բազմահազարանոց կոլեկ-տիվը, նշելով պանծալի հոբելյանը, լի է հարազատ համալսարանը մի նոր, ավելի բարձր աստիճանի հասցնելու, կուսակցության ու կառավարության, կո-մունիզմ կառուցող մեր ժողովրդի կողմից նրա առջև դրվող խնդիրները հաջո-ղությամբ իրականացնելու անսասան վճռականությամբ:

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՐՎԵՍՏԻ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ՊԱԹՈՍԸ

Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ

Արվեստը գաղափարախոսության այն ձևն է, ուր հասարակական կյանքն արտացոլվում է բազմակողմանիորեն, իր բոլոր մանրամասներով հանդերձ: Այստեղ էական է այն հանգամանքը, որ առաջին հերթին գեղարվեստական մարմնավորում են գտնում մարդկանց հասարակական հարաբերությունները, անհատի ներաշխարհը, ճակատագիրը, սոցիալական իդեալը: Ահա այս տեսանկյունից, երբ քննում ենք գեղարվեստի պատմությունը, հանգում ենք այն կարևոր եզրակացության, որ չնայած արվեստի զարգացումն ընթացել է ազգային ձևով, այնուամենայնիվ նրա բովանդակության հիմնական գծերում ինտերնացիոնալիստականը էական տեղ է գրավել: Նման երևույթը բխում է հասարակական կյանքի ընդհանուր օրինաչափությունների ինտերնացիոնալ բնույթից, մարդկանց կողմից իրականությունը օբյեկտիվորեն ընկալելու կարողության առկայությունից:

Երբ ուսումնասիրում ենք տարբեր ժողովուրդների դասական արվեստի նմուշները, ակնհայտ է դառնում այն պարզ ճշմարտությունը, որ հաճախ դժվար է որոշել, թե ում տալ նախապատվությունը, ո՞վ է շատ ազգերի կողմից յուրացրած համամարդկային արժեքների հեղինակը, ինչպես են դրանք ազգային երանգավորում ստանում: Մարդու սոցիալական փորձը սկզբունքային դրսևորումներում ինտերնացիոնալիստական է, բխում է նրա ու բնության, առարկայական աշխարհի հետ ունեցած փոխհարաբերությունից: Չնայած ընդհանրականը ժողովուրդների կյանքում գերակշռող է ու մնայուն, այնուամենայնիվ ինքնատիպության որոշակիությունը պայմանավորվում է գոյություն ունեցող ազգային առանձնահատկություններով: Առանց այդ առանձնահատկությունների, ընդհանրականը կդրսևորվի գորշ ու միօրինակ ձևով:

Ազգային երանգը արվեստի էական հատկանիշն է, իրականության արտացոլման բնապատկերը:

Արվեստագետը մեկնելով ազգային իրականությունից ստեղծագործական պրոցեսում չի սահմանափակվում այն հնարներով ու միջոցներով, որոնք բխում են նյութի շաղախից: Նա դիմում է նաև համաշխարհային գեղարվեստական փորձին, գեղագիտական ժառանգությանը, որոնք անհրաժեշտ կռվաններ են ստեղծագործական պրոցեսում: Այստեղ միահյուսվում են բազում գործոններ, որոնք ուղղակի կամ անուղղակի դրսևորվում են արվեստագետի ստեղծագործական խառնվածքում: Որքան մեծ է նրա կենսափորձը, դիտողունակությու-



նը, երևույթները մեծ ընդգրկմամբ ընդհանրացնելու կարողությունը, այնքան ավելի լայնահուն ու հարուստ են ստեղծված արժեքի բովանդակությունը:

Մտովի, երբ վերականգնում ենք մեր հիշողության մեջ դասական արվեստի ստեղծագործությունները, ապա շատ երկերում թեմայի ու կոնֆլիկտի ընտրությունը համընկնում է: Կարծես նույն սկզբնաղբյուրն է եղել դրանց մտահղացման հիմքում: Սակայն խոր ուսումնասիրությունը մերժում է նման կարծիքը, քանի որ իսկական արվեստագետի համար մտահղացման ելակետն իրական, կյանքից վերցրած փաստն է, և ոչ թե արդեն պատկերված ու լուծված երևույթը: Ճիշտ է, պատմությունը, դեպքերը կրկնվում են, բայց միշտ նոր ձևով, յուրովի: Իսկ եթե դրան գումարենք նաև հասարակական հարաբերությունների զարգացման դիալեկտիկան, պարզ է դառնում, որ հարափոփոխ իրականության մեջ մշտապես նոր երևույթներ են ծնվում, որոնց բացահայտումը և յուրացումը գեղարվեստական հայտնություն է:

Արվեստի պատմությունը վկայում է, որ համամարդկային արժեքները բովանդակում են այն ստեղծագործությունները, ուր արծարծված են ժամանակաշրջանի ամենահուզող պրոբլեմները, կյանքի նորացման գաղափարները: Հումանիզմը, որպես գեղագիտական ծրագիր, օտար չի եղել տակավին անտիկ աշխարհի դասական արվեստին, սակայն նրա բազմակողմանի լուծումն արտահայտվեց վերածնության շրջանի ստեղծագործություններում: Մարդու ճակատագրի, անհատի ու հասարակության փոխհարաբերության պրոբլեմատիկան մեծ շնչով մարմնավորել է Շեքսպիրը: Բայց և այնպես այդ խնդրի անատոմիական լուծումը տվեց քննադատական ռեալիզմը: Ժամանակաշրջանը փոխում է շեշտը, սրում գաղափարի ուղղվածությունը, նոր իմաստավորում տալիս յուրացված արժեքներին:

Դասական արվեստում մարմնավորված գաղափարները, ստեղծված կերպարները համամարդկային են: Դրանով պետք է բացատրել այն չխամրող հետաքրքրությունը դեպի անցյալի ու ժամանակի մեծ արվեստի երկերի նկատմամբ, որ տածում են սերունդները: Ժամանակի մաղն իր գործը տեսնում է, նրա նեղ անցքերից անցնում են միայն այն նմուշները, որոնք համահունչ են դարաշրջանին, արձագանքում են այժմեական խնդիրներին:

Աշխարհի սոցիալիստական վերափոխումը նոր հարաբերություններ հաստատեց ազգերի միջև: Հասարակական կյանքի միջազգայնացումը ծավալվեց սոցիալական իրականության բոլոր ոլորտներում, ազգային արժեքներն ու ավանդները նոր իմաստավորում ստացան: Ազգայինը հարստացավ ու զարգացավ ինտերնացիոնալիստական արժեքներով, լայնացավ ու բազմացավ իրականությունն ընկալելու նրա գեղագիտական ներկապնակը: Պարզապես պետք է կույր լինել չտեսնելու այն որակական փոփոխություններն ազգերի հոգեկան խառնվածքում, որ կատարվեց սոցիալիստական հասարակարգի պայմաններում:

Հասարակական կյանքի միջազգայնացումը նախասոցիալիստական և ժամանակակից կապիտալիստական աշխարհում այնպիսի խորությամբ ու ծավալով չի ընթացել, ինչպես սոցիալիստական հասարակարգում: Դա հասկանալի է, քանի որ այն միջնորմները, որոնք առկա են անտագոնիստական հասարակարգերում սոցիալիզմի պայմաններում վերանում են, կամ վերափոխվում: Սոցիալիզմի օրոք ազգերի միջև հաստատված հավասարությունն ու համերաշխությունը, թշնամանքի և փոխադարձ օտարման վերացումը նպաստում են ժողովուրդների միջև բազմապիսի կապերի ամրապնդման համար:

Փոխհարստացման պրոցեսում ծնվում ու առաջանում են ազգային մշա-

կույթի նոր արժեքներ, որոնք հանդիսանում են ողջ սովետական կուլտուրայի սեփականությունը: Ազգային արվեստների նշանակալից ստեղծագործությունները լայն ճանաչում են գտնում: Սակայն, չպետք է մոռանալ, որ մշակույթների մերձեցումը տևական պրոցես է և պատմական առումով այն յուրօրինակ ուղի է անցել: Հեղափոխության առաջին տարիներին գեղարվեստական լուսաբանման հիմնական թեման նոր իրականության ըմբռնումն էր:

Կյանքի հեղափոխական նորացումը չէր կարող իր դրոշմը չթողնել գեղարվեստական պրակտիկայի վրա: Մայակովսկին, Չարենցը, Էյզենշտեյնը, Դեյնեկան հեղափոխության արդյունքն են, նոր աշխարհի արվեստագետները: Մայակովսկին իր հզոր պոեզիայով գեղարվեստորեն պատկերեց հեղափոխությունը: Նրա նորարարական ստեղծագործություններում հասակով մեկ հառնեց ինտերնացիոնալիզմի թեման, որը բանաստեղծի գեղագիտական հավատամքի սկզբունքներից էր: Նոր կյանքի երգչի չափածո խոսքը ուղղված էր բազմալեզու աշխարհին, տոգորված վեհ գաղափարներով:— Սովետահայ արվեստում հեղափոխության թեման գեղարվեստական դասական մարմնավորումը գտավ Չարենցի պոեզիայում: Նրա բովանդակալից ու ինքնատիպ երկերում պատմության ամենապատմական հեղաբեկումն այնքան վառ ու տպավորիչ գույներով է տրված, որ ակամայից, երբ խոսք է լինում մեծ Հոկտեմբերի մասին, վերհիշում ես չարենցյան գեղարվեստական կատարյալ ստեղծագործությունները: Էյզենշտեյնի «Զրահակիր Պոտյոմկինը» տակավին շարունակում է իր հաղթական երթը աշխարհի մեծ էկրանների վրա, սերունդների հիշողությունում վերակենդանացնում պատմության մեծագույն իրադարձությունները: Դեյնեկայի «Պետրոգրադի պաշտպանությունը» նոր կյանքի հաստատման համար պատմական պայքարի գեղարվեստական վավերագիրն է, որի չթուլացող ներգործությունը հարատև է, այժմեական:

Սովետական արվեստի ձևավորման շրջանում Լենինի կերպարը դարձավ նոր մարդու կերպարի կերտման նախատիպը, որի գեղարվեստական մարմնավորումն անհնար էր առանց հաշվի առնելու ազգային արվեստների ավանդները: Պատահական չէ, որ լենինյան թեմատիկան լայնորեն արծարծվեց ժողովրդական բանահյուսության մեջ, պրոֆեսիոնալ արվեստում:

Տակավին քսանական տարիներին կոմունիստի կերպարը գեղարվեստական առաջնահերթ խնդիր էր: «Ես կոմունիստ եմ» այսպես անվանեցին իրենց չափածո գործերը մի շարք տարբեր ազգերի բանաստեղծներ: Ստեփան Զորյանը գրեց «Հեղկոմի նախագահը»: Հանձինս կոմունիստի սովետական արվեստում հանդես եկավ նոր հերոս, որի ներաշխարհը, երևույթներն ընկալելու ու վերլուծելու կարողությունն արմատապես տարբերվում է անցյալի դասական արվեստում ստեղծված դրական հերոսներից: Սոցիալիստական հասարակարգում հերոսը միայնակ չէ, նա ամուր թելերով կապված է կոլեկտիվի հետ, ակտիվորեն է ներգործում միջավայրի վրա: Ճշմարտացի ըմբռնել և ցույց տալ հեղափոխական իրադարձություններն արվեստագետը կարող է միայն այն դեպքում, երբ նա հավատարիմ է իրականությանը, կոմունիստների դերին ժողովրդական շարժման մեջ: Կերպարի անհատականությունը ոչ միայն չի բացառում վերջինիս տիպականությունը, ընդհակառակը ուժեղացնում է այն: Առանց բոլշևիկների կյանքի կոնկրետ կապերի ու հարաբերությունների պատկերման, անհնար է ցույց տալ կուսակցության գործունեությունը: Կոմունիստների դերը գյուղում, մասնավորապես կոլեկտիվացման շրջանում, գեղարվեստական մեծ վարպետությամբ տվեց Շոլոխովը «Հերկած խոպանում»: Գրողի նկարագրած



գյուղական «խոպանը» Դավիդովը մենակ չի հերկում, նա գտնում է համախոհներ ու աջակիցներ հանձինս Ռազմետովի և Նագուլնովի: Արվեստագետը նուրբ ձևով ընդգծել է Դավիդովի քաղաքական հասունությունը, կազմակերպվածությունը, փորձը, որը հաճախ ուղղություն էր տալիս ընկերներին: Հերոսներից յուրաքանչյուրը օժտված է մարդկային որոշակի առանձնահատկություններով, որոնք ի հայտ են գալիս խոսքում, խոհերում, վարքագծում, մարդկանց նկատմամբ, ամենուր:

Սովետական արվեստի փորձը վկայում է, որ կոմունիստի կերպարը դարձավ մեր հասարակության շարժումը խոր ու ճշմարտացի բացահայտող արվեստագետի ստեղծագործության անկապտելի մասը: Այդ կերպարների ներգործությունը բնորոշվում է նրանով, որ մարմնավորելով իրականության տիպական գծերը, վերջիններս միայն լոկ ընդհանրացումներ չեն, այլ ռեալ կյանքից վերցրած օրինակներ:

Թեմայի, նրա լուծման, կենսահաստատ պաթոսի միասնությունն ընդգծված է արվեստագետների որոնումների միասնությամբ, որոնք ամեն դեպքում ուղղված են հոգեբանորեն ավելի խոր բացահայտելու հերոսին, հաստատելու բարձր գաղափարական-բարոյական չափանիշներ:

Սակայն ձևական ու դեկլարատիվ կլիներ նման ընդհանրությունը, եթե այն չսնվեր ժողովրդի լինելության իրականությունից, ուր թափանցում է արվեստագետի ստեղծագործական միտքը: Չէ՞ որ հենց այդ իրականությունն է պայմանավորում անհատական բնավորությունների անկրկնելիությունը, հերոսների տարբեր ճակատագրերը, որոնք իրարից անտեղյակ գիտակցաբար պայքարում են հանուն նորի ընկալման ու հաստատման: Դրա համար այդ հերոսների հոգեկան հույզերը և բնավորությունների արտաքին դրսևորումը նման են: Հաճախ նրանց անհանգիստ միտքը ելքը փնտրելով կարծրացած գյուղական պատկերացումներից և սեփական տան, հողի, տնտեսության հոգսից, վերադառնում է նույն խնդրին, հարուցելով մերթ տանջալից կասկած ու տարակուսանք, մերթ հուսահատություն ու շփոթություն: Իհարկե այստեղ զգացնել է տալիս հերոսների ապրելակերպից բխող սովորույթների ու վարվեցողության իներցիան: Սակայն որպես նորի երաշխիք, ապա ստեղծագործելու մղում նրանցից յուրաքանչյուրի մոտ ուժեղ է աշխատանքային կորովը, աշխատելու անհագուրդ ծարավը:

Այս բոլորն ընդհանրական է. բայց ընդգրկելով արվեստի հերոսին, այն նրա կերպարը չի զրկում ազգային որոշակիությունից: Վերջինս բացահայտվում է ոչ այնքան բնավորության գծերի բացառիկությամբ, որքան դրանց դրսևորման ձևերի ու պայմանների յուրօրինակությամբ, կյանքի այն պարագաների միագումարով, որոնք իրենց դրոշմն են թողնում հերոսի խոհերի ու զգացմունքների վրա: Ազգային միջավայրը, ուր դրսևորվում է հերոսի բնավորությունը, հանդես է գալիս որպես կերպարի «միս ու արյուն», արվեստագետի կողմից ժողովրդի պատմական, սոցիալական և հոգեկան փորձի գեղագիտական վերաիմաստավորում:

Սովետական արվեստում հերոսների ճակատագրերի հարազատությունն ավելի վառ ու համոզիչ է բացահայտվում, երբ արվեստագետը լիարյուն է մարմնավորում իր ժամանակակցին: Հետպատական գրականության մեջ արդեն արտահայտված է այն դիտողությունը, որ ՍՍՀՄ ժողովուրդների արվեստների պատմությունը, պետք է դիտել որպես ազգային էսթետիկական իդեալների զարգացման պատմություն, ուր ի հայտ է գալիս միասնության նկրտումը: Վերջինիս

ամենատակնհայտ արտահայտությունն ազգային արվեստների դրական հերոսների կերպարների էվոլյուցիան է: «Որքան մոտ ենք մեր օրերին, որքան ավելի են հաստատվում ազգային գրականությունները սոցիալիստական ռեալիզմի դիրքերում, այնքան ավելի ընդհանուր են դրական հերոսի տիպոլոգիական հատկանիշները» (Национальное и интернациональное в литературе и искусстве, М., «Мысль», 1964, стр. 19);

Կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում ազգերի գաղափարական միասնության ուժեղացումը, ազգային ընդհանուր գծերի առաջացումը պայմանավորում են սովետական ժողովուրդների սոցիալիստական լինելության ընդհանրությունը, նոր ավանդույթների ձևավորումը: ՍՍՀՄ ժողովուրդների բնույթով սոցիալիստական կուլտուրաների գաղափարա-ստեղծագործական մերձեցումը և ծաղկումը պրոցես է, որը տեղի է ունենում ամեն մի ժողովրդի, ողջ հասարակության սոցիալ-քաղաքական միասնության ինտերնացիոնալ ընդհանրության հիմքի վրա: Սովետական բոլոր ազգերի ու ժողովուրդների համար ինտերնացիոնալ գեղարվեստական մշակույթը տրամաբանական սխեմա չէ, այլ իրողություն: Ամեն մի ժողովուրդ իր ավանդը մուծելով այդ գանձարանը, միաժամանակ վերցնում է այնտեղից: Իրոք, իրենց երկերը ստեղծելու գեղարվեստական ո՞ր փորձի վրա կարող էին հենվել մինչև Հոկտեմբերը գիր չունեցած ժողովուրդների գրողները: Միայն բանավոր ստեղծագործության, ֆոլկլորի օգնությամբ անհնարին էր բարձրանալ այսօրվա գեղարվեստական մտածողության մակարդակին: Կասկածից վեր է, որ այստեղ առկա է սովետական բոլոր ժողովուրդների գեղարվեստական մշակույթի ստեղծագործական յուրացման փաստը: Այն կենսատու աղբյուր է արվեստի ազգային ձևերի, տեսակների, ժանրերի կոլեկտիվ և անհատական գեղարվեստական ստեղծագործության արագ զարգացման համար:

Հետաքրքրական է նաև այն նկատումը, որ մեր երկրի ամեն մի տաղանդավոր արվեստագետի ստեղծագործության մոտիվներում կա միտում իր ավանդը դնել ընդհանուր, սովետական մշակույթում: Այս խթանը մղում է տաղանդի ծաղկմանը, լարում արվեստագետի հոգևոր ունակությունները: Եթե վերջինս նման նպատակ չի հետապնդում նա ամփոփվում է «ազգային տարերքի» մեջ: Յուրաքանչյուր համամիութենական նշանակություն ունեցող գեղարվեստական ստեղծագործություն ազգային է, բայց ոչ ամեն ազգային գործ ստանում է համամիութենական արձագանք: Այդ մակարդակին հասնում են այն ստեղծագործությունները, որոնք արտահայտում են շատ ժողովուրդների հոգևոր ամենաբարձր արժեքները, նպաստելով ողջ սովետական հասարակության հոգևոր զարգացմանը: Այս են վկայում արվեստի ու գրականության լենինյան մրցանակի արժանացած ստեղծագործությունները:

Հայտնի է, որ մարդու բնությունը ժամանակակից իմպերիալիզմը ամեն կերպ նսեմացնում է թեորիայում ու անարգում պրակտիկայում: Իմպերիալիզմի գաղափարախոսները ջանում են մարդկանց մեջ սպանել մարդկայինը, նրա մեջ արթնացնել վայրագ բնազդներ, զրկելով նրան կամքից ու հոգուց, վերածելով կյանքի կործանման գործիքի: Ոմանք մարդուն ներկայացնում են, որպես վախի շտեմարան, մյուսները՝ իշխանությանը ձգտող չար էակ, երրորդները՝ էրոսի կույր գործիքի: Ռեակցիոն «կյանքի փիլիսոփայությունը» առաջ մղելով անգիտակցականը, դիտում է մարդու գիտակցությունը որպես օժանդակ պրոդուկտ, անգամ կյանքի վերասեռում: Էկզիստենցիալիստ Յասպերսը այն հարցին, թե ի՞նչ է մարդը, համարում է սկզբունքորեն անլուծելի:



Արևմուտքում վերջին տարիներին մի շարք բուրժուական գրողներ ձգտում են ստեղծել մարդու անտիպոդին, հակամարդուն, որի արատները գերազանցում են նախկինում նկարագրված մարդկային մեղքերը: Լիովացի սովետական բանաստեղծ Էդուարդաս Մեժելայտիսը ստեղծագործական պաթոսով հակադրվում է այդ «տեսություններին»: «...Ինձ,— գրում է հեղինակը,— ցանկություն կա վճռաբար վիճել մարդու կոնցեպցիայի շուրջը, որի հիմքում իբր դրված է հավերժական ու անլուծելի կոնֆլիկտը Կայենի ու Աբելի միջև, «մինուս-մարդու» կոնցեպցիայի առթիվ: Բանաստեղծը զինված է անսասանելի փաստարկով՝ սոցիալիստական հասարակարգի մարդով, որն իր մեջ հաղթել է չար բնազդները, հաստատել բանականության ուժը, ոգու հզորությունը: Նրա գրքի հերոսը հանուն ապագայի մարտնչող հերոս է: Նա լի է սեփական ճշմարտացիության ու հզորության գիտակցումով: Մահը սարսափելի չէ հերոս Բելոյաննիսին, նրա երակներում «Պրոմեթևս տիտանի արյունն է», ով հանուն գաղափարի վերապրել է անձնվիրության վսեմ զգացումը, մարդկանց երջանկացնելու համար, որի կտակած կրակը այժմ ոչ ոք չի կարող մարել»:

Մեժելայտիսի գրքում մարդու կերպարը միաժամանակ և փիլիսոփայականախմվոլիկ ընդհանրացում է, որը «ոտքերով հենվելով երկրագնդին, ձեռքերով բռնում է արևի զունդը»: Այստեղ արտացոլվել են ժամանակակիցների, առաջին հերթին պոետի սեփական ես-ի գծերը: Բանաստեղծական խոսքը սովորական չէ, այստեղ միաձուլվում են վերացականն ու կոնկրետը, պաթետիկն ու քնարականը:

Գրքի ընթերցումից ակնհայտ է, որ այն գրված է Մարդու և իր մասին: Այստեղ բանաստեղծի կյանքից կան դրվագներ, որոնք չեն խախտում ընդհանրացված կերպարների ներդաշնակությունը: Անձնականը տակավին չի հակասում գրքի ոգուն, փիլիսոփայական մտորումներին: Նման մոտեցումը բխում է ստեղծագործության ընդհանրական եզրահանգումից, որ վերափոխելով աշխարհը, մարդը կատարելագործում է նաև սեփական բնությունն ու անհատականությունը: Այստեղ խմաստալից է նաև գեղարվեստական այն լուծումը, որ Մարդու ընդհանրացված կերպարը բեկվում է մեր օրերի հերոիկայի պաթոսում:

Մոտենում է այն ժամանակը, երբ մեծատառով մարդը դառնում է իրական, սովորական, կոմունիստական հասարակարգի կառուցող: Կար ժամանակ, երբ աստծուն մարդը ստեղծեց իր նման: «Նրա միտքը պայծառ էր, բարիք ստեղծելու մոայլ գնմանին» («Զարթոնք»): Դառնալով ինքնիշխան, նա ջարդեց կուռքը: Այժմ ազատ սեփականատիրական հասարակության ճիրաններից, նա ունակ է ավելի մեծ գործերի: Մեժելայտիսի գրքում ներդաշնակության ձգտող անձնավորությունը հառնում է Մարդու, Կոմունիստի կերպարում:

Այսպես կանգնած եմ,
Գեղեցիկ, իմաստուն, ամուր,
Մկանուտ, թիկնեղ
Աճում եմ հողից
Արևին հասնում,
Հողին հատուցում
Ժպիտն արևի.
...Այսպես կանգնած եմ՝
Ես մարդ եմ
Ես՝ Կոմունիստ,—

ասում է բանաստեղծը, համարժեք համարելով Մարդ և Կոմունիստ հասկացությունները: Իհարկե, ոչ թե պոետը, այլ ժամանակն է այս խոսքերը հոմանիշներ դարձրել:

Ինտերնացիոնալ մշակույթի, վերջինիս ձևավորման ուղիների բնութագրումը միակողմանի կլինի, եթե ի նկատի չառնենք դրանց ծագման սոցիալ-հոգեկան և գաղափարա-գեղագիտական հիմքը: Սովետական յուրաքանչյուր ժողովրդի ազգային մշակույթն ինտերնացիոնալիստական է դառնում, ոչ թե ազգային հատկանիշներին ինչ-որ վերամբարձ ու հավերժական կատեգորիաներ գումարելով, այլ որովհետև փոխվել է մարդկանց ազգային հանրությունը, հասարակական հարաբերությունների բնույթը, բարոյա-սոցիալական նորմերն ու պատկերացումները: Կյանքի բովանդակությունը, մթնոլորտը նպաստում են ինտերնացիոնալիստական աշխարհայացքի մշակմանը: Սոցիալիստական ազգերի գաղափարական, բարոյա-քաղաքական միասնության պայմաններում էապես փոփոխվում է նաև «ազգային բնավորությունը»: Պատմական զարգացման ընթացքում այն ձերբազատվելով դասակարգային-անտագոնիստական բովանդակությունից ու հարստանալով համաժողովրդական, սոցիալիստական արժեքներով, կայանում է նոր որակ՝ սովետական բնավորություն: Վերջինս իր ձևավորման ու զարգացման պրոցեսում ներառնում է այն դրականն ու առաջադիմականը, ինչով հարստացել է ժամանակի ընթացքում յուրաքանչյուր ժողովուրդ: Կուսակցության ծրագրում նշված է, որ տարբեր ազգությունների պատկանող սովետական մարդկանց մեջ ստեղծվել են հոգևոր կերպարի ընդհանուր գծեր, որոնք հասարակական նոր տիպի հարաբերությունների ծնունդն են և մարմնավորում են ՍՍՀՄ ժողովուրդների լավագույն ավանդույթները:

Ժամանակակից արվեստի հերոսի կերպարում դրսևորվում են անհատական անկրկնելիության գծեր, հարստացած սովետական բնավորության բազմազանության երանգներով, ինտերնացիոնալիստական արժեքներով: Ազգայինը և սոցիալականը, ազգայինը և սովետականն այնտեղ դրսևորվում են որպես նոր որակական որոշակիություն:

Ամեն մի գրական հերոս, ում անձնական փորձն անբաժանելի է մեր երկրի ժողովուրդների հեղափոխական անցյալից և ժամանակակից իրականությունից. իհարկե հոգևոր զարգացման ընթացքում կրում է ոչ միայն ազգային լինելության կոնկրետ սոցիալ-պատմական պայմանների ազդեցությունը, այլև այն ընդհանուրը, ինտերնացիոնալիստականը, որը նրան մերձեցնելով ուրիշ ազգային արվեստների հերոսների հետ, արտահայտում է ժողովրդի պատմական շարժման, ճակատագրերի ընդհանրությունը: Վերջինս յուրովի է դրսևորվում, սակայն միշտ էլ հանդես գալիս: Ազգային բնավորությունը մարմնավորելով սոցիալ-պատմականը, խիստ անհատական է, ուր համամարդկայինը, սոցիալականը և ազգայինը կազմում են ոչ թե իրարից անկապ կողմեր, ինչպես երբեմն ներկայացնում են առանձին հետազոտողներ, այլ ձուլվելով մի որակում ստեղծում են սոցիալ-պատմական կոնկրետ անձնավորության անկրկնելի, ամբողջական կերպարը: Նման միասնությունը ստեղծվում է ժողովրդական կյանքի պատմական պայմանների, ժողովրդի լինելության սոցիալական ատրիբուտների միագումարով:

Ազգային բնավորությունը չի կարելի հանգեցնել, օրինակ, կենցաղի, ընտանեկան հարաբերությունների, ավանդույթների և սովորույթների էթնոգրաֆիական առանձնահատկություններին, որոնք շրջապատելով հերոսին սովորական, առօրյա կյանքում ստեղծագործության մեջ գտնում են կերպարային լուծում: Էթնոգրաֆիականը գրական բնավորության համակարգում հանդես է



գալիս, որպես նրա ձևավորման դետալ, կենցաղային մանրամաս, բայց ոչ որպես բովանդակությունը բնորոշող հատկանիշ: Այն սոցիալ-պատմական իրականության բազում դրսևորումներից է և պայմանավորված է նրա զարգացմամբ: Ընտանեկան-կենցաղային հաստատության էթնոգրաֆիական երանգներում, դրա ավանդույթներում ու սովորույթներում ակնհայտ են դառնում, բնության դեմ մարդկանց պայքարի առանձնահատկությունները, նրանց աշխատանքային պրակտիկայի, սոցիալական հարաբերությունների բնորոշ գծերը:

Ավելին, չի կարելի գրական հերոսին կաղապարել միասնական ազգային հոգեբանության անփոփոխ ստանդարտում, որին բնորոշ են վերացական հատկանիշներ: Կուսակցական մամուլը ժամանակին քննադատեց «Մոսֆիլմի» թողարկած «Ամառվա արձակուրդների ժամանակ» կինոնկարը: Ընդհանուր առմամբ հաջող ֆիլմում գործող անձանցից է հյուսիսային նավթահանքերից մեկի վարիչ, տեխնիկական գիտությունների թեկնածու, բաքվեցի Մահմեդովը: Բեմադրողները ցանկանալով նրա մեջ ընդգծել կովկասյան էկզոտիկ երանգներ, շեշտը դնում են սև բեղերի, առոգանության ու սրախոսության վրա: Նման մակերեսային մոտեցումը տակավին չի նպաստում ստեղծելու ազգային բնավորություն: Եվ գիտնականի, արտադրության տաղանդավոր կազմակերպչի, բազմակողմանի զարգացած անձնավորության փոխարեն հանդիսատեսին է ներկայացվում ծիծաղաշարժ ֆիգուր («Коммунист», 1962, № 1): Բոլորովին այլ ձևով են հանդիսատեսին մատուցում ազգային բնավորության գծերը «Զինվորի հայրը» ուշագրավ ֆիլմի հեղինակները: Այստեղ ազգայինը ցույց է տրվում հոգեբանական երանգների բացահայտման միջոցով: Տարեց զինվորի կերպարը այնքան համոզիչ է ու տպավորիչ, որ չի կարելի անտարբեր մնալ նրա ապրումներին: Ինչ մնում է առանձին արտաքին մանրամասներին, դրանք լրացնում են ստեղծագործության ամբողջականությունը:

Սոցիալիստական ազգերի գաղափարական, քաղաքական, բարոյական միասնության պայմաններում էապես փոփոխվում է և ազգային բնավորությունը: Իր պատմական զարգացման ընթացքում բացառելով դասակարգային անտագոնիստական բովանդակությունը, այն հարստանում է սոցիալիստական բովանդակությամբ, կազմելով ընդարձակ ու ծավալուն, որակապես նոր երևույթ՝ սովետական բնավորություն:

Բնավորությամբ միասնական է սովետական բազմազգ արվեստի հերոսը: Այս առումով անիմաստ է փորձել հակադրել այդ երկմիասնական ամբողջության կողմերը: Չկա հաշվառման այնպիսի սիստեմ, որ հնարավորություն տար որոշելու, թե որտեղ է վերջանում ընդհանուրը, ինտերնացիոնալիստականը և որն է առանձնահատուկի, ազգայինի ելակետը: Առանձին արվեստագետներ իրենց ստեղծագործություններում, երբ պատկերում են տարբեր ազգությունների պատկանող հերոսներին, պարզապես անհաջողության են մատնվում: Պատճառը նրանում է, որ անհնար է բնավորության այս կամ այն հատկանիշը բացարձականացնել ու վերագրել միայն տվյալ ազգին: Նույնը կարելի է ասել գրականագիտական ու գեղագիտական գրականության մեջ տեղ գտած առանձին վիճելի բնութագրումներին, որոնք նույնպես թերի են, կամ միակողմանի: Գրականագետ Վ. Դ. Օսկոցկին «Ժամանակակից սովետական վեպի հերոսները և ազգային բնավորության պրոբլեմը» ուսումնասիրության մեջ ցույց է տալիս, թե ինչպես քննադատական հոդվածներում հոգեկան-անհատական արժեքները վերածվում են շտամպի: Գրականագետն իրավացի է, երբ հարց է տալիս, արդյոք Օլես Գոնչարի Խոմ Խոեցկին («Դրոշակակիրներ»-ից)

պակաս համեստ է, քան Ալեքսանդր Տվարդովսկու Վասիլի Տյորկի՞նը: Կամ Վասիլի Տյորկինը ի տարբերություն Խոմ Խոեցկուց չի՞ սիրում «փիլիսոփայել»: Եվ ավելին, ինչ կփոխվի, եթե դիտենք այդ գծերը պատերազմին նվիրված մյուս ազգերի գրականությունում, որոնց հերոսները Տվարդովսկու և Գոնչարի հերոսների նման սիրում են Հայրենիքը, դրսևորում են անվախություն ու հերոսություն, օժտված են կոլեկտիվիզմի զգացումով ու հարգում են մյուս ժողովուրդներին: Ըստ էության ոչինչ չի փոխվում. որովհետև երկու դեպքում էլ խոսքը վերաբերում է ոչ թե ազգային-բացառիկություններին, այլ մեր ժամանակակցի, Հայրենական պատերազմի հերոսի բնավորության ինտերնացիոնալիստական, համասովետական գծերին:

Ինտերնացիոնալիստականը, համասովետականը յուրաքանչյուր բնավորության մեջ դրսևորվում է անհատական կերպարում: Նշված գրական կերպարները ինքնատիպ են, ոչ թե բնավորության որոշ գծերի առումով, այլ դրանց հուզաշխարհի յուրովի արտահայտման, իրականության ընկալման առանձնահատկություններով: Վերջիններս հնարավորություն են տալիս վերհանելու այնպիսի մանրամասներ, որոնք բխում են ազգային պատմության ավանդույթներից և մի շարք հանգամանքներից՝ կապված տվյալ միջավայրի արտաքին ու բարոյա-հոգեբանական ատրիբուտների հետ:

Լեզուն, ժանրերը, կերպարները, թեմաները արվեստագետի ստեղծագործության «գումարելիներն են», որոնք տվյալ երկի ստեղծման ժամանակ կազմում են գեղարվեստական բարդ միասնություն, տալով ժողովրդական կյանքի ամբողջական պատկերը ազգային ինքնատիպության անկրկնելի ձևում: Դրանք ծագում են ոչ թե ինչ-որ անմարմին իրականությունից, այլ գոյություն ունեցող կերպարներից, որոնք սովորական դառնալով թափանցում են արվեստագետի գիտակցության մեջ, տպավորվում շրջապատի ընկալումից առաջացած ապրումներում, հույզերի խառնարանում:

Ֆորմալիզմի էսթետիկան գտնում էր, թե իբր գեղարվեստական կերպարը անշարժ ու ինքնամփոփ և «դարից դար, երկրամասից երկրամաս, բանաստեղծից բանաստեղծ հոսում է անփոփոխ»: Սակայն կերպարը անտարբեր չէ ժամանակի, իրականության նկատմամբ, այն անխուսափելի միացում է սեփականի և ընդհանուրի, ազգայինի և ինտերնացիոնալիստականի: Դրա անտարրալուծելի միասնությունն արդեն հանդես է գալիս ստեղծագործական պրոցեսի նախնական աստիճաններում: Ա. Ցաղեևը գեղագիտական այս երևույթը անվանել է «գեղարվեստական նախնական կուտակման շրջան», երբ դեռ բովանդակությամբ չլցված ու լինելության ձևում չամրապնդված կերպարային պատկերացումները արվեստագետի «հիշողության շտեմարանում» հանդիսանում են նրա միայն տրամադրությունների, հուզական ապրումների հաղորդողը, որն իր մեջ է պահպանում ժամանակի հարուցած անկրկնելի գծերը, բնորոշ հատկանիշները, կոնկրետ մանրամասները: Պահպանելով ապագա կերպարի սաղմը, նրա պոտենցիալ հնարավորությունները, այն հետագայում փոխանցվում է ավարտված ստեղծագործություններում: Դրա համար արդեն «նախնական կուտակումներում» առկա են ամբողջական կերպարի ինքնատիպ հատկանիշները, որոնց խոր արմատները գտնվում են ազգային միջավայրում:

Այդ է պատճառը, որ ինչպիսի թեմայի ու ծավալի գործ էլ ձեռնարկի ստեղծել արվեստագետը, նախնական փորձը դրսևորման մեծ հնարավորություններ ունի: Արվեստագետի ստեղծագործական լաբորատորիայում արված առաջին էսքիզները, սևեռատիկ գրառումները, թղթին հանձնած մտորումներն էմոցիոնալ



մեծ լիցք են պարունակում, օգնում հասկանալու հեղինակի մտահղացումը, ազգային երանգը:

Հեգելը նկատել է էսթետիկական զգացումի արտասովոր տարբերությունը, անգամ հակադրությունը, ոչ թե «առանձին մարդկանց», այլ «ամբողջ ժողովուրդների» (Гегель, т. I, М., 1968, стр. 50—51): Չբացարձականացնելով «հակադրությունները», որոնք պատմական առումով հնարավոր է բացատրել, նա դրանք միացնում էր գեղեցկության մասին տարբեր ազգային պատկերացումների հետ և առաջինն էր գեղագիտության մեջ, որ նշեց դրանց ներգործությունը արվեստի կերպարների, բովանդակության ու ձևի, արվեստում ազգային ինքնատիպ պատկերման ավանդույթների կայացման վրա:

Արվեստագետի գեղագիտական միտքը կարծես առարկայացնում է մարդու աշխարհը և մարդկայնացնում իրերի աշխարհը. և մեկը մյուսին վերակերտում անկրկնելի ազգային-ինքնատիպ գույներում:

Սոցիալիստական ազգերի ինտերնացիոնալ միասնությունը վերափոխիչ ներգործություն ունի ազգային գեղարվեստական գիտակցության զարգացման վրա: Ազգային կերպարային ավանդույթները, որոնք դրսևորվում են արվեստագետի ստեղծագործությունում, սովետական ժողովուրդների միասնության պայմաններում դառնում են համասովետական սեփականություն, ունակ արտահայտելու սոցիալիստական ազգերի ընդհանուր ձգտումը՝ միասնական հասարակական, բարոյական, էսթետիկական իդեալին:

Սովետական արվեստի զարգացման պրոցեսում ի հայտ են գալիս իրականության գեղարվեստական յուրացման բազմաթիվ գույներ ու ձևեր, որոնք սոցիալիստական բովանդակության արտահայտման շնորհիվ արժանանում են համընդհանուր ճանաչման:

Ինտերնացիոնալիզմը սովետական արվեստագետի աշխարհայացքի էությունն է, նրա գաղափարական դիրքորոշումը: Անգամ այն ստեղծագործությունները, որոնք հատուկ գրված չեն ինտերնացիոնալիստական թեմայով, աչքի են ընկնում սոցիալիստական հումանիզմի, տարբեր ազգերի աշխատավորների միասնության պաթոսով: Ուսանելի է լենինյան դրույթը, որ ինտերնացիոնալիստականը ապազգային չէ: Այն ենթադրում է բազմապիսի էսթետիկական ձևեր, ընդ որում և ազգային, որոնք այժմ գեղարվեստորեն ամրապնդում և հաստատում են կյանքի սոցիալիստական բովանդակությունը, հարազատ ու մոտ դարձնելով սոցիալիզմը: Փոխվել է ազգայինի որակը, նրա ֆունկցիան հարազատ մշակույթի զարգացման գործում: Ազգայինի այդ կենդանի դիալեկտիկան անհրաժեշտ է միշտ հաշվի առնել: Միայն սոցիալիստական ինտերնացիոնալիզմն է ազգային զգացմունքին և ինքնագիտակցությանը տալիս ճիշտ ուղղություն: Ազգայինը արգելք չի հանդիսանում թափանցելու ուրիշ ժողովուրդների հոգեկան ու գեղագիտական աշխարհը, յուրացնելու համաշխարհային մշակույթի լավագույն կողմերը: Մտահորիզոնի, հետաքրքրությունների լայնությունը չի նշանակում, որ մարդ պետք է հրաժարվի իր ժողովրդի բնավորությունից, սովորույթներից և ավանդույթներից և իբր դրանց օտարմամբ դառնա ավելի կատարյալ անձնավորություն:

Յուրաքանչյուր ժողովուրդ հպարտանալու շատ բան ունի, որը և նրան դարձնում է յուրօրինակ: Սերը սեփական ազգի, լեզվի, պատմության, հոգեկան արժեքների նկատմամբ բնական է ու հասկանալի: Ազգային հպարտության զգացումը վերին աստիճանի բարերար է, եթե այն հենվում է ինտերնացիոնալ հիմքի վրա ու սնվում այդ հարուստ աղբյուրից: Նման զգացումն ընդ-

համուր ոչինչ չունի ազգային հեգեմոնիզմի, բուրժուական նացիոնալիզմի. սեփական ժողովուրդը մյուս ժողովուրդներին հակադրելու միտումի հետ: Սովետական հայրենասիրությունն օրգանապես զուգորդվում է սոցիալիստական ինտերնացիոնալիզմին, պարզ գիտակցելով, որ մյուս ժողովուրդների ճակատագրերի նույնությամբ բացմապատկվում են սեփական ժողովրդի ստեղծագործական եռանդի հնարավորությունները:

Սովետական ազգերի համատեղ կյանքի փորձն ապացուցեց, որ ՍՍՀՄ կազմում մտած ժողովուրդները շնորհիվ փոխադարձ օգնության ու բարեկամության, աննախադեպ զարգացրել են իրենց էկոնոմիկան, կուլտուրան, նյութական ու հոգևոր լինելության բոլոր կողմերը: Սովորելով մեկը մյուսից, ընդօրինակելով ու ստեղծագործաբար վերափոխելով յուրաքանչյուրի ամեն արժեքավորը, եղբայր ժողովուրդները նվաճել են ազգայինի ինքնաբացահայտման գագաթները: Սովետական ժողովուրդների ինտերնացիոնալ ընդհանրությունը. նրանց ազգային ինքնուրույնության հուսալի երաշխիքն է: Դրա համար սերը սեփական ազգի, լեզվի հանդեպ բնականաբար ներառնում է նաև սերը ընդհանուր սոցիալիստական հայրենիքի նկատմամբ, որի մասն է կազմում սեփական հողը: Այդ անկապտելիության, մասի ու ամբողջի ձուլվածքի, ինտերնացիոնալիստականի ու ազգայինի զգացումը լավ են արտահայտել սովետական բազմազգ գրականության առաջնակարգ բանաստեղծները:

Պատմական տարբեր պայմաններում ազգային զգացումների բովանդակությունը տարբեր է: Կապիտալիզմի պայմաններում, ուր մի ժողովուրդ հալածում է մյուսին, հալածվող ազգի մոտ անչափ սրվում է ազգային առանձնակիության զգացումը: Ազգային զգացման անհարկի ուռճացումն սկսածայից հանգեցնում է անապարծության: Այդ տենդենցը ճնշվող ազգերի մոտ հանդես է գալիս, որպես վահան, պաշտպանելու թշնամուց հարազատ մշակույթը: Ճնշվող ազգը զոհվելով զաղութատիրության ճիրաններում, փորձում է պահպանել սեփական պատմական դեմքը, իշխող ազգի սախմիկյատորական քաղաքականությանը հակադրել իր ազգային լինելության բազմապիսի վինասնոցը, հաճախ չփորձելով հրաժարվել այն բոլորից ինչ կենսապուրկ է: Բռնության դեմ պայքարում այդ բոլորը պետքական է ազգային գոյության պահպանման համար:

Ազգային զգացումները ժողովուրդների եղբայրության և ինտերնացիոնալ միասնության պայմաններում այլ բնույթ են ստանում: Այն սոցիալիստական ազգային հպարտությունն է՝ կոչված, որ սովետական ժողովուրդներից յուրաքանչյուրը գիտակցում է իր գործունեության տեղը ու դերը կոմունիստական հասարակության կառուցման գործում: Նոր աշխարհի կերտման բնագավառում ժողովուրդները ներդրել են իրենց նյութական ու հոգևոր արժեքները: Ինչպես չհպարտանալ սեփական ազգի հիանալի թռիչքով, ինչպես չուրախանալ հարազատ ժողովրդի տաղանդով, աշխատանքային մեծագործություններով, նրա չթուլացող կորովի հզորությամբ, որը վերածնվեց ու բազմապատկվեց սոցիալիստական հասարակության պայմաններում:

Սոցիալիստական հասարակության մեջ ինտերնացիոնալ գիտակցությունը և բուն ազգային զգացումները գոյություն չունեն և չեն կարող լինել իրարից անջատ: Նշելով ազգային զգացումների ակտիվ բնույթը, անհրաժեշտ է ի նկատի ունենալ նրանց սոցիալ-հոգեբանական էությունը: Տարբեր ժողովուրդների մոտ ազգային զգացումները դրսևորվում են կոնկրետ և տարբեր ձևերով ու երանգներով, որոնք անշուշտ իրար նման չեն, անհատապես յուրովի են:

Սակայն ի՞նչն է միավորում սովետական մարդկանց ազգային զգացումները, ինչո՞ւմն է վերջիններիս ուժն ու նշանակությունը, որոնք այդքան ակընհայտորեն արտահայտվել են սովետական արվեստի բազում ստեղծագործություններում: Ազգային զգացումի դիալեկտիկան դրսևորվում է հասարակական կյանքի փոխակերպման ու հարստացման մեջ: Սոցիալիստական հասարակության պայմաններում ազգային զգացումները չեն անհետանում ու չեն ենթարկվում բռնի վերացման, ինչպես արտասահմանում գրում են մեր գաղափարական հակառակորդները: Ազգային զգացումները չվերածվելով ինչ որ անդեմ, աննշմարելի երևույթի, հանդես են գալիս նոր բովանդակությամբ. ներդաշնակորեն ձուլվելով սոցիալիստական գիտակցությանը:

Սոցիալիզմը պահպանելով ժողովուրդների ազգային հարստությունը, նպաստում է նոր մեծ արժեքների ստեղծմանը: Անցյալի մշակույթի մնայուն գործերը համահնչուն են նոր դարաշրջանին: Այս երևույթը բնական է և օրինաչափ, քանի որ սոցիալիզմը բազում սերունդների կուտակած դրական փորձի արգասիքն է: Նոր իրականության ներգործմամբ ազգային զգացումները բյուրեղանում են, ձերբազատվելով պատահականից, հնացած արժեքներից: Երբ ազգային զգացումները հակասում են բանականությանը, հարուցում են հոռվական բռնկումներ, ազգայնական նախապաշարումներ, որոնք ապակողմնորոշում են մարդուն: Ազգային սահմանափակությունն ու անապարծությունը կաշկանդում են ազգի առաջընթացը:

Ինտերնացիոնալիզմն ազգայինը հարստացնում է հումանիստական տարրերով, բարոյական վեհ սկզբունքներով: Բուրժուական նացիոնալիզմը թունավորելով ազգային գիտակցությունը և ներարկելով իր դարն ապրած նախապաշարումներ, հոգեպես սնանկացնում է մարդկանց: Այն թշնամանք սերմանելով ժողովուրդների միջև, ձգտում է նրանց զրկել մերձենալու բնական անհրաժեշտությունից:

Սովետական բազմազգ արվեստը հաստատելով ժողովուրդների բարեկամության ու եղբայրության վեհ իդեալները, արտացոլում է մեր ժողովրդի հաղթական շարժումը դեպի կոմունիզմ: Ինտերնացիոնալիզմը սովետական արվեստի հիմնարար սկզբունքներից է, գեղագիտական պաթոսը:



# ՎԵՐՋԻՆ ՄԱՐԴԱՀԱՄԱՐԻ ՆԱԽՆԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

Գ. Ա. ՓԱՀԼԵՎԱՆՅԱՆ

*ՀՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության պետ*

1970 թ. հունվար ամսի 15-ի դրությամբ Սովետական Միությունում անցկացվեց համամիութենական մարդահամար: Դժվար է գերագնահատել նրա սոցիալ-քաղաքական և ժողովրդատնտեսական մեծ նշանակությունը, քանի որ միայն այդ միջոցով հնարավոր էր ճշտել բնակչության թվի և կազմի տվյալները, ավելի ճիշտ տեղեկություններ ստանալ բնակչության մասին ըստ սեռի, տարիքի, ազգության, մայրենի լեզվի, կրթական մակարդակի, ընտանեկան դրության և ընտանիքի կազմի, գոյության միջոցների աղբյուրի, զբաղվածության և մի շարք այլ տվյալների մասին:

ՍՍՀՄ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչությունն արդեն հրապարակել է համամիութենական մարդահամարի նախնական տվյալները, որոնք ցույց են տալիս, որ ՍՍՀՄ ազգաբնակչության թիվը կազմում է 241 միլիոն 748 հազար մարդ: Դա նշանակում է, որ Սովետական Միությունը աշխարհի երրորդ տերությունն է ազգաբնակչության քանակով, ընդ որում բնակչության 80 տոկոսից ավելին ծնվել են Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո:

Մարդահամարի նախնական տվյալներից երևում է, որ չնայած անցած տասնամյակներին մեր երկիրն ապրեց երեք արյունահեղ պատերազմ, այնուամենայնիվ 1970 թ. ազգաբնակչությունը նախահեղափոխական ժամանակաշրջանի համեմատությամբ աճեց 82,5 միլիոն մարդով, կամ 52,8 տոկոսով, նախապատերազմյան 1940 թ. համեմատությամբ՝ 47,6 միլիոն մարդ կամ 24,5 տոկոս, իսկ անցած 11 տարիների ընթացքում, այսինքն նախորդ, 1959 թ. մարդահամարի տվյալների համեմատությամբ, 32,9 միլիոն մարդով:

Ազգաբնակչության աճն անցած տարիներում բնութագրվում է հետևյալ կերպ.

| | Ամբողջ բնակչությունը (միլիոն մարդ) | այդ թվում | | Քաղաքային բնակչության տեսակարար կշիռը (տոկոսով) |
|---|---|---|---|---|
| | | *Քաղաք* | *գյուղ* | |
| *1913 թ. (հաշվարկված տարվա վերջին)* | *159,2* | *28,5* | *130,7* | *18* |
| *1940 թ. (հաշվարկված առ 1-ը հունվարի)* | *194,1* | *63,1* | *131,0* | *33* |
| *1959 թ. (մարդահամարը առ 15-ը հունվարի)* | *208,8* | *100,0* | *108,8* | *48* |
| *1970 թ. (մարդահամարը առ 15-ը հունվարի)* | *241,7* | *136,0* | *105,7* | *56* |



Ինչպես երևում է աղյուսակից, վերջին տասնամյակի ընթացքում ՍՍՀՄ-ում ազգաբնակչության միջին աճը տարեկան կազմում է երեք միլիոն մարդ կամ 1,34 տոկոս, ԱՄՆ-ում ազգաբնակչության աճը ևս կազմում է մոտ 1,34 տոկոս, այն ժամանակ, երբ Ֆրանսիայում այն կազմում է 1,05, Գերմանական Ֆեդերատիվ Հանրապետությունում 1,1, Ճապոնիայում՝ 1,0, իսկ Անգլիայում 0,6 տոկոս: Պետք է նշել, որ ՍՍՀՄ-ի ազգաբնակչության վերջին 11 տարիների ընդհանուր աճը գերազանցում է Շվեդիայի, Նորվեգիայի, Ֆինլանդիայի, Բելգիայի և Դանիայի ողջ ազգաբնակչությունը միասին վերցրած:

Արտադրաուժերի տեղաբաշխման շնորհիվ զգալի փոփոխություններ են տեղի ունեցել նաև ՍՍՀՄ-ի ազգաբնակչության աշխարհագրական տեղաբաշխման մեջ: Այսպես՝ 241,7 միլիոն մարդուց ՍՍՀՄ-ի եվրոպական մասում ապրում են 182,5 միլիոն մարդ, կամ 75,5 տոկոս, Ասիական մասում՝ 59,2 միլիոն մարդ կամ 24,5 տոկոս, ընդ որում 1959 թվականի մարդահամարից հետո Եվրոպական մասի ազգաբնակչությունն աճել է 20,2 միլիոն մարդով կամ 12,4 տոկոս, իսկ Ասիական մասինը՝ 12,7 միլիոն մարդով կամ 27,3 տոկոս, հետևապես Ասիական մասի ազգաբնակչությունն անցած 11 տարիների ընթացքում 2 անգամ արագ է աճել, քան Եվրոպական մասում:

Ազգաբնակչության բուռն աճի հետևանքով առանձին հանրապետություններում զգալի փոփոխություններ են տեղի ունեցել նաև մեկ քառակուսի կիլոմետր տարածության հաշվով բնակչության խտության մեջ:

Այսպես՝ եթե ազգաբնակչության խտությունը ՍՍՀՄ-ում 1959 թ. մեկ քառակուսի կիլոմետրի վրա կազմում էր 9,3 մարդ, իսկ 1970 թ.՝ 10,9 մարդ, ապա Սովետական Մոլդովիայում այն կազմում է համապատասխանորեն 85,6—106 մարդ. Սովետական Հայաստանում՝ 59,2—83,7 մարդ, Սովետական Վրաստանում՝ 58,0—67,3 մարդ, Սովետական Ադրբեջանում՝ 42,7—59,0 մարդ և այլն:

Հետաքրքրական են նաև քաղաքների բնակչության թվաքանակին վերաբերող տվյալները: Ծավալվող շինարարության, արդյունաբերական և սոցիալ-կուլտուրական օբյեկտներ շահագործման հանձնելու հետևանքով, զգալի աճել են մեր երկրում քաղաքների թիվը և նրանց բնակչությունը: Բավական է նշել, որ վերջին 11 տարիների ընթացքում քաղաքների թիվն ավելացավ 256, իսկ քաղաքատիպ ավաններինը՝ 629, իսկ 1970 թ. սկզբներին 3569 քաղաքատիպ ավանում բնակվում է 19,7 միլիոն մարդ:

Առանձնապես ազգաբնակչության մեծ աճ է նկատվում միութենական հանրապետությունների մայրաքաղաքներում և խոշոր ինդուստրիալ կենտրոններում: Այսպես, օրինակ՝ Դուշանբեում 1926 թ. նկատմամբ բնակչությունն աճել է 62,3 անգամ, Ալմա-Աթայում՝ 16,6, Երևանում՝ 11,8, Ֆրունզեում՝ 11,6, Չելյաբինսկում՝ 14,8, Զապորոժյեում՝ 12,2 անգամ և այլն:

Հարկ է նշել, որ ներկայումս ՍՍՀՄ-ում 10 քաղաքներ ունեն 1 միլիոնից ավելի բնակչություն: Հիշենք, որ 1939 թվի այդպիսի քաղաքների թիվը կազմում էր 2, իսկ 1959 թ.՝ 3: Սովետական Միության մայրաքաղաք Մոսկվայում բնակչության թիվն արդեն գերազանցում է 7 միլիոն մարդուց և 1926 թ. համեմատությամբ աճել է 3,4 անգամ:

Երկրի ինդուստրացման ժամանակաշրջանում և հետագա տարիների ընթացքում արդյունաբերության զարգացման և արտադրաուժերի նոր տեղաբաշխման շնորհիվ Սովետական Միության քարտեզի վրա երևացին նոր քաղաքներ, որոնցից յուրաքանչյուրի բնակչության թիվը ներկայումս 100 հազարից ավելի է: Այսպես օրինակ՝ Կարագանդայում կա 522 հազար բնակիչ, Մագնի-

տագորսկում՝ 364, Գորլովկայում՝ 335, Ամուր գետի վրա Կոմսոմոլսկում՝ 218, Կրամատորսկում՝ 151, Նարիլսկում՝ 136, Կիրովականում՝ 107 հազար մարդ և այլն:

Բավական մեծ քանակությամբ ինդուստրիալ նոր քաղաքներ առաջացան հետպատերազմյան շրջանում: Այսպես, օրինակ՝ Անգարսկում այժմ բնակվում են 204 հազար մարդ, Թեմիրթաուում՝ 167, Բրատսկում՝ 155, Վոլժսկում՝ 142, Նախոդկայում՝ 105, Սումգաիթում՝ 124 հազար մարդ և այլն:

1970 թվականի համամիութենական մարդահամարի տվյալներով Միության բոլոր քաղաքներում և քաղաքատիպ ավաններում այժմ ապրում են 136 միլիոն մարդ կամ ամբողջ ազգաբնակչության 56 տոկոսը: Հիշենք, որ 1959 թ. մարդահամարի տվյալներով այն կազմում էր միայն 48 տոկոսը: Համեմատաբար քաղաքային բնակչության առավել մեծ տեսակարար կշիռ ունեն Ռուսաստանի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Հանրապետությունը և ԼՍՍՀ, որտեղ կազմում է 62 տոկոս, ԷՍՍՀ՝ 65, ՀՍՍՀ՝ 59 տոկոս, ՈւկՍՍՀ՝ 55, ԱՍՍՀ՝ 50, ՎՍՍՀ՝ 48 տոկոս և այլն: Միությունում քաղաքների և քաղաքատիպ ավանների բնակչության զգալի աճը տեղի է ունեցել հիմնականում ի հաշիվ գյուղական բնակչության հոսքի (միգրացիա) դեպի քաղաքները, գյուղական վայրերի վերադասումը՝ քաղաքների և քաղաքատիպ ավանների, բնակչության բնական աճի գործոնների պատճառներով: Այսպես օրինակ՝ 1969 թ. քաղաքային վայրերի բնակչությունը 1959 թ. նկատմամբ աճել է 36 միլիոնով, նույն թվում գյուղական վայրերից հոսքը դեպի քաղաքները՝ 16,4 միլիոն մարդ, գյուղական վայրերի վերադասելը քաղաքների և քաղաքատիպ ավանների՝ 5 միլիոն մարդ և բնական աճի հետևանքով՝ 14,6 միլիոն մարդ:

Պետք է նշել, որ երկրի հետագա ինդուստրացման, նոր արդյունաբերական ձեռնարկությունների ստեղծման, տեխնիկական պրոգրեսի հսկայական վերելքի շնորհիվ, քաղաքների բնակչությունը 11 տարիների ընթացքում ավելի արագ է աճել, քան գյուղականը:

Մարդահամարի նախնական տվյալներով արձանագրված է, որ երկրի ամբողջ ազգաբնակչության թվից 111,3 միլիոնը, կամ 46,1 տոկոսը տղամարդ է, իսկ 130,4 միլիոնը կամ 53,9 տոկոսը կին: Դա նշանակում է, որ մեր երկրում ամեն մի 100 կնոջ համեմատությամբ կա 85 տղամարդ: Պետք է նշել, որ 1959 թ. մարդահամարի տվյալներով տղամարդկանց թիվը կանանց համեմատությամբ պակաս էր 20,8 միլիոն մարդ, իսկ 1970 թ. 19,1 միլիոն: Այսպիսի հարաբերությունը սեռերի միջև առաջացել է ի հաշիվ բարձր տարիքների, որն անմիջական հետևանք է վերջին՝ Հայրենական մեծ պատերազմի: Որպես կանոն, ինչպես ամբողջ աշխարհում, այնպես էլ մեզ մոտ նորածին տղաներն ավելի շատ են, քան աղջիկները: Մեր երկրում ամեն մի 100 նորածին աղջիկների համեմատությամբ, նորածին տղաների քանակը կազմում է 106, բայց քանի որ աղջիկների մահացությունն ավելի նվազ է, քան տղաներինը, ապա տղամարդկանց և կանանց քանակի հավասարումը տեղի է ունենում 27—28 տարեկանների միջև:

Երկրում մահացության զգալի նվազման շնորհիվ բնակչության կյանքի միջին տևողությունը երկարել է և կազմում է 70 տարի: Հայաստանում այն գերազանցում է միութենական ցուցանիշից, հավասար է 73 տարվա, ըստ որում առավել մեծ է կանանց կյանքի միջին տևողությունը, որը 75 տարվա է հավասար:

Ինչպես հայտնի է, Միավորված ազգերի կազմակերպության խորհրդով



1970 թ. ընթացքում մարդահամար է անցկացվում աշխարհի երկրների մեծ մասում: Մարդահամարի տվյալների ամփոփումը հետագայում հնարավորություն կտա խորապես ուսումնասիրելու ամեն մի երկրի սոցիալական այն փոփոխությունները, որ տեղի են ունեցել վերջին 10 տարիների ընթացքում: Սակայն այժմ մոտավոր տվյալներով հայտնի է, որ երկրագնդի ազգաբնակչությունը արդեն կազմում է 3 միլիարդ 600 միլիոն մարդ, որից մոտ 34 տոկոսը բնակվում են սոցիալիստական երկրներում, 19 տոկոսը՝ զարգացած կապիտալիստական երկրներում, 46 տոկոսը՝ զարգացող երկրներում և 1 տոկոսը՝ գաղութներում:

1970 թվականի մարդահամարի տվյալները մի անգամ ևս հաստատեցին, որ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո մեր երկրի աշխատավորները մեծ նվաճումներ ունեն կոմունիզմի կառուցման գործում: Սակայն այն օբյեկտիվորեն չեն մեկնաբանում բուրժուական ռեակցիոն սոցիոլոգները, որոնք փորձում են կեղծ տվյալներով նսեմացնել մեր մարդահամարի արդյունքները, թուլացնել այն մեծ տպավորությունը, որն այն թողել է աշխարհի պրոգրեսիվ մարդկանց վրա:

Այսպես՝ ամերիկյան «Յունայտեդ Ստեյդս նյուս էնդ ուորլդ ռիպորտ» հանդեսը փորձում է հարցականի տակ դնել Սովետական Միության 7 տարեկանից բարձր տարիք ունեցող ազգաբնակչության գրագիտության վերաբերյալ տվյալների ճշտությունը, պատճառաբանելով, որ իբր թե մարդահամարի թերթիկում անգրագիտության վերաբերյալ հարցադրում չկար: Մինչդեռ մարդահամարի անցկացման վերաբերյալ հրահանգում ասված է, եթե հարցադրվողը անգրագետ է, ապա այդ մասին նշել հարցաթերթիկում: Հնարավոր է, որ մեր երկրում ազգաբնակչության չնչին մասն անգրագետ է, սակայն այդ ո՛չ թե ուսումնական հաստատությունների պակասության կամ ուսուցիչների բացակայության հետևանք է, այլ մարդկանց վատառողջության կամ ֆիզիկական թերության հետևանք: Մի՞թե հայտնի չէ հեղինակին, որ Սովետական Միությունում օրենքով սահմանված է 8-ամյա պարտադիր ուսուցում, մեծ ջանքեր են գործադրվում կույրերի, համրերի և այլ տեսակի ֆիզիկական պակասություն ունեցող երեխաների ուսումը կազմակերպելու համար:

ԱՄՆ-ի որոշ քաղաքական մեկնաբաններ և սոցիոլոգ-դեմոգրաֆներ ջանում են ամեն կերպ կասկածի տակ դնել ՍՍՀՄ-ում անցկացված մարդահամարի տվյալները, դրանով իսկ «հերքել» սոցիալիստական հասարակարգում գործող քաղաքատնտեսական, ազգային և սոցիալական հարաբերությունների առավելությունները կապիտալիստական աշխարհի նկատմամբ, շեղել պրոգրեսիվ մարդկության ուշադրությունը հանրահայտ իրականությունից: Բայց նրանք անտեսում են այն, որ 1970 թվականին ԱՄՆ-ում անցկացված մարդահամարից դուրս են մնացել հազարավոր քաղաքացիներ: Մի շարք քաղաքների քաղաքագլուխներ և տեղական առևտրական պալատներ պահանջում են մարդահամարի բյուրոյից նոր մարդահամար անցկացնել: Ալաբամայի նահանգի ամբողջ բնակչությունը դժգոհ է մարդահամարի տվյալներից: Նահանգապետը պահանջել է կազմակերպել հատուկ ուսումնասիրություն, պարզելու որքանո՞վ են ճիշտ մարդահամարի տվյալները: Ալաբամայի նահանգի այդ վիճակը եզակի չէ: Մարդահամարի նախնական տվյալները չեն գոհացնում նաև Տեխասի, Կալիֆորնիայի, Հյուսիսային Կարոլինայի կառավարող գործիչներին:

Սովետական Միության եղբայրական մեծ ընտանիքում առավել հաջողություններ է ձեռք բերել նաև մեր հանրապետությունը: Դրա լավագույն վկայու-

թյուններից մեկը 1970 թ. համամիութենական մարդահամարի նախնական տվյալներն են:

Կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ճիշտ և հետևողական ազգային քաղաքականության շնորհիվ Սովետական Հայաստանը դարձել է ինդուստրիալ արդյունաբերության և առաջավոր գյուղատնտեսության հանրապետություն: Միայն հիշենք, որ 1960 թ. նկատմամբ 1969 թ. այսինքն անցած 9 տարիների ընթացքում արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալը աճեց 2,37 անգամ, այդ թվում արտադրության միջոցների արտադրությունը՝ 2,44 անգամ, սպառման առարկաների արտադրությունը՝ 2,25 անգամ: 1969 թ. հանրապետության ազգային եկամուտը 1958 թ. համեմատությամբ աճել է 2,6 անգամ, իսկ բնակչության շնչի հաշվով 1,8 անգամ: Ժողովրդական տնտեսության աննախընթաց զարգացումը, աշխատավորության նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարումը լայն պայմաններ ստեղծեցին բնակչության աճի համար: Մարդահամարի տվյալների համաձայն 1970 թվականի հունվարի 15-ի դրությամբ մեր հանրապետությունում արձանագրվել է 2493,4 հազար մարդ: Դա նշանակում է, որ նախորդ՝ 1959 թվականի հունվարի 15-ի մարդահամարից հետո ազգաբնակչությունն աճել է 730,3 հազար մարդով կամ 41,4 տոկոսով:

Սովետական Հայաստանում բնակչության աճի մեծ տոկոսը կազմում է բնական աճը և որոշ չափով միգրացիան: Այսպես՝ 730,3 հազար մարդից բնական աճը կազմում է 79,9 տոկոս, իսկ միգրացիան, այդ թվում և հայրենադարձությունը՝ 20,1 տոկոս:

Հանրապետությունում ավելի արագ աճեց քաղաքների և քաղաքատիպ ավանների բնակչությունը, որն ըստ մարդահամարի տվյալների այժմ կազմում է ամբողջ ազգաբնակչության 59 տոկոսը և ներկայումս գրավում է միութենական հանրապետությունների մեջ չորրորդ տեղը ՌՍՖՍՀ-ից, Լատվիական և Էստոնական սովետական հանրապետություններից հետո: Ի դեպ պետք է նշել, որ քաղաքների և քաղաքատիպ ավանների բնակչության աճի մեծ մասը կազմում են մի շարք գյուղական վայրերը— քաղաքատիպ վայրերի վերադասման և գյուղից քաղաք տեղափոխվող բնակչության հոսքի հաշվին:

Ինդուստրիայի աննախընթաց զարգացումն իր հերթին բերեց նոր քաղաքների և քաղաքատիպ ավանների առաջացում: Եթե 1959 թվականի սկզբին Սովետական Հայաստանում կային 14 քաղաք (այդ թվում 4-ը հանրապետական ենթակայության) և 21 քաղաքատիպ ավան, ապա այժմ մենք ունենք 23 քաղաք (այդ թվում 17-ը հանրապետական ենթակայության) և 28 քաղաքատիպ ավան:

Սովետական Հայաստանի նորաստեղծ քաղաքները զարգացման լայն հեռանկարներ ունեն և իրենց արտադրանքի ծավալով էական տեղ են գրավում հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ: Հատկապես վերջին ժամանակաշրջանում այդ քաղաքներում կառուցվել են առաջավոր տեխնիկայով հագեցված արդյունաբերական բազմաթիվ ձեռնարկություններ, կուլտուր-կենցաղային ու առողջապահական օբյեկտներ, բնակելի բազմահարկ շենքեր, սպորտային հրապարակներ և այլն:

Սովետական կարգերի հաստատումից հետո, 50 տարիների ընթացքում մեր հանրապետությունում քաղաքների ու քաղաքատիպ ավանների, նրանցում բնակվողների թվաքանակը փոփոխվել է հետևյալ կերպ:



| | Քաղաքների ու քաղաքատիպ ավանների թիվը | | | | Նրանցում բնակվողներ (հազար մարդ) | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| | 1926 | 1939 | 1959 | 1970 | 1926 | 1939 | 1959 | 1970 |
| Քաղաքատիպ ավաններ և քաղաքներ ընդամենը | 21 | 18 | 35 | 51 | 167,1 | 366,4 | 881,8 | 1482.1 |
| Այդ թվում՝ | | | | | | | | |
| Ըստ բնակչության թվաքանակի | 13 | 4 | 10 | 12 | 18,4 | 7,8 | 18,0 | 22,3 |
| 3 հազարից 5 հազար | 2 | 2 | 6 | 9 | 9,8 | 8,0 | 22,0 | 35,5 |
| 5-ից 10 հազար | 4 | 8 | 9 | 9 | 32,0 | 54,9 | 70,8 | 62.9 |
| 10-ից 20 հազար | — | 2 | 7 | 13 | — | 27,6 | 103,8 | 187,4 |
| 20-ից 50 հազար | 1 | — | 1 | 5 | 42,3 | — | 49,4 | 136,3 |
| 50-ից 100 հազար | 1 | 1 | — | — | 64,6 | 67,7 | — | — |
| 100-ից 500 հազար | — | 1 | 1 | 2 | — | 200,4 | 108,4 | 270,9 |
| 500 հազարից ավելի | — | — | 1 | 1 | — | — | 509,3 | 766,8 |

Բնակչությունն զգալի աճել է մեր հանրապետության մայրաքաղաք Երևանում: Միայն վերջին 11 տարիների ընթացքում Երևանում բնակվողների թիվը աճել է 274 հազար մարդով, այսինքն 55 տոկոսից ավելին: Ըստ մարդահամարի մայրաքաղաքում (առանց գյուղական վայրերի) բնակվում է 766.8 հազար մարդ, այդ թվում 26 կոմիսարների անվան շրջանում 185 հազար, Օրջոնիկիձեի շրջանում մոտ 138, Շահումյանի շրջանում 131,4, Լենինյան շրջանում՝ 131, Սպանդարյանի՝ շրջանում 94,5 և Մյասնիկյանի շրջանում՝ 87 հազար մարդ: Ի դեպ Մյասնիկյանի շրջանը կազմակերպվել է 1959 թվականի մարդահամարից հետո: Բնակչության զգալի աճ տեղի է ունեցել Լենինական քաղաքում՝ 51,4 տոկոս, Կիրովականում՝ 116, Հրազդանում՝ 246, Իջևանում՝ 78,2, Աշտարակում՝ 61, Ղափանում՝ 55, Կամոյում՝ 128, Հոկտեմբերյանում՝ 73,9 տոկոս և այլն:

Անցած 11 տարիների ընթացքում Հայաստանի քարտեզի վրա ի հայտ եկան նոր քաղաքներ և քաղաքատիպ ավաններ, որոնց բնակչությունը նախկինում այդ տեղերում գտնվող գյուղերի բնակչության նկատմամբ աճեցին. Չարենցավանում՝ 7, Աբովյանում՝ 8,2 անգամ, Ակիբեկովում՝ 120,3, Ազարակում՝ 143, Այրումում՝ 178,7 տոկոսով և այլն:

Այսպիսով, անցած 11 տարիների ընթացքում եթե հանրապետության ազգաբնակչության աճը կազմեց 41,4 տոկոս, ապա քաղաքային բնակչության աճը՝ 67,5 տոկոս, իսկ գյուղականը՝ 15,1 տոկոս: Սա նշանակում է, որ հանրապետությունում արդյունաբերության և շինարարության բուռն վերելքը ապահովում է հիմնականում գյուղական բնակչության տեղաշարժը դեպի քաղաքները և քաղաքատիպ ավանները:

Բնորոշ է, որ եթե 1970 թվականին մեր ազգաբնակչության աճը, 1960 թ. համեմատությամբ կազմում է 36,8 տոկոս, ապա աշխատունակ բնակչության, աշխատունակ տարիքի համեմատությամբ, կազմում է 33 տոկոս: Այդ տարբերությունը հիմնականում վերաբերվում է գյուղական բնակչությանը, քանի որ աշխատունակ տարիք ունեցող երիտասարդության մի մասը տեղափոխվում է աշխատելու քաղաքները և քաղաքատիպ վայրերը:

Ազգաբնակչության սեռական կազմի թվաքանակի միջին հարաբերությունը պահպանվում է գրեթե բոլոր քաղաքներում և շրջաններում, բացառությամբ

Ջերմուկ քաղաքում (51 և 48,2): Մի շարք նոր ստեղծված քաղաքներում և քաղաքատիպ ավաններում, ինչպիսին են՝ Աբովյանը, Քաջարանը, Չարենցավանը, Անի-Պեմզան, Ակիպբեկովը, Արգնին, Գագարինը, Մարալիկը, Ծաղկաձորը՝ ազգաբնակչության մեծ մասը, այսինքն 50 տոկոսից ավելին կազմում են տղամարդիկ:

1970 թ. հունվարի 15-ի դրությամբ համամիութենական մարդահամարի նյութերը մշակվում են: Մինչև այս տարվա վերջը Սովետական Միության Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչությունը կհրապարակի նաև մյուս, մեկ շատ հետաքրքրող տվյալների ամփոփ արդյունքները: Այդ նյութերի հրապարակումով մենք կստանանք սպառիչ տվյալներ՝ ընտանիքի կազմի, տարիքի, ազգության, մայրենի լեզվի, կրթության, գոյության միջոցների աղբյուրների, աշխատանքի վայրի, զբաղմունքի, հասարակական խմբի, միգրացիայի և այլ հարցերի պատասխանը, որը հնարավորություն կտա պլանավորելու երկրի տնտեսական, սոցիալական և կուլտուրական կյանքի հետագա զարգացումը:

Ամփոփելով սովետական իշխանության օրոք հայ ժողովրդի ձեռք բերած նվաճումները, պետք է նշել, որ վերը բերված տվյալները սոսկ վիճակագրական ցուցանիշներ չեն, այլ ապատագրված հայ ժողովրդի կեսդարյա աշխատանքի փայլուն պատմությունն է, որը օրինական հպարտություն է առաջացնում հանրապետության ամեն մի քաղաքացու մոտ: Մենք հպարտանում ենք, որ Հայաստանը երբեմնի հետամնաց երկրից վերածել է առաջավոր ինդուստրիալ երկրի, որ ներկայումս Հայաստանում ամեն մի երրորդ քաղաքացին սովորում է, որ բարձրագույն կրթություն ունեցող մասնագետներից ամեն մի երրորդը ուսուցիչ է կամ կուլտուր-լուսավորական ասպարեզի աշխատող, ամեն մի չորրորդը ինժեներ է, ամեն մի տասներորդը գյուղատնտես կամ բժիշկ է: Եվ այս բոլորը սոցիալիստական կարգերի շնորհիվ, որն ստեղծվեց մեզ մոտ Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունից հետո:



## Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

# ԱՆՄԱՀ ԲԵԹՀՈՎԵՆԸ

ՄԱՐԳԱՐԻՏ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*Համաշխարհային երաժշտական մշակույթի ամենաուժեղ և լուսավոր ներկայացուցիչներից է գերմանական մեծահանճար երաժիշտ Լյուդվիգ վան Բեթհովենը, որի ծննդյան երկուհարյուրամյակը նշում է առաջավոր մարդկությունը:*

*Շուրջ դար ու կես Բեթհովենի երաժշտությունը գեղարվեստական ու գեղագիտական մեծ հաճույք է պատճառում, ոգեշնչում, ազնիվ ու վեհ զգացմունքներ հարուցում տարբեր հասակի և ազգության մարդկանց հոգևոր աշխարհում: Նրա արվեստը համամարդկային ստեղծարար խոյանքների այն մեծագույն հասումներից է, որն իր նշանակությունը պահպանում է տարբեր ժամանակաշրջաններում, սոցիալական խոշորագույն հեղաբեկումների ու տեղաշարժերի պայմաններում:*

*Բեթհովենի երաժշտությունն այն հանգուցակետն է, ուր խաչաձևվել ու միաթեկվել են նախորդ շրջանի և ժամանակակից շատ ու շատ երաժիշտների, մտածողների, արվեստագետների որոնումները, ստանալով բոլորովին նոր, ուրույն մեկնություն: Միևնույն ժամանակ, նրա երաժշտության մեջ ներհյուսված են զարգացման այնպիսի միտումներ, որոնք էապես կանխորոշեցին երաժշտության զարգացման հետագա ընթացքը:*

*1*

*Բեթհովենն ապրեց ու գործեց XVIII դարի վերջին երեսնամյակում և XIX դարի առաջին քառորդում, եվրոպական երկրների քաղաքական ու մշակութային կյանքում կատարված մեծ տեղաշարժերի ժամանակաշրջանում. տեղաշարժեր, որոնք իրենց խոր կնիքը դրեցին ողջ քաղաքակրթության զարգացման ընթացքի վրա: Որպես քաղաքացի և արվեստագետ Բեթհովենն արձագանքեց իր դարաշրջանի ամենահուզող հարցերին, արտացոլեց այն մեծագույն ուժով ու կատարելությամբ:*

*Նրա կյանքի ուղին մի նոր ապացույց էր այն ճշմարտության, ըստ որի մեծ մտածողների ու արվեստագետների համար հասարակականն ու անձնականը համաձույլ են:*

Բեթհովենը ծնվել է երաժշտի ընտանիքում, Գերմանիայի Բոնն քաղաքում (1770 թ. դեկտեմբերի 16-ին), ուր անց է կացրել իր կյանքի միայն վաղ շրջանը, որը հետագայում ստացավ բոննական ժամանակաշրջան անվանումը: Հիրավի, այդ ժամանակաշրջանը երաժշտական շատ վառ ունակությունների հայտաբերման, ստեղծագործական լարված որոնումների, դաշնամուրային կատարողականության կատարելագործման մի փուլ էր: 1878 թ. միայն մի քանի շաբաթ Բեթհովենին վիճակվեց լինել Վիեննայում, ուր տեղի ունեցավ պատմական հանդիպումը Մոցարտի հետ: Մոր ծանր հիվանդության լուրն ընդհատեց դեռևս նորմալ հունի մեջ չմտած պարապմունքները Վոլֆգանգ Ամադեյ Մոցարտի մոտ: Բոննական շրջանի կարևոր իրադարձություններից է ուսումը համալսարանի փիլիսոփայական բաժանմունքում, որն ընդհատվում է ընտանեկան հոգսերի, ընտանիքի նյութականը հայթայթելու անհրաժեշտության պատճառով: Ուսման այդ կարճատև ընթացքը համընկավ ֆրանսիական բուրժուական հեղափոխության առաջին ամիսների հետ, որը լայն արձագանք գտավ, հատկապես, ուսանողական շրջաններում, մեծապես նպաստեց գերմանական մտավորականության առաջադիմական հայացքների ձևավորմանը: Հազիվ թե Բոննի համալսարանի ուսանողներից որևէ մեկի կյանքում հեղափոխությունն այնքան խոր հետք թողեց, որքան Բեթհովենի: Հեղափոխության առաջին օրերից սկսած մինչև իր կյանքի վերջը նա մնաց հեղափոխության ջատագովներից մեկը. հանգամանք, որը կանխորոշեց նրա արվեստի գաղափարական միտումը:

Բեթհովենը երկրորդ և վերջին անգամ Վիեննա է գնում 1792 թ. և այլևս երբեք չի վերադառնում հայրենի քաղաքը, մեկընդմիշտ հրաժեշտ տալով Գերմանիային և իր ստեղծագործական կյանքն ամբողջովին կապելով ավստրիական երաժշտական մշակույթի, ավելի ճիշտ՝ վիեննական դպրոցի հետ, որի երեք խոշորագույն ներկայացուցիչներն էին՝ Հայդնը, Մոցարտը և Բեթհովենը:

Վիեննայում Բեթհովենն ապրեց 35 տարի. ապրեց իր կյանքի ամենալուսավոր օրերը. այստեղ հասունացավ ու փթթեց նրա հանճարը. այստեղ նա ընդունվեց որպես ժամանակակից երաժշտական արվեստի մեծագույն ներկայացուցիչներից մեկը:

Խստապահանջ ամենքի, ամենից առաջ իր նկատմամբ, Վիեննա տեղափոխվելուց հետո նա մի քանի տարի շարունակում է ուսանել վիեննական դպրոցի հիմնադիր Իոսիֆ Հայդնի, այնուհետև Շենկի, Ալբրեխտսբերգերի և Սալիերիի մոտ: Նա իր ուսումը դադարեցրեց միայն այն ժամանակ, երբ արդեն ուներ բազմաթիվ աշակերտներ, ճանաչված էր որպես ժամանակի խոշորագույն դաշնակահարներից մեկը և 100-ից ավելի մեծ ու փոքր գործերի հեղինակ էր: Նախանձելի համեստություն և պահանջկոտություն:

1802 թվականից սկսվում է կոմպոզիտորի ստեղծագործական կյանքի ամենաբեղմնավոր տասնամյակը, որը հայտնի է որպես վիեննական հասունության շրջան: Այդ տասնամյակում մտածող և արվեստագետ Բեթհովենն ապրում է իր գեղարվեստական սկզբունքների կատարյալ հասունության շրջանը: Իրականության բացահայտման բազմակողմանիությունն ու խորաթափանցությունը համապատասխանում էր թեմատիկ ու ժանրային արտակարգ բազմազանությանն ու հարստությանը: Այդ տասնամյակում ստեղծած գործերում ցայտուն արտահայտվեց ձևի ու բովանդակության իդեալական ներդաշնակությունը: Մի տասնամյակում կոմպոզիտորը գրել է վեց սիմֆոնիա (3-րդից 8-րդը), Ֆիդելիո օպերան, դաշնամուրային 4-րդ և 5-րդ կոնցերտները, ջութակի կոնցերտը, դաշնամուրային սոնատներ, այդ թվում Վ. Ի. Լենինի սիրած Ապասիոնատը, սիմ-



ֆոնիկ նախերգանքներ, հինգ լարային կվարտետ: Նշված ստեղծագործություններից յուրաքանչյուրը բացահայտում էր նրա արվեստի վեհությունը, մտքի հզոր թռիչքը, գեղարվեստական երևակայության անսահմանությունը:

1812 թ. նկատելի է դառնում ստեղծագործական աշխատանքի որոշ դանդաղում: Սկսվում են, այսպես կոչված՝ «մեծ ճգնաժամի» տարիները: Փորձենք պարզել դրա պատճառները:

Ժողովրդի ճակատագիրը որպես սեփական ընկալելը, հասարակական մթնոլորտի հանդեպ նրբազգացությունն առավել վառ դրսևորվեցին վիեննական կոնգրեսին հաջորդող շրջանում, երբ Ավստրիայում տիրում էին մետեռնիխյան ռեակցիան և բացարձակ տեռորը... այդ ամենը Բեթհովենն ապրեց իբրև անձնական դրամա: Միաժամանակ դա այն շրջանն էր, երբ կոմպոզիտորի արվեստը գտավ ամենալայն ճանաչում, երբ հասել էր իր փառքի ծաղկման գագաթին: Սակայն նրա հուժկու կորովը կենտրոնացված էր հասարակական խնդիրների վրա: Իրեն հատուկ համարձակությամբ նամակներից մեկում նա գրել է. «Անիծվի՜ կյանքն ավստրիական բարբարոսության պայմաններում»: Իր երկրի անկումային այն ծանր տարիները, որին գումարվում են և անձնական վիճակի հետ կապված ապրումները, հարուցում են մռայլ խոհեր, փիլիսոփայական ծանր մտորումներ: Բեթհովենն ինքն իրեն դավաճանած կլիներ, եթե տեղի տար հուսալքության. հոգեկան ճգնաժամի հաղթահարումը կապված է կենսահաստատ ուժերի հաղթանակի հետ: Իրեն հատուկ ողջամտությամբ նա կրկին անհունորեն հավատաց խավարին հաջորդող լույսին. դրա արտահայտությունն է ստեղծագործության ուշ վիեննական շրջանը:

Ստեղծագործական այս վերջին փուլն իր գաղափարական ու գեղարվեստական տոգորվածությամբ որոշակի տարբերվում է նախորդներից: Անդավաճան իր արվեստի գաղափարա-առաջադիմական սկզբունքներին, որի ամենահամոզիչ արտահայտությունը 9-րդ սիմֆոնիան էր, Բեթհովենն իր գործերում արտահայտեց փիլիսոփայական հայեցողական տրամադրություններ, որոնք որոշակի փոփոխություններ հարուցեցին նրա արվեստի ոճական սկզբունքներում և իրենց արտահայտությունը գտան սոնատային ցիկլի դրամատուրգիական-կոմպոզիցիոն կառուցվածքի, թեմատիկայի, նրա զարգացման ոլորտներում:

1826 թվականի վերջին ամիսներից հիվանդությունը զրկեց Բեթհովենին ստեղծագործելու հնարավորությունից: Նա վախճանվեց 1827 թ. մարտի 27-ին, ծանր ու տանջալից հիվանդությունից հետո:

Բեթհովենի հուղարկավորության օրը Վիեննան սգի մեջ էր: Փակ էին բոլոր դպրոցները: Ողջ քաղաքը հրաժեշտ էր տալիս իր մեծագույն ժամանակակցին, բոցաշունչ հանճարին, որն ապրեց իբրև ամենահամեստ մարդկանցից մեկը, ամենախստապահանջն իր նկատմամբ: «Իսկական արվեստագետը սնապարծ չէ,— գրել է իր նամակներից մեկում,— նա շատ լավ գիտե, որ արվեստը սահման չունի: Նա զգում է նպատակից իրեն բաժանող անջրպետը և գուցե այն ժամանակ, երբ մարդիկ հիանում են իրենով, նա տառապում է, որ ինքը դեռևս չի հասել այն բարձունքին, ուրկից ճառագում է մեծագույն հանճարը՝ ինչպես հեռավոր արեգակը...»: Եվ երբ մահվան մահճում նրան հայտնեցին, թե մարդկանց դուր չի եկել նրա վերջին կվարտետներից մեկը. նա հանգիստ, ուղղակի ասաց՝ այն նրանց դուր կգա հետո: Եվ մեռավ իբրև իր ստեղծագործությունների անմահության մարգարե:

## 2

Դեռևս երեսուն տարին չբոլորած, Բեթհովենն սկսեց բողոքել լսողության ծանրանալուց: Իր բնավորությամբ շատ մարդամոտ, կրուցասեր, նա զրկվում էր մարդկանց հետ անմիջական շփման հաճույքից, երաժշտությունը և, մասնավորապես, օպերայինն ունկնդրելու հաճույքից: Լսողության ծանրանալու հետ մեկտեղ, Բեթհովենը տառապում էր ականջների ցավից, իսկ այնուհետև` ահավոր աղմուկից, որը մի քանի տարի շարունակ գիշեր-ցերեկ տանջում էր նրան: Հոգեկան ծանր ապրումներն արտահայտվեցին հեյլիգենշտադտյան (Վիեննայի արվարձաններից մեկը) կտակում: Նրան թվում էր, թե ինքը կմեռնի, և մարդիկ չեն հասկանա` ինչո՛ւ էր նա այդքան ընկճված, ինքնամփոփ, դյուրագրգիռ:

Կազմելով իր եղբայրներին ուղղված այդ կտակը` հոգեպես նա հանգստացավ: Այդ ժամանակվանից սկսվեց «վիեննական հասուն շրջանը»:

Ստեղծագործական ծաղկման պահին կորցնելով երաժշտի համար ամենաէականը` լսողությունը, իր ողջ գիտակից կյանքն ապրելով մենության մեջ և դրա հետևանքով մշտական անբարեկարգ պայմաններում, որն, անշուշտ, անդրադառնում էր նրա ստեղծագործության ընթացքի վրա, զրկվելով որպես դաշնակահար համերգային ելույթներ ունենալու հնարավորությունից, միայն իրեն հատուկ հզոր կամքով նա ամբողջովին նվիրվում է ստեղծագործությանը: Սեփական վիճակին հակառակ նա գովերգում է կյանքը, կենսահաստատ, կենսահույզ գաղափարները, խնդությունն ու բերկրանքը, դրսևորելով մարդասիրական ամենագեղեցիկ հույզերն ու մտորումները:

## 3

Մտածելակերպով, աշխարհըմբռնմամբ, երևույթների խորքը թափանցելու կարողությամբ, ընդհանրացման արտակարգ ունակությամբ Բեթհովենը, կարծես, դիտում է իր դարաշրջանը հաջորդ սերունդների տեսանկյունով: Նա հաղթահարում է իրեն շրջապատող իրականության սահմանները և տեսնում ուրիշների համար դեռևս անտեսանելին:

Երիտասարդական տարիներից Բեթհովենին հատուկ էր ազատաբաղձությունը, խորթ` գործունեությունը կաշկանդող շրջապատը: Նրա տարերքը ժայթքում է հրաբխի պես: Տենդոտ, բարդ մթնոլորտի ծնունդ, նա իր հզոր միտքն ու հոգին ամբողջովին նվիրաբերեց ազատության գաղափարին: Նրա հզորաշունչ արվեստում դրոշմվեց իր օրերի դյուցազնապատկերը, մարդասիրության մեծարանքը, անհաշտ ատելությունը բռնության հանդեպ: Այն առաջին երաժիշտներից էր նա, որն իրեն քաղաքացի էր զգում` մարդկային արժանապատվության խոր զգացումով, դիտելու, դատելու լիարժեք իրավունքով:

Իր ողջ կյանքում Բեթհովենը ոչ մի պահ, ոչ ոքից չի թաքցրել իր նվիրվածությունը ժամանակի առաջադեմ գաղափարներին և, որ կարևորն է, ձգտել է դրանք մարմնավորել իր ստեղծագործություններում: Կոմպոզիտորի համար այդ գաղափարները դառնում էին մարդկության գոյության նպատակը: Հասարակական որոշ երևույթների և իրականության օրինաչափությունների ճանաչման ոլորտում նա հանդես է բերում այնպիսի կանխատեսություն, որն իրավունք է տալիս` նրան դասելու մեծագույն փիլիսոփա արվեստագետների շարքը: Բեթհովենը տեսնում է հեռանկարայինը, որոշիչը, առաջադիմականը մարդկության զարգացման համար ընդհանրապես, և այդ է, որ կապում է Բեթհովենին մեզ հետ, դարձնում նրան հարազատ մեր օրերին:



Իրեն հատուկ խորաթափանցությամբ, դեռևս շատ երիտասարդ, նա ըմբռնեց այն նորը, որն իր հետ բերեց ֆրանսիական բուրժուական հեղափոխությունը, ոգեշնչվեց նրանով և դարձավ նրա գաղափարների կրքոտ ջատագովը:

Ֆրանսիական բուրժուական հեղափոխության գաղափարախոսների առաջ քաշած Ազատություն, Հավասարություն, Եղբայրություն կոչերը, որոնցում մարմնավորվում էին առաջադեմ մարդկության դարավոր իղձն ու տենչը, դարձան Բեթհովենի միտքն ու սիրտը սնող հզոր աղբյուրը: Նա լի էր խոր հավատով ու հույսով, և այդ էր պատճառը, որ 1804 թվականին, երբ Նապոլեոն Բոնապարտն իրեն կայսր հռչակեց, նա որակեց դա դավաճանություն ազատության գործին և, ինչպես հայտնի է, ոչնչացրեց ընծայական ուղերձն իր Երրորդ սիմֆոնիայի առաջին էջում, վերանվանելով այն` Հերոսական: Թե ինքը` Բեթհովենը, որքան հավատարիմ մնաց հեղափոխության գաղափարներին, վկայում է նրա ստեղծագործական ուղին եզրափակող վեհաշունչ Իններորդ սիմֆոնիան:

Հեղափոխության գաղափարների հետ մեկտեղ Բեթհովենը ժառանգեց և զարգացրեց գաղափարական-գեղագիտական այն սկզբունքները, որոնք ձևավորվելով ֆրանսիական բուրժուական հեղափոխության շրջանում` նոր իմաստ ու թափ հաղորդեցին եվրոպական արվեստին:

Արվեստի և, մասնավորապես, երաժշտության սոցիալական ֆունկցիայի ճանաչումը, նրա նշանակության ու դերի մեծացումը հասարակության կյանքում խորապես ըմբռնվեց և առանձնակի փայլով արտացոլվեց նրա գործերում:

Բեթհովենը յուրացրեց ու զարգացրեց երաժշտական մտքի ու ձևի որոշակիությունը, հստակությունը, կազմակերպվածությունը, ինտոնացիան և այն բոլորովին նոր ռիթմիկ ոլորտը, որը խտացումն էր ֆրանսիական բուրժուական հեղափոխության օրերին հրապարակներում ու փողոցներում հնչող երաժշտության` երգերի ու հիմների, ձոներգերի, հանդիսավոր, տոնական և սգո քայլերգերի: Բեթհովենը կարողացավ յուրացնել ու զարգացնել այդ նոր ժանրերն այնպես, ինչպես չկարողացավ այդ անել ֆրանսիական երաժիշտներից և ոչ մեկը: Վերջապես, նոր, հերոսական կերպարները, որոնք հազիվ ուրվագծված էին ֆրանսիական կոմպոզիտորների կողմից, Բեթհովենի երաժշտության մեջ գտան իրենց կատարյալ զարգացումը:

Բեթհովենին վիճակվեց իրականության մեջ ի հայտ բերել այնպիսի օրինաչափություններ, որոնք երաժշտության ասպարեզում դեռևս չէին հայտնաբերվել: Երևույթների` նման նոր ու խոր ըմբռնումը հնարավոր դարձավ անցյալի և ժամանակի փիլիսոփաների, արվեստագետների որոնումների ու նվաճումների և, որ գլխավորն է, իր բացառիկ հանճարի շնորհիվ:

Սիստեմատիկ ընդհանուր կրթություն չստանալով, Բեթհովենը փոխհատուցեց այն անտիկ, վերածնության շրջանի և իրեն ժամանակակից գրական, պատմական ու փիլիսոփայական բազմազան աղբյուրների խոր ուսումնասիրությամբ: Նա կարդում էր Հոմերոս և Պլատոն, Էվրիպիդես և Արիստոտել, Պլուտարքոս և Տակիտոս, Շեքսպիր, Գյոթե, Շիլլեր, Կանտ և Կլոպշտոկ: Նա սովորում էր մեծ մտածողներից, նրանց մտքերին համակցում սեփական անկրկնելի մտորումների աշխարհը, դրսևորելով անմիջական ակտիվ նախաձեռնություն իրականության բարդ երևույթների և օրինաչափությունների գեղարվեստական ընդհանրացման ոլորտում:

Օրինաչափ էր մասնավորապես այն մեծ հետաքրքրասիրությունը, որ ցուցաբերեց Բեթհովենը Գյոթեի անձի ու գործի նկատմամբ: Գերմանական ժո-

դովրդի երկու խոշորագույն ներկայացուցիչներին, մեծահանճար մտածողներ Գյոթեին ու Բեթհովենին վիճակվեց ապրել եվրոպական քաղաքակրթության ծաղկման շրջանում և մեծապես ազդել ժամանակակից գրականության ու արվեստի զարգացման վրա: Նրանց վիճակվեց դրսևորել իրենց ազգի ուրույն հատկանիշները և, դրա հետ մեկտեղ, հանդես բերել համընդհանուր խոր հասկացողություն:

Իրականության պանթեիստական ընկալումը, բնության գովերգումը Բեթհովենի ու Գյոթեի մտածողության էական կողմերից մեկն է: Բնությունը նրանց համար միայն ներշնչանքի կենտրոնական աղբյուրներից մեկը չէր: Բնությունը սովորեցրեց նրանց զգալ իրականության հակասությունները, նրա վեհությունն ու գեղեցկությունը: Մարդը և բնությունը, կյանքը և կենսահաստատ ուժերի պայքարը խավարի դեմ, իրականության դրսևորման բազմապիսի ձևերը — այս համընդհանուր թեմաները Գյոթեի ու Բեթհովենի ստեղծագործություններում արտացոլվել են գեղարվեստական ընդհանրացման մեծ ուժով:

Գյոթեն գրականության, Բեթհովենը երաժշտության մեջ հանդես բերեցին մտքի ու զգացմունքների, մտորումների ու հույզերի այնպիսի խորություն և արտացոլման բազմազանություն, որ նրանց հետ չէր կարող համեմատվել նրանց ժամանակակիցներից ոչ մեկը:

Արվեստագետ և քաղաքացի Բեթհովենն ակնառու էր իր դեմոկրատական անհողդողդ հայացքներով, մինչդեռ Գյոթեն, ինչպես այդ հայտնի է բազում փաստերից, իր անձնական կյանքում որոշ տուրք էր տալիս շրջապատին: Հերտելին 1812 թ. գրած իր նամակում Բեթհովենը գրում է. «Գյոթեն չափից ավելի է գնահատում արքունական միջավայրը»: Բեթհովենի և Գյոթեի հանդիպումը Տյոպլից բուժավայրում չնպաստեց նրանց մտերմությանը, քանի որ Բեթհովենն իրեն հատուկ շիտակությամբ չթաքցրեց, որ ինքն սպասում էր տեսնել բանաստեղծների արքային, մինչդեռ տեսավ արքաների բանաստեղծին: Սակայն, չնայած անձնական հանդիպումից առաջացած անցողիկ հիասթափությանը, Բեթհովենը մինչև կյանքի վերջը չէր թաքցնում Գյոթեի նկատմամբ տածած իր հարգանքը և առաջիններից մեկն էր, որ երաժշտության մեջ անդրադառնալով նրա ստեղծագործություններին, ստեղծեց իր հռչակավոր երաժշտությունը Գյոթեի Էգմոնտի համար:

Բեթհովենի շնորհիվ երաժշտության մեջ առաջին անգամ իր գեղարվեստական արտահայտությունն է ստանում ՄԱՐԴԿՈՒԹՅՈՒՆ հավաքական հասկացողությունը: Մարդկությունն է այն ամենահզոր ուժը, որին, ըստ Բեթհովենի, ոչինչ չի կարող սպառնալ: «Մահկանացու է մարդը (անհատը), մարդկությունն անմահ է»: Այս գաղափարը դառնում է կոմպոզիտորի այնպիսի մոնումենտալ սիմֆոնիաների նշանաբանը, ինչպիսիք են՝ Երրորդը, Հինգերորդը և Իններորդը: Մարդկությունը Բեթհովենը դիտում է որպես գերագույն ուժ, որի առջև չկան արգելքներ ու պատնեշներ:

4

Բեթհովենը մեծագույն նորարար արվեստագետներից էր: Նրա երաժշտությունը նորարարական է իրականության արտացոլման բոլորովին յուրօրինակ, ինքնատիպ սկզբունքներով, երաժշտության մեջ արտահայտված գաղափարներով, մտորումների, հույզերի ու ապրումների խորությամբ: Նա նորարարական է գեղարվեստական այն համարձակությամբ, որը հնարավորություն է ընձեռել երաժշտության մեջ բացահայտելու այնպիսի ընդհանրացած





գաղափարներ, որոնք իր ժամանակի համար նոր էին, անսովոր: Նորարարությունը պահանջում էր ո՛չ միայն խնդրի նոր ըմբռնում և մեծ նպատակասլացություն, կամայնություն, ներքին մեծ համոզվածություն, այլև դրա իրականացման համար, գաղափարի մարմնավորման համար համոզիչ ձևի հաստատում:

Բեթհովենի երաժշտության մեջ նորարարության հետ մեկտեղ մեծ է ավանդույթների նշանակությունը: Այդ ավանդույթները կապված էին ինչպես որոշակի ժանրերի և դրանց հետագա զարգացման, այնպես և ոճական առանձնահատկությունների, գեղարվեստական սկզբունքների յուրացման հետ:

Բեթհովենը երբեք չընդօրինակեց իր նախորդներին և ժամանակակիցներին: Նա յուրացրեց Բախի արվեստին հատուկ կոմպոզիցիոն ամբողջականությունը, կուռ դրամատուրգիական սկզբունքները, երաժշտական թեմայի տնտեսական զարգացման վարպետությունը: Հենդելի երաժշտությունից նա սովորեց ստեղծել մոնումենտալ կտավներ, ամենապարզ միջոցներով հասնել հզոր ներգործման: Նա առինքնեց հոգեբանական այն խորաթափանցությունը, որը կազմում էր Մոցարտի երաժշտության ուշագրավ առանձնահատկություններից մեկը: Վերջապես՝ նրա անհատականությանը շատ մոտ ու հարազատ էր Հայդնի արվեստին հատուկ լավատեսական դեմոկրատական բնույթը:

Իրեն հատուկ հզոր անհատականությամբ Բեթհովենը կարողացավ նախորդների և ժամանակակիցների նվաճումները յուրացնել արտակարգ ինքնատիպությամբ, հասցնելով դրանք զարգացման բոլորովին նոր աստիճանի:

Եթե ավանդականը՝ դա օրինաչափ զարգացման ընթացքն էր, ապա՝ նորարարությունը զարգացման նոր հունի հայտնաբերումն էր: Այդպես, արվեստագետի մոտ ստեղծվում է բնական կապ ավանդույթների և սեփական նորարարական սկզբունքների միջև, որի լուծման հաջողությունը պայմանավորված էր տվյալ նորարարական նկրտումների, սկզբունքների հասունացմամբ: Բեթհովենի արվեստը լավագույն օրինակ է թե՛ ավանդույթների օրգանական յուրացման, թե՛ խոր տրամաբանված նորարարական սկզբունքների զարգացման: Նրա երաժշտության գեղարվեստական կատարելությունը պայմանավորված է ձևի ու բովանդակության արտակարգ ներդաշնակությամբ: Չկա մարդկային հույզերի ու ապրումների, մտքերի ու մտորումների այնպիսի ոլորտ, որն այս կամ այն ձևով չարտացոլվի կոմպոզիտորի գործերում: Նրան հավասարապես մոտ են հերոսականն ու դրամատիկականը, դյուցազնականն ու քնարականը: Մարդկությունն իր համընդհանուր ձգտումներով ու տենչերով, մարդն իր հոգեկան ապրումների նրբերանգներով Բեթհովենի երաժշտության առանցքն են կազմում:

Նրա երաժշտությանը հատուկ են քաղաքացիական բուռն պաթոս, զգացմունքների արտահայտման կրքոտություն, ներքին կռիվ ու երևակայության խոյանք, միաժամանակ՝ հայեցողական, նուրբ քնարական անմիջական ու անկեղծ հույզեր:

Կոմպոզիտորը չի մերժել իրեն նախորդող և ժամանակակից երաժշտության մեջ բյուրեղացած ձևերը, մասնավորապես երաժշտական այն ձևերը, որոնք մշակել ու զարգացրել էր վիեննական դասական դպրոցի հիմնադիր Իոսիֆ Հայդնը: Դրանք առավելապես, այսպես կոչված՝ «զուտ» գործիքային երաժշտության ձևերն էին, այսինքն՝ երաժշտական այնպիսի ձևեր, երբ կոմպոզիտորը, հրաժարվելով խոսքից, դրա հետ կապված ժանրերից (երգ, ռոմանս,

կամերգ, կանտատ, օպերա, օրատորիա և այլն), հիմնվում է զուտ երաժշտական արտահայտչամիջոցների վրա:

Հայդնի երաժշտության մեջ իրենց հիմնական ձևավորումն ստացած, Մոցարտի կողմից հետորեն զարգացված սոնատի, տրիոյի, կվարտետի, կոնցերտի և սիմֆոնիայի ձևերին դիմել է և Բեթհովենը ամեն անգամ, երբ այն համապատասխանել է իր սեփական մտածողության օրինաչափություններին: Բեթհովենի երաժշտությանը հատուկ բացառիկ կուռ կառուցվածքային կողմերին, խիստ տրամաբանության, հակադիր կերպարների բախմանը, կերպարների տևական զարգացմանն ամենից ավելի համապատասխանում էր, այսպես կոչված՝ սոնատային ձևը:

Բեթհովենին է պարտական երաժշտական արվեստը «զուտ» գործիքային երաժշտության ժանրերի գեղարվեստական հնարավորությունների բացարձակ ընդլայնմամբ, կատարելությամբ, հագեցվածությամբ: Մեծ է նրա վաստակը սիմֆոնիկ նախերգանքի ինքնուրույն նշանակության հաստատման գործում: Նա այնքան է մշակել նախերգանքի կոմպոզիցիան, խտացրել այն, որ վերջինս ստացել է ինքնուրույն գոյության իրավունք և մինչև օրս պահպանել իր գեղարվեստական վիթխարի ազդեցությունը (Էգմոնտ, Կորիոլան, Լեոնորա):

Բեթհովենին վիճակվեց ստեղծել միայն մեկ օպերա՝ Ֆիդելիոն. այս ևս հաստատում է նրա մշտական որոնումներն ավանդական ժանրերի հարստացման, փոփոխման ասպարեզում: Ժամանակակիցների համար խորթ էին օպերային ստեղծագործության մեջ սիմֆոնիկ նվագախմբի ֆունկցիայի ընդլայնումը, տարբեր օպերային ժանրերի առանձնահատկությունների միացումը: Այս ամենով Բեթհովենը, փաստորեն, խախտում էր քարացած պատկերացումները:

Երաժշտության պատմության մեջ առաջինը Բեթհովենն է հիմք դրել վոկալ ցիկլին: Հոգեվիճակի հետևողական բացահայտումն առաջացրեց նոր, անսովոր ձևի ստեղծումը— վեց երգերի միացում մի ընդհանուր բովանդակության մեջ, որը և ստացավ Հեռավոր սիրուհուս անվանումը: Երաժշտության հետագա զարգացումն ապացուցեց վոկալ ցիկլի կենսունակությունը, դրա գեղարվեստական հարուստ հնարավորությունները:

Բեթհովենի երաժշտությանը հատուկ է արտահայտչամիջոցների ներդաշնակությունը: Նա հավասարապես ուշադիր էր մեղեդու, հարմոնիկ և պոլիֆոնիկ միջոցների, մետրո-ռիթմիկ գծագրի, տոնայնական պատկերի, գործիքավորման և վերջապես, կոմպոզիցիայի ամբողջության նկատմամբ: Յուրօրինակ կոմպլեքսային մտածողություն է այդ, որի ժամանակ արվեստագետը հիանալի զգում է ո՛չ միայն առանձին բաղկացուցիչ մասերի նշանակությունը, այլև դիտում այդ բաղկացուցիչ մասերը մշտական, հետևողական համագործակցության մեջ: Նման կոմպլեքսային մտածողությունն առավել ավարտվածություն է հաղորդում նրա ստեղծագործություններին:

5

Բեթհովենի ստեղծագործական ժառանգությունը գրեթե առանց բացառության ընդգրկում է երաժշտության բոլոր ժանրերը: Ժանրային նման բազմազանությամբ, երաժշտության միջոցով լայն ու բազմակողմանի նա բացահայտում է իրականությունը: Բնական է, որ այդ ժանրերի մեջ կան Բեթհովենի խառնվածքին ավելի հարազատ ժանրեր և այնպիսիք, որոնց նա դիմել է կա՛մ պատահաբար, կա՛մ պատվերով:

Երգը Բեթհովենի համար տիպական ժանր չէր. սակայն այս ասպարեզում



էլ նրան վիճակվեց ստեղծել ուշագրավ մի գործ: Հրատարակիչ Թոմսոնի առաջարկությամբ Բեթհովենը ձեռնարկել է աշխարհի ժողովուրդների երգերի մշակումներին: Երաժշտության պատմության մեջ այդ գրեթե առաջին և իր ժամանակի համար եզակի մի դեպք էր, երբ կոմպոզիտորը դիմում է ամենատարբեր ժողովուրդների երգերին և իր մշակմամբ ներկայացնում լայն հասարակությանը: Դանիական և տիրոլական, իսպանական և իտալական, գերմանական ու շվեդական և, վերջապես, ռուսական և ուկրաինական ժողովրդական երգեր են տեղ գտել այդ՝ իր տեսակի մեջ հազվագյուտ ժողովածուում:

Բեթհովենի ստեղծագործական ժառանգության կարևոր բնագավառներից են նրա դաշնամուրային սոնատները: Սոնատների ստեղծման վրա Բեթհովենն աշխատել է մոտ 35 տարի, սկսած բոննական շրջանից, մինչև 1822 թ., երբ ստեղծվել է № 32 դո-մինոր սոնատը:

Սոնատը Բեթհովենի ստեղծագործական աշխատանքի լաբորատորիան է, նրա երաժշտական մտածողության ձևավորման ու հասունացման, նրա ոճական-գեղարվեստական սկզբունքների բյուրեղացման հիմնական բնագավառը: Կապված լինելով կոմպոզիտորի ստեղծագործական կյանքի բոլոր էտապների հետ, սոնատն արտացոլում է նրա ստեղծագործական էվոլյուցիայի բնորոշ կողմերը:

Բնության և մարդու ներաշխարհի հարստությունը բազմապիսի ձևերով արտացոլվում է նրա դաշնամուրային գործերում: Դաշնամուրային սոնատը նա հարստացնում է բովանդակությամբ, արտահայտելով դարաշրջանի հերոսական շունչը, մեծ կրքերը և ապրումները:

Կյանքը որպես պայքար, այդ պայքարի համար անհրաժեշտ հաստատակամությունը, կամքը, առնական ուժը, ինքնազոհությունը, ողբերգական փորձությունները, բազմիցս արտահայտվել են Բեթհովենի սոնատներում: Ժամանակի ընթացքում փոխվել են կոմպոզիտորի համար այդ կենտրոնական թեմաների մեկնաբանման ձևերը, սակայն միշտ պահպանվել է պայքարի, հակասությունների, կյանքից անբաժան բախումների գաղափարը:

1804 թ. Հերոսական սիմֆոնիայի հետ գրեթե միաժամանակ, Բեթհովենն ստեղծում է ֆա-մինոր (№ 23) Սոնատ ապասիոնատը: Համաշխարհային դաշնամուրային երաժշտության մեջ այս սոնատի նշանակությունը պայմանավորված է մտավորի և հուզականի արտահայտման անզուգական կատարելությամբ: Հույզերի վիթխարի լարվածությունը, տարերային հուժկու թափը, հսկայական ներքին դինամիկան արտակարգ կենտրոնացած ու կուռ են:

Արտակարգ մեծ է Բեթհովենի ներդրումը կամերային-գործիքային անսամբլների երաժշտության զարգացման ասպարեզում: Նրա 17 լարային կվարտետները պատկանում են կվարտետային երաժշտության ամենաարժեքավոր էջերին: Կոմպոզիտորի ակտիվ, նախաձեռնող բնավորության շնորհիվ, իր զարգացման նոր, կարևորագույն էտապն է ապրում ավանդական ձևերից մեկը՝ կոնցերտը: Անհատի (մենակատարի) և կոլեկտիվի (նվագախմբի) հարաբերությունները արտացոլված են բարդ ու բազմազան համագործակցությամբ:

Բեթհովենի բազմապիսի և հարուստ գեղարվեստական ժառանգության մեջ առանձնահատուկ նշանակություն ունեն նրա ինը սիմֆոնիաները, որոնք գրված են մոտ քառորդ դարի ընթացքում: Առաջինը— 1800, Իններորդը՝ 1824 թվականին: Կյանքը և մահը, լուսահորդ ազատությունն ու բիրտ բռնությունը, մարդկությանն սպառնացող չարագույժ ուժերը և հերոսական պայքարի պաթոսը— մարդկության հետ կապված այդ մշտնջենական թեմաները, իրենց բա-

ցառիկ վառ ու համոզիչ արտահայտությունն են գտնում կոմպոզիտորի սիմֆոնիաներում: Նրա սիմֆոնիկ մտածողության համար հիմնականը պայքարի ու հաղթահարման, բախման և միասնության, անհատականի ու ժողովրդականի սինթեզն է:

Բեթհովենի սիմֆոնիաները կատարյալ են և, թերևս, չգերազանցված դրամատուրգիական սկզբունքներով, բարձրագույն լարման կետերի վարպետ տեղաբաշխմամբ, դադարի ու շարժման, հայեցողականի ու լարվածության արտամաքանական հաջորդականությամբ:

Առաջին ստեղծագործությունը, որը ցույց տվեց երաժշտության մեջ համամարդկային գաղափարների արտացոլման բազմապիսի հնարավորությունները, Երրորդ կամ Հերոսական սիմֆոնիան է: Երրորդ սիմֆոնիայի հերոսական-փիլիսոփայական միտումն է զարգացնում Հինգերորդ սիմֆոնիան: Սիմֆոնիայի հիմնական գաղափարն է կայմում հերոսի պայքարը իրեն հակադրվող մույլ ու դաժան ուժերի դեմ:

Երաժշտության ընթացքի լարվածությունը և դինամիկան, զարգացման ինտենսիվությունն ու հագեցվածությունը, կերպարների կենսականությունը, հակասությունների սուր բախումը Հինգերորդ սիմֆոնիան դարձնում են ավելի այժմեական և մեր օրերին առավել հարազատ, քան որևէ այլ գործ: Այստեղ բազմակողմանի արտացոլված է պայքարող, արգելքները հաղթահարող հերոսի ներաշխարհը:

1822—24 թվականներին Բեթհովենն աշխատում է իր Իններորդ սիմֆոնիայի վրա, որին վիճակվեց եզրափակել նրա սիմֆոնիկ երաժշտության զարգացման բեղմնավոր ուղին: Մեծ հումանիստ արվեստագետն ստեղծեց մի գործ, որն ընդմիշտ կմնա իբրև լավատեսության, մարդասիրության ամենապայծառ ու վեհ հուշարձաններից մեկը: Իններորդ սիմֆոնիայում կոմպոզիտորը փաստորեն միացնում է սիմֆոնիայի և օրատորիայի սկզբունքները, որպես հիմք չորրորդ մասի համար դիմելով Շիլլերի Խնդության ներբողին:

«Իններորդ սիմֆոնիան,— գրել է Ռոմեն Ռոլանը,— գետերի միաձուլումն է: Այստեղ հանդիպել ու միախառնվել են բազմաթիվ հոսանքներ՝ ամենահեռավոր ու բազմապիսի երկրներից, բոլոր տարիքի մարդկանց անուրջներն ու հույսերը»: Իններորդ սիմֆոնիան ազատություն տենչացող մարդկության հաղթական երգն է և, որպես այդպիսին, մնում է չգերազանցված:

Բեթհովենին, նրա կյանքին ու գործին նվիրվել են հազարավոր գրքեր, տասնյակ հազարավոր հոդվածներ, ուսումնասիրություններ, բազմաթիվ և բազմապիսի գեղարվեստական գործեր: Նրա արվեստին դիմել և դիմում են ամեն տարիքի երաժիշտներ— և՛ մանուկները, և՛ աշխարհահռչակ արվեստագետները: Չկա երաժշտություն առանց Բեթհովենի:

Խավարից-լույսը արվեստագետի երաժշտության: այս խորհրդանիշը լավագույն արտահայտությունն է նրա կենսահաստատ, մարդկությունը ներբողող արվեստի:



# ՊՐՈԲԼԵՄԱՅԻՆ ՏԵՍԱԿԱՆ ՍԵՄԻՆԱՐՆԵՐ

**Իմպերիալիզմի արտաքին քաղաքական գաղափարախոսության դասակարգային էությունը ● Ռազմա-արդյունաբերական կոմպլեքսը հակակոմունիզմի հիմնական սոցիալական հենարանն է ● Ռեակցիայի քաղաքական և գաղափարախոսական դիվերսիաների ակտիվացումը ● Հակակոմունիզմի արտաքին քաղաքական տակտիկայի փոփոխումը:**

Գ. ՏՐՈՖԻՄԵՆԿՈ

## ՀԱԿԱԿՈՄՈՒՆԻԶՄԸ ԵՎ ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Հակակոմունիզմը իմպերիալիզմի գաղափարական-քաղաքական գլխավոր զենքն է, այն իմպերիալիստական առաջատար պետությունների արտաքին քաղաքական կուրսի հիմքն է:

Թաքնվելով համաշխարհային կոմունիզմի դեմ պայքարի լոզունգով, իմպերիալիստները կազմակերպում են ռազմական ագրեսիվ բլոկներ, պատերազմներ են մղում ազգային-ազատագրական շարժման դեմ, ռեպրեսիաների են ենթարկում դեմոկրատական ուժերին: Հանդես գալով համաշխարհային ժանդարմի դերում, և ճնշելով ժողովրդական մասսաների հեղափոխական պայքարը, իմպերիալիզմն ավելի է ուժեղացնում լարվածությունը միջազգային ասպարեզում: Խաղաղության գործի համար վտանգավոր իրենց գործողությունները իմպերիալիստները կատարում են, որպես կանոն, հակակոմունիզմի դրոշի տակ:

* * *

Խոշորագույն կապիտալիստական երկրների արտաքին քաղաքականության մեջ հակակոմունիզմը որոշիչ դեր սկսեց խաղալ այն պահից ի վեր, երբ պատմության ասպարեզ եկավ աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը՝ Սովետական Ռուսաստանը: Պարզաբանելով իմպերիալիզմի արտաքին քաղաքականության մեջ հակակոմունիզմի տարրը, որոշ բուրժուական պատմաբաններ ուզում էին ողջ գործը բացատրել «Արևմուտքի կապիտալիստական կառավարությունների նկատմամբ սովետական իշխանության տածած ինչ-որ թշնամությամբ»: Հակասովետիզմը՝ հակակոմունիզմի այդ գլխավոր տարատեսակը, նրանք փորձում են պատկերել որպես իմպերիալիստական պետությունների ուղղակի բացասական հակազդեցությունն ի պատասխան Ռուսաստանում խոշոր կալվածատիրական և կապիտալիստական սեփականության ազգայնացման և սովետական իշխանության հակակապիտալիստական մյուս միջոցառումների, այդ թվում նաև իմպերիալիստական առաջին համաշխարհային պատերազմը շարունակելու գործում Անտանտի տերություններ-

ար կոչել նույնիսկ «տեխնոլոգիական պատերազմ», որում հաղթանակողը հեշտությամբ կարող է իշխող ուժ դառնալ միջազգային հարաբերություններում»[8]։

ԱՄՆ-ի պաշտպանության այժմյան մինիստր Մելվին Լեյրդն իր կոնգրեսմեն եղած ժամանակ կոչ էր անում ձևավորելու «ամերիկյան հաջող ստրատեգիա»։ Նա գրում էր. «Նախ, այդ ստրատեգիան պետք է նպատակ ունենա զսպումը, ընդ որում ոչ թե պարզապես պատերազմի զսպումը, այլ կոմունիզմի տարածման զսպումը։ Երկրորդ, եթե զսպումը հաջողություն չի գտնի, ապա ստրատեգիան պետք է ուղղված լինի զինված պայքարի, հաղթանակի ու վերականգնման» [9]։ Մինիստրի պոստում Մ. Լեյրդն ավելի մեծ զգուշություն է հանդես բերում իր արտահայտություններում։ Սակայն այժմ էլ մի շաբաթ չի անցնում, որ ԱՄՆ-ի պաշտպանության մինիստրը հանդես չգա «Սովետական Միության կողմից սպառնացող վտանգի վերաբերյալ» հերթական հայտարարությամբ։ Նման պրոպագանդայի նպատակներից մեկն է ամերիկյան ժողովրդին ստիպել համաձայնվելու ռազմական լրացուցիչ հատկացումների վերաբերյալ զինվորականության չափ ու սահման չիմացող պահանջների բավարարմանը։

Ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությունը Միացյալ Նահանգների բնակչությանն է մատուցվում որպես զուտ պաշտպանական միջոցառումների կոմպլեքս։ Իմպերիալիստները հայրենասիրության կոչ են անում քաղաքացիներին և պահանջում են նրանց առավել մասնակցությունը «թշնամուն հակահարված տալու» գործի կազմակերպմանը, քանի որ վերջինիս բացակայությունն իբր կարող է սպառնալիքի տակ դնել ամբողջ ազգի և յուրաքանչյուր առանձին անհատի բարօրությունը։ Հենց դա է պրոպագանդիստական միանգամայն տարածված այն ստերեոտիպը, որն օր-օրի համառորեն փաթաթվում է ԱՄՆ-ի ժողովրդի վզին։

Իրենց հակակոմունիստական պրոպագանդայում իմպերիալիստները դիմում են սուր ու անհեթեթ այնպիսի լոզունգների ձևով ստանդարտ կլիշեների օգնությանը, ինչպես՝ «Մարդ ավելի լավ է մեռած լինի, քան կարմիր»։ Նման ստերեոտիպներ հորինելով ու ամերիկյան ժողովրդի վզին փաթաթելով, ԱՄՆ-ի ռազմա-արդյունաբերական կոմպլեքսի գաղափարախոսները գործում են այն օրենքներով, որոնք Վ. Ի. Լենինը դիմակազերծ է արել դեռևս առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ։ Բուրժուազիան ինչպես որ այն ժամանակ եռանդուն կերպով դիմում էր հայրենասիրական զգացմունքներին, այնպես էլ նույն բանն է անում նաև այժմ, միայն նորացնելով ու մոդայիկ դարձնելով համապատասխան լոզունգները, որոնք այժմ հարմարեցված են փոփոխված միջազգային իրադրությանը, և ամենից առաջ համաշխարհային բեմում սոցիալական երկու հակադիր սիստեմների՝ սոցիալիզմի ու կապիտալիզմի գոյության փաստին։

* * *

Ագրեսիվ պատերազմի նախապատրաստման նպատակով շարունակելով սպառազինությունների մրցավազքը, իմպերիալիստները դրա հետ մեկտեղ չեն կարող հաշվի չառնել ուժերի հարաբերակցության այն փոփոխումը, որը տեղի է ունեցել աշխարհում։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հարաճուն տնտեսական ու պաշտպանական հզորությունը կաշկանդում է իմպերիալիզմին, սահմանափակում հակահեղափոխություն «արտահանելու» նրա հնարավորությունները։ Գաղափարական և քաղաքական մեր հակառակորդները կամա-ակամա ստիպված են հաշվի նստել խաղաղ գոյակցության քաղաքականության հետ, որը վարում են ՍՍՀ Միությունը և մյուս սոցիալիստական երկրները։

Բայց որքան իմպերիալիստների համար նվազում են սոցիալիզմի դեմ ճակատային գրոհ ձեռնարկելու հնարավորությունները, այնքան նրանք ավելի ու ավելի ակտիվացնում են իրենց գաղափարախոսական ու քաղաքական դիվերսիաներն արդիականության հեղափոխական ուժերի՝ սոցիալիստական երկրների, բանվոր դասակարգի և ազգային ազատագրական շարժման դեմ։

Հակակոմունիզմի ստրատեգիայի ամերիկյան ականավոր տեսաբաններից մեկը՝ Ուիլյամ Կինտները նշել է, որ Վաշինգտոնն իր ուշադրությունը չափից ավելի է կենտրոնացնում ռազմական պատրաստությունների վրա և թերագնահատում է հակակոմունիստական պայքարի քաղաքական հնարավորությունները։ Ամերիկյան իմպերիալիզմի պարագլուխներին կոչ անելով ուժեղացնել ուշադրությունը գաղափարախոսության հարցերին, Կինտները գրում է. «Քաղաքական պատերազմի հիմքը գաղափարախոսական պայքարն է, պայքարը հանուն գերազանցող գաղափարի, որը դեպի սոցիալական փոփոխումների որոնումներն է առաջնորդում ժողովուրդներին... Քաղաքական ու ռազմական ստրատեգիան իր ուժն է ստանում հիմնարար այն գաղափարների և արժեքների զորությունից ու համոզչությունից, որոնք ձևավորում են ազգի

[8] Gen. Nathan F. Twining. Neither Liberty, Nor Safety:, A Hard Look at U. S. Military Policy and Strategy. New York—Chicago—San Francisco, 1966, pp. 276, 282,

[9] Melvin R. Laird. A House Divided: America's Strategy Gar. Ghicago, 1962, p. 53.



նպատակները մնացած աշխարհի նկատմամբ»[10]։

Սոցիալիզմի դեմ մղվող գաղափարախոսական պայքարում բուրժուական տեսաբանները փորձում են քողարկել երկու գաղափարախոսությունների ու քաղաքական սիստեմների բախման դասակարգային բնույթը։ Նրանք ուզում են գործն այնպես պատկերել, թե կապիտալիզմի ու սոցիալիզմի հիմքում իբր ընկած է պայքարն ընդամենը երկու մեծ տերությունների՝ Սովետական Միության և Միացյալ Նահանգների միջև։ Իր աշխատություններում հենց այդ տեսակետն է անցկացնում վերը հիշված պրոֆեսոր Մ. Շուլմանը։ «Արդյոք կոնֆլիկտն իր հիմքում հանդիսանո՞ւմ է կոնֆլիկտ երկու գաղափարախոսությունների, երկու քաղաքական սիստեմների, երկու ռազմական մեքենաների միջև»,— հարց է տալիս նա։ Եվ տեղնուտեղը պատասխանում է, թե այդպիսի վիճակն առաջին հերթին հարկավոր է հասկանալ որպես «կոնֆլիկտ ռազմական իշխանության և քաղաքական գերիշխանության համար մրցող երկու գերբացառիկ ռազմական տերությունների միջև»[11]։

Այսպիսով, սոցիալական կոնֆլիկտը զրկելով դասակարգային բովանդակությունից, որն իրենից ներկայացնում է արդի դարաշրջանի հիմնական հակասության կարևորագույն դրսևորումը, Մ. Շուլմանն արտասովոր դյուրությամբ սկսում է անցկացնել իր հին դատողությունը ՍՍՀ Միության և ԱՄՆ-ի «սահմանափակ մրցակցության» հարաբերությունների մասին։ Նման տեսականացումը փաստորեն ուղղված է կապիտալիստական երկրների հասարակայնությունը ապակողմնորոշելու և երկու սիստեմների ու երկու գաղափարախոսությունների դասակարգային հակամարտությունը որպես բացառապես միջպետական և արտաքին քաղաքական կոնֆլիկտ պատկերելու նպատակին։

Սոցիալիզմի երկրների դեմ մղվող պայքարում իմպերիալիզմի կարևոր զենքն է նաև սոցիալիստական պետությունների պառակտում կազմակերպելու հույսը, մեկ երկրի հակադրումը մյուս երկրներին։ Այդ քաղաքականությունը, ինչպես հայտնի է, իր արտացոլումն է գտել «կամուրջներ գցելու» դոկտրինայում, որն իր ժամանակին հռչակել է ԱՄՆ-ի պրեզիդենտ Լ. Ջոնսոնը։ Դրա հիմքն է սոցիալիզմի համաշխարհային սիստեմում այսպես կոչված պոլիցենտրիզմի զարգացմանը նպաստելու տեսությունը։ Այդ տեսությունը մանրամասնորեն մշակվել է Ջ. Քեննանի, Զբ. Բժեզինսկու և ամերիկյան մյուս սովետագետների գրքերում ու հոդվածներում։

«Ազատագրման» դոկտրինային հաջորդած «կամուրջներ գցելու» դոկտրինան և նրա տարբեր վարիանտները ԱՄՆ-ի հակակոմունիստական քաղաքականության ակներև ձախողումները հաշվի առնելու և Եվրոպայում փոփոխված պայմաններին իմպերիալիստական ստրատեգիան ու տակտիկան այս կամ այն չափով հարմարեցնելու փորձեր էին։

Եթե «ազատագրման» դոկտրինան բացառում էր Արևելյան Եվրոպայում ստեղծված ստատուս-քվոյի ճանաչումը, ապա «կամուրջներ գցելու» դոկտրինան արտաքուստ ելակետ է ընդունում այժմյան վիճակի և գոյություն ունեցող սոցիալական սիստեմների ճանաչումը, թեև նրա վերջնական նպատակն էր հենց այդ ստատուս-քվոյի փոփոխումը՝ սոցիալիստական երկրներում կապիտալիստական նախկին կարգերը վերականգնելու միջոցով։ «Ազատագրման» դոկտրինան ընդունում էր տվյալ նպատակի իրականացման համար այսպես թե այնպես ՆԱՏՕ-ի ռազմական ուժն օգտագործելու հնարավորությունը։ Դրան հակառակ «կամուրջներ գցելու» դոկտրինան այդպես բացահայտ առաջին պլանի վրա չէր քաշում ռազմական միջոցները, այլ կողմնորոշվում էր դեպի կապիտալիզմ սոցիալիստական պետությունների «ներքին էվոլյուցիայով»։ Նման «էվոլյուցիան» ըստ նույն Զբ. Բժեզինսկու, իրականացվում է վերևից, գլխավորապես քաղաքական իշխանությունը նացիոնալիստական այն տարրերի կողմից խլելու միջոցով, որոնք վարակված են «տեխնոկրատացման», «եվրոպականացման» և բուրժուական այլ տեսություններով։

Արևմտաեվրոպական պետությունների համար ամեն կերպ պաշտպանելով ինտեգրացիայի սկզբունքը, բուրժուական տեսաբանները տրամագծորեն հակառակ մոտեցում են ցույց տալիս, երբ խոսքը Արևելյան Եվրոպայի սոցիալիստական երկրների մասին է լինում։ Վերջիններիս համար նրանք առաջարկում են ոչ թե ինտեգրացիա, այլ համապարփակ ազգային ինքնամփոփություն ու մեկուսացածություն։ Այդ տեսության պրոպագանդման օգնությամբ իմպերիալիստական գաղափարախոսները ձգտում են նացիոնալիզմ հրահրել և այն օգտագործել սոցիալիստական երկրների միասնությունը պառակտելու համար։

Իմպերիալիստական ռեակցիային առանձնապես կատաղեցրեց ձախողումը ՉՍՍ Հանրապետությունը սոցիալիստական երկրների միասնությունից անջատելու այն փորձերի, որ անում էին հակահեղափոխական և հակաչեխոսլովակյան ուժերը ինչպես Չեխոսլովակիայի ներսում, այնպես էլ արտասահմանում։ Վերլուծելով

[10] „National Security. Political, Military, and Economic Strategies in the Decade Ahead". New York—London. 1963, p. 390.

[11] Marshall D. Shulman. Նշված երկը, էջ 373, 374։

հայտնի իրադարձությունները Չեխոսլովակիայում և համաշխարհային իմպերիալիզմի պլանների ձախողումը, Վաշինգտոնի հակակոմունիստական ստրատեգիայի տեսաբաններից և, ինչպես երևում է, պրակտիկներից մեկը, որը թաքնվում է Ջորջ Գրոսս կեղծանվան տակ, ամերիկյան «Ռաշեն ռևյուի» էջերում հանդես եկավ ընդարձակ խորհուրդներով Եվրոպայի սոցիալիստական երկրների նկատմամբ ԱՄՆ-ի քաղաքականության առթիվ։

Ջ. Գրոսսի կարծիքով չեխոսլովակյան հակահեղափոխականները թույլ էին տվել սխալ, իրենց ջանքերը կենտրոնացնելով այնպիսի ռեֆորմների հարցի վրա, որոնց իրականացումը այսպես թե այնպես կհանգեցներ իշխանությունից կոմունիստների հեռացմանը։ «Ազատության» ուժերը, խրատում է ամերիկացի հեղինակը, առաջին հերթին պետք է միավորվեին ոչ թե հակակոմունիստական ռեֆորմիզմի, այլ նացիոնալիզմի պլատֆորմի վրա, և այդ դեպքում ավելի շատ կլինեին նրանց հաջողության շանսերը։ Զարգացնելով իր այդ գաղափարը, նա գրում է, որ հակահեղափոխական ուժերը հաջողության ավելի մեծ շանսեր կունենան, եթե հանդես գան սոցիալիստական սիստեմի շրջանակներում ստատուս-քվոյի փոփոխման օգտին, քան սկզբից հուշակեն ռեֆորմիստական լոզունգներ։

Այդ կապակցությամբ Գրոսսը քննության է առնում նոր պայմաններում Եվրոպայի սոցիալիստական երկրների նկատմամբ իմպերիալիստական քաղաքականության հնարավոր տարբեր ուղղությունները։ «Հակակոմունիստական շարժումների խթանումը,— հոռետեսորեն արձանագրում է նա,— հնարավոր չէ արևելաեվրոպական ռեժիմի կայունության և ՍՍՀ Միության ռեալ հզորության պատճառով, և նման կուրսը ցանկալի չէ նաև այն արդյունքի պատճառով, որ կարող է ունենալ ԱՄՆ-ի և ՍՍՀ Միության հարաբերություններում»[12]։ Վաշինգտոնն իր հիմնական ուշադրությունը պետք է կենտրոնացնի ոչ թե հակակոմունիզմի խրախուսմանն այդ երկրներում, այլ տնտեսական միջոցառումների, պրոպագանդայի և այլ միջոցների օգնությամբ նացիոնալիզմի հրահրմանը։

* * *

Ջ. Գրոսսի և ուրիշ շատ հեղինակների ելույթներից երևում է, որ հակակոմունիստական ստրատեգները համաշխարհային սոցիալիզմի դեմ իրենց պայքարում այժմ շեշտը դնում են այսպես կոչված «ազգային կոմունիզմի» գալվանացման և սոցիալիստական համագործակցության պետությունների միասնությունն ու համախմբվածությունը այդպիսի կոմունիզմի հակադրման վրա։ Այսպիսով, առկա է հակակոմունիստական պայքարի տակտիկայի որոշակի փոփոխություն, որին ուշադրություն դարձրեց կոմունիստական ու բանվորական կուսակցությունների մոսկովյան խորհրդակցությունը։ Տարակույս չկա, որ անտիկոմունիզմի տակտիկան կարող է առաջիկայում ևս փոփոխություններ կրել, հենց որ իմպերիալիստական գաղափարախոսական դիվերսիաների այս կամ այն ձևերն ու քայլերը կասեցվեն սոցիալիստական երկրների և արդիականության բոլոր հեղափոխական ուժերի համերաշխ գործողություններով։

Իմպերիալիզմի հիմնական դրույթների անփոփոխ պահպանմամբ հանդերձ գաղափարախոսական պայքարի տակտիկայում նման փոփոխությունների թվին են պատկանում նաև ամերիկյան պրոպագանդայի դատողություններն այն մասին, թե ներկայումս տեղի ունի Սովետական Միության հետ «ոչ թե կոնֆրոնտացիայի, այլ բանակցությունների քաղաքականություն»։ Այդ կոչին իմպերիալիստների մոտեցման մեջ որոշ չափով նկատվում է պրոպագանդիստական դիվանագիտական մի քայլ, որը տուրք է տալիս ամերիկյան և համաշխարհային հասարակայնության տրամադրություններին։ Մասնավորապես Վաշինգտոնն ստիպված է հաշվի առնել ԱՄՆ-ի բնակչության լայն խավերի ճնշումը, որոնք պահանջում են հրաժարվել արտաքին քաղաքական ավանտյուրաներից և ստիպում են, որպեսզի կառավարությունն ուշադրությունը կենտրոնացնի Ամերիկայի ներքին «ցավոտ պրոբլեմների» լուծման՝ ռասայական խտրականության դադարեցման, աղքատության ու գործազրկության վերացման վրա և այլն։ Դրա հետ մեկտեղ հակամարտությունից բանակցություններին անցնելու թեզիսը վկայում է նաև, որ ամերիկյան իմպերիալիզմն ընդունում է, որ զինված պայքարի միջոցներով անհնար է կասեցնել Սովետական Միության հաղթական առաջընթացը։

Որոշակի պատրաստակամություն ցուցաբերելով Սովետական Միության հետ բանակցություններ վարելու մի քանի պրոբլեմների, մասնավորապես ստրատեգիական սպառազինությունների մրցավազքի սահմանափակման հարցի շուրջը, ԱՄՆ-ի ղեկավար շրջաններն ամենևին չեն հրաժարվում ամենաակտիվ հակամարտությունից ամենուրեք, ուր հաջողության սպասելով կարող են իրենց թույլ տալ դա։ Ինչպես ցույց են տալիս Վաշինգտոնի գործնական քայլերը, նա ձգտում է է՛լ ավելի ինտենսիվ դարձնել քաղաքական-գաղափարախոսական պայքարը սոցիալիզմի երկրների դեմ։

[12] *G. Gross. Communism Divided: Some Considerations for American Policy, part II—„The Russian Review„, July 1969, p. 271.*



Որոշակի փոփոխություններ են տեղի ունենում նաև «ծայրագավառներում կոմունիզմի դեմ մղվող պայքարի» ամերիկյան տակտիկայում. ԱՄՆ-ի իմպերիալիստներն այդպես են անվանում ազգային ազատագրական շարժման դեմ մղվող իրենց հակահեղափոխական «լոկալ պատերազմները»։

Պատերազմ սանձազերծելով Վիետնամում, ամերիկյան իմպերիալիզմը ոչ միայն ձգտում էր կործանումից փրկել սայգոնյան մարիոնետային ռեժիմը և, հետևապես, Հնդկաչինի թերակղզում պահպանել իր ռազմական պլացդարմը, այլև հետապնդում էր ավելի հեռավոր նպատակներ։ Այսպես, Ռ. Նիքսոնը «վճռական հաղթանակ» պահանջելով Վիետնամում, 1964 թվականին գրում էր. «...այժմ իրադրությունն աննախընթաց բարենպաստ հնարավորություն է տալիս կոմունիստական ալիքը ետ շպրտելու ոչ միայն Հարավային Վիետնամից, այլև ամբողջ Հարավ-Արևելյան Ասիայից, այլև համայն աշխարհից»[13]։

Բայց Սովետական Միությունը և մյուս սոցիալիստական երկրներն անհրաժեշտ և բազմակողմանի օգնություն ցույց տվին վիետնամական ժողովրդին իր ազատության ու անկախության համար մղվող հերոսական պայքարում։ Դրա շնորհիվ ամերիկյան ագրեսորները չկարողացան զենքի ուժով ճնշել Վիետնամի հայրենասերների քաջարի դիմադրությունը։ Զավթիչ իմպերիալիստները բարոյական, քաղաքական և փաստորեն ռազմական պարտություն կրեցին Վիետնամում։ 1969 թվականի մայիսին պրեզիդենտ Նիքսոնը հրապարակայնորեն խոստովանեց, որ Վիետնամում ստիպված եղավ «հրաժարվել ռազմադաշտում զուտ ռազմական որոշումը հակառակորդի վզին փաթաթելու փորձ անելուց»[14]։

Փորձելով ինչ-որ հետևություններ անել Հարավ-Արևելյան Ասիայում իրենց ագրեսիայի ձախողման փաստից, ԱՄՆ-ի կառավարող շրջանները հանդես եկան ոչ անհայտ «Նիքսոնի դոկտրինայով», որը կոչված էր որոշ չափով ձևափոխելու հակահեղափոխական «լոկալ պատերազմի» տակտիկան։ Այդ դոկտրինային համապատասխան Վաշինգտոնը մտադիր է նվազեցնել ամերիկյան զինված ուժերի անմիջական մասնակցությունը Միացյալ Նահանգների սահմաններից դուրս ագրեսիվ գործողություններին և ազգային-ազատագրական շարժման դեմ մղվող պայքարի ծանրությունը դնել ԱՄՆ-ի դաշնակիցների ու արբանյակների վրա, պահպանելով հանդերձ իր գլոբալ «ռազմական ներկայությունը»։

Սակայն հակահեղափոխական զինված պայքարում ինչպե՞ս կարող են հաջողություն ունենալ ԱՄՆ-ի արբանյակները, երբ պարզվում է, որ ամերիկյան իմպերիալիզմն ինքն ի վիճակի չէ գլուխ հանելու ժողովրդական շարժումներից։ Խոսելով կոնկրետ Ասիայի մասին, կարելի է նաև մի ուրիշ հարց տալ. որքա՞ն գործուն է «տեղական ռեժիմների վրա հենվելու» վաշինգտոնյան քաղաքականությունը ԱՄՆ-ի հակակոմունիստական ընդհանուր ստրատեգիայի մեջ, եթե այդ ռեժիմներից շատերն իրենք են պահպանում իրենց գոյությունը բացառապես ամերիկյան սվինների շնորհիվ։ Կյանքն ապացուցում է, որ «Նիքսոնի դոկտրինան» անիրագործելի երազ է և ոչ թե կոնցեպցիա, որը կարողանա իրական հաջողություններ բերել ամերիկյան իմպերիալիստներին։

Դեռ մինչև «Նիքսոնի դոկտրինայի» հռչակումը ՄԱԿ-ում ԱՄՆ-ի այժմյան ներկայացուցիչ Չարլզ Յոստն ուշադրություն դարձրեց հակաապստամբական պատերազմի ամերիկյան տակտիկայի հիմնական թուլության վրա։ «Վիետնամի դասի գլխավոր նշանակությունը,— գրել է նա,— ըստ երևույթին, այն է, որ ԱՄՆ-ը ինչքան էլ ուժ գործադրեն, չեն կարող ապահովել անվտանգությունը մի երկրի, որի կառավարությունն ի վիճակի չէ մոբիլիզացնելու և պահպանելու բնակչության աջակցությունը»[15]։

Դրան պետք է ավելացնել, որ այդ «Վիետնամի դասը» վերաբերում է ո՛չ միայն ամերիկյան ինտերվենցիային Հնդկաչինում, այլև ուրիշ շատ իրադրությունների, երբ ԱՄՆ-ի իմպերիալիստները փորձում են տեղական բնակչության կամքին հակառակ փրկել նեխած ռեժիմները։ Եվ այն փաստը, որ Միացյալ Նահանգներն այժմ հեղափոխական շարժումը փորձում են խեղդել ո՛չ թե սեփական, այլ ուրիշի ձեռքերով, հազիվ թե դյուրացնի նման խնդրի լուծումը նրանց համար։

«Նիքսոնի դոկտրինան» ունի քաղաքական-հոգեբանական ևս մի կողմ, որը կարևոր է հակակոմունիզմի ամերիկյան քաղաքականության մեջ այժմյան շրջադարձերը հասկանալու համար։ Մինչև հիմա ամերիկյան իմպերիալիզմը համաշխարհային ռեակցիայի ամբողջ հակակոմունիստական պայքարի ոչ միայն գաղափարական գլխավոր պարագլուխն էր, այլև կոմունիզմի դեմ զանազան խաչակրած արշավանքների անմիջական կազմակերպիչն ու նախաձեռնողը։ Ուստի համաշխարհային հասարակայնության կողմից «սառը պատերազմի» գործողությունների բարոյական դատապարտման ողջ ուժն առաջին հերթին և հիմնականում ուղղված էր Վաշինգտոնի դեմ։

[13] *„Reader's Digest„, August 1964, p. 38.*
[14] *"International Herald Tribune„, May 16, 1969.*
[15] *„Foreign Affairs", October 1968, p. 9.*

Այն ողջ խայտառակությունը, որն առաջանում էր զանազան հակահեղափոխական ինտերվենցիաների և հակակոմունիստական պրովոկացիաների ձախողման հետևանքով, վերջին հաշվով վերաբերում էր ԱՄՆ-ի պարագլուխներին։ Փորձելով խուսափել դրանից, ամերիկյան ղեկավարությունը միշտ ձգտում էր «ազատ աշխարհի» երկրների «կոլեկտիվ գործողությունների» քողի տակ թաքցնել հակակոմունիստական իր գործողությունները։

Ինչպես ցույց տվեց 1969—1970 թվականներին սենատի արտաքին գործերի հանձնաժողովի Սայմինգտոնի ենթահանձնաժողովի կատարած հետազոտությունը, հիմնական պատճառն այն բանի, որ ամերիկյան կառավարությունն այնքան եռանդուն կերպով թաքցնում էր Վիետնամում ինտերվենցիային մասնակցող թաիլանդյան և օտարերկրյա այլ զորամասերին Միացյալ Նահանգների կողմից տրվող լրացուցիչ վարձատրության փաստերը, հանդիսանում էր այդ զորքերը ոչ թե որպես վարձկաններ, այլ որպես «Հարավային Վիետնամի ընդհանուր պաշտպանության գործում կամավոր կերպով ԱՄՆ-ին միացած զորքեր» պատկերելու ձգտումը[16]։ Սակայն նման գունազարդումը քիչ օգնեց Վաշինգտոնին։ Չէ՛ որ Միացյալ Նահանգներն այնուամենայնիվ ստիպված են փաստորեն մենակ կրել բարոյական պատասխանատվությունը Վիետնամում իրենց ինտերվենցիայի ձախողման համար, կրել որպես պատիժ ամերիկյան հասարակության սոցիալական խոր պառակտումը, ԱՄՆ-ի քաղաքականության դատապարտումն աշխարհի հասարակայնության կողմից ամենուրեք։

1970 թվականի սեպտեմբերի 16-ին ԱՄՆ-ի կառավարության բարձրաստիճան մի պաշտոնյա, հանդես գալով ամերիկյան թերթերի արտաքին քաղաքական տեսաբանների համար հրավիրված հրահանգչական խորհրդակցությունում և փորձելով հերքել Հարավ-Արևելյան Ասիայում ծավալած իրենց գործողությունների պատճառով աշխարհում բարոյապես ԱՄՆ-ի մեկուսացման փաստը, հայտարարեց բառացիորեն հետևյալը. «Մի՞թե զարմանալի չէ, որ ուր էլ գնա պրեզիդենտը, ինչպիսի ղեկավարներ էլ որ ներկայանան ձվաձև նրա աշխատասենյակը,— իսկ ես ներկա եմ եղել նրա մոտ տեղի ունեցած գրեթե բոլոր զրույցներին,— մենք դեռ ոչ մի անգամ չենք հանդիպել օտարերկրյա այնպիսի պետական գործչի, որը մեզ ասեր. «Ի սեր աստծո, հեռացեք Վիետնամից»... Նրանք գրեթե բոլորն էլ, պաշտոնապես ինչ էլ որ հայտարարելու լինեն, ձվաձև աշխատասենյակում ասում են դրա ուղիղ հակառակը»։

Բայց այստեղ «զարմանալի է» բոլորովին մի այլ բան։ ԱՄՆ-ի քաղաքականության հասարակական դատապարտումն աշխարհում այնքան մեծ է, որ նույնիսկ առավել հօգուտ Ամերիկայի տրամադրված օտարերկրյա գործիչները, կուլուարային զրույցների ժամանակ որքան էլ ԱՄՆ-ի պրեզիդենտին հաճոյանալու համար համաձայնվեն նրա ասածներին, հրապարակորեն սիրտ չեն անում հանդես գալ ի պաշտպանություն ամերիկյան քաղաքականության։ Հենց այդ պատճառով էլ, ինչպես հակասելով իրեն խոստովանեց ԱՄՆ-ի կառավարության նույն ներկայացուցիչը, երկրագնդի բոլոր մասերում միաժամանակ հակակոմունիստական ստրատեգիա վարելը վեր է ոչ միայն ԱՄՆ-ի ֆիզիկական ուժերից, այլև նրանց հոգեբանական ռեսուրսներից։ Մյուս երկրները, հայտարարեց նա, պետք է իրենց վրա վերցնեն «հոգեբանական բեռի... մի մասը»։

Մյուս երկրներին փաթաթելով «Նիքսոնի դոկտրինան», ԱՄՆ-ի իմպերիալիստները ձըգտում են նրանց վրա դնել ոչ միայն ազգային ազատագրական շարժման դեմ մղվող պայքարի ֆիզիկական բեռի մի մասը, այլև հակահեղափոխական գործողությունների գլխավոր բարոյական ծանրությունը, ստիպելով նրանց հանդես գալու որպես ագրեսիվ գործողությունների ձեռնարկողներն ու նախաձեռնողները։ Ամերիկյան իմպերիալիզմի պարագլուխները հուսով են, որ այդ ձևով իրենց կհաջողվի թաքնըվել երկրորդական գործող անձանց թիկունքում, հակահեղափոխական պայքարի ստրատեգիայի հերթական ձախողումների և անհաջողությունների դեպքում «քավության նոխազ» դարձնել այդ անձանց։ ԱՄՆ-ի շտաբների պետերի կոմիտեի այժմյան նախագահ ադմիրալ Մուրերը զինվորական անկեղծությամբ «ամերիկյան նշմարելիության նվազում» անվանեց ձևափոխված այդ տակտիկան։

Փորձելով իրենց դաշնակիցների ուսերին դնել հակակոմունիստական գործողությունների ֆիզիկական ու բարոյական ծանրության մի մասը, ամերիկյան իմպերիալիստները վերջերս սկսում են ավելի ու ավելի մեծ ուշադրություն դարձնել այսպես կոչված «կանխիչ սոցիալական ստրատեգիային»։ Դրա էությունն այն է, որ Միացյալ Նահանգները ձգտում են իսկական հեղափոխական փոփոխություններ թույլ չտալու նպատակով ակտիվորեն միջամտել մյուս երկրների քաղաքական կյանքին։

Ամերիկայի ավելի լայն քաղաքական միջամտությունը մյուս երկրների ներքին գործերին կարող է ծառայել որպես «ռազմական ինտերվենցիայի ալտերնատիվ»,— անկեղծորեն

16 "The New York Times Magazine", August 9, 1970, p. 63.



հայտարարել է ամերիկյան ստատեգ-տեսաբաններից մեկը՝ Ս. Հանտինգտոնը[17]։

«Կանխիչ քաղաքական միջամտություն» գաղափարն ավելի է զարգացնում պատմաբան պրոֆեսոր Գ. Մորգենթաուն։ Իր վերջին աշխատություններում ու ելույթներում նա հաստատում է, որ հաղթանակող հեղափոխական շարժումների նկատմամբ Միացյալ Նահանգների գլխավոր խնդիրը՝ համապատասխան երկրների սոցիալիստական զարգացման խափանումն է։ Իսկ եթե ԱՄՆ-ը իրենց քաղաքականության մեջ փորձեն ավելի խիստ նպատակներ դնել և առհասարակ հանդես գալ բոլոր հեղափոխությունների դեմ, ապա անխուսափելիորեն պարտություն կկրեն իրենք՝ Միացյալ Նահանգները։ «Կամ հեղափոխությունը կգլխավորեն կոմունիստները ընդդեմ ԱՄՆ-ի,— գրում է Մորգենթաուն,— կամ էլ այն կգլխավորեն այլ ուժեր, որոնք ծայրահեղ դեպքում թշնամական չեն լինի Միացյալ Նահանգների նկատմամբ»[18]։

Խորհրդածելով այն մասին, թե Միացյալ Նահանգների համար «ժամանակն է դադարել» «հակահեղափոխական պետություն» լինելուց, Գ. Մորգենթաուն և նրա համախոհները, ըստ երևույթին քիչ են մտածում այն հարցի մասին, թե արդյոք ԱՄՆ-ը ի վիճակի՝ են գործնականորեն իրականացնելու իրենց քաղաքականության նման ձևափոխությունը, մնալով հանդերձ այն, ինչ են՝ իմպերիալիստական պետություն։

Չէ՛ որ վերջին տասնամյակներում տեղի ունեցած հեղափոխություններից շատերը «հակաամերիկյան բնույթ» են ստացել ոչ ինքնին և ամենևին էլ ոչ այն պատճառով, որ դրանցից մի քանիսին գլխավորել են կոմունիստական կուսակցությունները, այլ այն պատճառով, որ ԱՄՆ-ը կամ հանդես են եկել որպես հակահեղափոխական ինտերվենցիայի գլխավոր ուժը, կամ թե չէ ամերիկյան մոնոպոլիստական կապիտալը հիմնական շահագործողներից մեկն է եղել այդ երկրներում։ Կապիտալիզմի դիրքերի պաշտպանությունը— ահա թե ինչն է ամերիկյան իմպերիալիզմի կողմից վարվող հակահեղափոխական ինտերվենցիայի քաղաքականության հիմքը։

Ուստի ակնհայտ է, որ ինչպիսի «ճկուն» ձևեր էլ որ ընդունի ամերիկյան իմպերիալիզմի հակակոմունիստական ստրատեգիան ու տակտիկան, վերջինս եղել է և է արդիականության գլխավոր հակահեղափոխական ուժը, որը թշնամի է իրենց երկիրը օտարերկրյա ու տեղական կապիտալի լծից ազատագրելու ձգտող բոլոր իսկական ժողովրդական շարժումներին և կազմակերպություններին։ Վաշինգտոնի կողմից ի՞նչ «հեղափոխությունների պաշտպանության» մասին են միամտորեն երազում ամերիկյան մանիլովները, որոնք ձգտում են այդ ձևով վերականգնել ԱՄՆ-ի իմպերիալիզմի անունը, եթե նույնիսկ այն առանձին սոցիալական ռեֆորմները, որ անց են կացնում Պերուի և Բոլիվիայի ամենևին էլ ոչ կոմունիստական կառավարությունները, սուր կատաղություն են առաջացնում Միացյալ Նահանգների ղեկավար շրջաններում, իսկ ձախ ուժերի բլոկի թեկնածու Սալվադոր Ալիենդեի հաղթանակը Չիլիի ընտրություններում, հակաչիլիական աղմկոտ կամպանիա առաջացրեց ամերիկյան բուրժուական մամուլում և վատ քողարկված ինտերվենցիայի կոչ՝ այդ շրջաններում։

Կոմունիզմի հանդեպ, արդիականության հեղափոխական, առաջադիմական բոլոր շարժումների հանդեպ ԱՄՆ-ի ղեկավար շրջանների պաթոլոգիական սարսափը իմպերիալիզմի պատմականորեն դատապարտվածության ևս մի վկայությունն է, սոցիալական առաջադիմությանը ֆիզիկական կոպիտ ուժից ու գռեհիկ զըրպարտությունից բացի մի որևէ այլ բան հակադրելու նրա անընդունակության վկայությունը։ Միջազգային իմպերիալիստական ռեակցիան հակակոմունիզմի օգնությամբ ձգտում է տապալել կամ գոնե դանդաղեցնել նոր հասարակարգի կառուցումը սոցիալիստական երկրներում, քայքայել համաշխարհային կոմունիստական շարժումը, մեկուսացնել արդիականության հեղափոխական ուժերը և հավերժացնել կապիտալիստական կարգերն ու մյուս ժողովուրդներին կեղեքելու սիստեմը։

Խաղաղության և սոցիալիզմի շահերը պահանջում են ամեն կերպ ուժեղացնել պայքարը հակակոմունիզմի՝ իմպերիալիստական ռեակցիայի գլխավոր գաղափարական այդ զենքի դեմ։

17 „No More Vietnams? The War and the Future of American Foreign Policy". New Zork, 1968, r. 219.

18 „American Militarism 1970. A Dialogue on the Distortion Of our National Priorities and the Need to Reassert Control over the Defense Establishment". New York, 1969, p. 44.



# ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՓՈԽԱՐԵՆ

## ԴՅՈՒՑԱԶՈՒՆՆԵՐԸ ՉԵՆ ՄՈՌԱՑՎՈՒՄ

(ՌՈՒՍԱԿԱՆ ԶԻՆՎՈՐԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԸ ՀԱՅ ՌԱԶՄԻԿՆԵՐԻ ՍԽՐԱՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ)

Մեծ հայրենականի առաջին իսկ օրվանից, կռվի դաշտում Սովետական Միության բոլոր ժողովուրդների արի զավակների հետ կողք-կողքի հայ ռազմիկները ցուցաբերում էին սովետական հայրենասիրության չգերազանցված օրինակներ:

Սոցիալիստական հայրենիքի ազատության և անկախության համար մղված ծանր և արյունահեղ մարտերում, բյուրավոր հայ դյուցազուններ չխնայեցին իրենց արյունը, նույնիսկ՝ կյանքը: Այդ անունները չեն մոռացվել: Չկա մի ճակատամարտ, դիվիզիայի, գնդի, ստորաբաժանման մարտական գործողություն, սպայի կամ զինվորի կատարած սխրանք, որ արտացոլված չլինեն մեր մամուլում՝ սկսած կենտրոնական, ռազմաճակատային լրագրերից, վերջացրած դիվիզիաների թերթերը, ստորաբաժանումներում լույս տեսած «մարտական» և «կայծակ» թերթիկները:

Այդ թերթերում տպագրված հաղորդումները, թղթակցությունները ու ակնարկները գրված են գնդակների սուլոցի և արկերի որոտի տակ, զինվորի սրտից բխած ջերմ խոսքերով:

Քառասունմեկ թվականի աշուն...

Ֆաշիստական հորդաները մեր երկրի արևմտյան մի շարք մարզեր գավթելուց հետո, ծանր կորուստների գնով շարժվում էին դեպի Մոսկվա:

Կենտրոնական և ռազմաճակատային թերթերի օրվա կոչերն էին.

— Կատաղած ֆաշիստական գազանն սպառնում է Մոսկվային: Պողպատյա տոկունությամբ փակենք իժի ճանապարհը:

— Բոլոր ուժերը գործադրենք՝ թշնամուն ետ մղելու, Մոսկվան պաշտպանելու համար:

Հարազատ մայրաքաղաքի ուղղությամբ հարձակվող ոսոխի ճանապարհը փակող զորամասերի կազմում կային շատ հայ ռազմիկներ: Նրանցից մեկի՝ ավագ սերժանտ Հայրապետյանի մասին կարմիր բանակային Պ. Բուտիլովը գրում է. «...Ամեն անգամ, երբ մեզնից մեկն ու մեկին հարկ էր լինում անցնել ձորակով, նրա վրա անտառից անմիջապես տեղում էր ավտոմատի համազարկը: Մի քանի ժամ մեր կատարած դիտումները հնարավորություն չավեց հայտաբերել այդ «կկուին»:

Ավագ սերժանտ ընկ. Հայրապետյանին հրամայվեց՝ հետապնդել և ոչնչացնել ֆաշիստական ավտոմատավորին: Հարմար դիրք գրավելով և հմտորեն քողարկվելով՝ Հայրապետյանն սկսեց ուշադիր դիտել հակառակորդի գործողությունը: Շուտով սոճիներից մեկի վրա երևաց «կաչաղակը»: Պարզվեց, թե ով է այնտեղ: Ընկ. Հայրապետյանն աննկատելիորեն մոտեցավ սոճուն ու տեսավ նրա վրա նստած ֆաշիստին: Հայրապետյանն ավտոմատից մեկ համազարկով ոչնչացրեց թշնամուն» («За правое дело», 1941, № 506):

Գրեթե նույն օրերին լենինգրադյան ռազմաճակատի «На страже родины» թերթում տպագրվել է հրետանու հմուտ նշանառու, կոմերիտական Յ. Պետրոսյանի նկարը: Այդ նկարի մակագրությունը շատ սեղմ է, ընդամենը մի քանի տող, բայց հարուստ է իր բովանդակությամբ: Պետրոսյանը դիպուկ կրակով ոչնչացրել է հակառակորդի հրանոթն՝ իր անձնակազմով (1941 թ. նոյեմբերի 2):

Ռադիոհեռախոսային անխափան կապի դերը վճռական է կռվի դաշտում: Այն հնարավորություն է ընձեռում հրամանատարության կարգադրությունները ու հրամանները հաղորդել ստորաբաժանումներին և ներքևից սիստեմատիկ ինֆորմացիա տալ իրավիճակի մասին: Դրա համար էլ շատ ռազմիկներ իրենց արյան, նույնիսկ կյանքի գնով ապահովում էին կապի միջոցների նորմալ աշխատանքը: Հյուսիս-արևմտյան ռազմաճակատային թերթում կարդում ենք.

*«...Գասպարյանի ստորաբաժանման կապավորները գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղվող մարտերում ցուցաբերեցին տոկունություն և բարձր կազմակերպվածություն: Վերջին մարտում հակառակորդի արկի հարվածից հրդեհ առաջացավ այն տանը, որում տեղակայված էր հեռախոսակայանը: Լեյտենանտ Գասպարյանի և քաղղեկ Դերգաչևի ղեկավարությամբ կապավորները ներխուժեցին այրվող տունը և դուրս բերեցին ամբողջ ապարատուրան: Մարտիկներն այն շտապփույթ փոխադրեցին մի ուրիշ շենք և արագ սարքավորեցին հեռախոսակայանը: Կապն անմիջապես վերականգնվեց...» Մայոր Վ. Ագաֆոնով,* (За Родину», *1941, № 117):*

1942-ի վերջերին Ստալինգրադում տեղի ունեցող կռիվները գրավել էին ողջ մարդկության ուշադրությունը: Հիտլերյան արյունռուշտ բանակները շարժվում էին դեպի Վոլգա: Ստալինգրադը դարձել էր կատաղի կռվի դաշտ: Փողոցային մարտերում սովետական ռազմիկները ցուցաբերում էին անօրինակ քաջություն, անձնազոհություն: Ստալինգրադյան ռազմաճակատային թերթի էջերում գովեստի խոսքեր էին գրվում նաև այն հայ ռազմիկների մասին, որոնց նշանաբանն էր՝ ոչ մի քայլ ետ, կրծքով պաշտպանել հայրենի սրբազան հողը: Այդ թերթի 1942 թվականի նոյեմբերի 4-ի համարում հետևյալ տողերն ենք կարդում Արշակ Մելոյանի մասին.

*«...Հակառակորդը, երկար նախապատրաստվելուց հետո, մոտ մեկ գնդի ուժերով հարձակվեց մեր դիրքերի վրա: Սկսվեց համառ ու կատաղի կռիվը: Իրենց կրակով պաշտպանության առաջին գիծը փակում էին Մելոյանի և Բելոբրովի ականանետային հաշվարկները: Նրանց կրակած յուրաքանչյուր ական պայթում էր հակառակորդի մարտակարգի մեջտեղը: Հարձակվողների շարքերն սկսեցին նոսրանալ: Ֆաշիստները չդիմացան սովետական ականաձիգների հարվածներին, մարտի դաշտում թողնելով հարյուրավոր դիակներ, սկսեցին անկանոն նահանջել* («СТАЛИНСКИЙ ВОИН», *1942, № 223):*

Սովինֆորմբյուրոն հաճախ էր կարճ լուրեր հաղորդում կռվի դաշտում մեր զինվորների և հրամանատարների կատարած արիության մասին: Այդպիսի մի լուր հաղորդվեց 1942 թվականի նոյեմբերի 4-ին, այն վերաբերում էր կարմիրբանակային Նազարյանին: Ստալինգրադյան ռազմաճակատային լրագրի աշխատակիցը, գնալով այդ հաղորդագրության հետքերով, առաջին գծում հանդիպում է Նազարյանին և գրի առնում նրա պատմածը.

*«ԴԶՕՏ-ում նստած դիտում էի չորս կողմս: Միշտ հիշում էի հրամանատարիս հրամանը. հակառակորդը երևալուն պես կրակել նրա վրա մինչև վերջին փամփուշտը և մնալ դիրքում: Գիշերն անցավ խաղաղ: Առավոտյան բլուրի ետևից դուրս եկան ֆաշիստները և հարձակվեցին իմ ԴԶՕՏ-ի վրա... Երբ հիտլերականները մոտեցան ինձ, սկսեցի գնդացրից կրակել նրանց վրա: Ֆաշիստները պառկեցին ու սողալով մոտեցան ԴԶՕՏ-ին, ձգտելով ինձ նեղել երկու թևերից: Շարունակեցի անընդհատ կրակ վարել: Գնդացրի փողը շիկացավ ու խափանվեց: Այդ պահին սողալով ինձ մոտ եկավ լեյտենանտ Տրավնիկովը և հարցրեց.*

*— Ի՞նչ է պատահել գնդացրիդ:*

*— Խափանվել է,— պատասխանեցի:*

*— Շարունակիր կրակել հրացանով, մինչև կարգի բերեմ գնդացիրը:*

*...Բայց հիտլերականները քայլ առ քայլ առաջ էին սողում: Ճակատագրական վայրկյանին դուրս եկա ԴԶՕՏ-ից և նռնակներ նետեցի ֆաշիստների վրա: Բանդիտներից չորսը սպանվեցին, իսկ մյուսները փախուստի դիմեցին: Սրանց էլ գերի վերցրին ինձ օգնության հասած ռազմիկները: Այսպիսով, լեյտենանտ Տրավնիկովի հետ ինձ հաջողվեց պաշտպանել ԴԶՕՏ-ը»* («Сталинский воин», *1942, № 225):*

1942 թվականի ամռանը և աշնանը լարված մարտեր էին տեղի ունենում նաև Կովկասում: Հիտլերյան հորդաները ձգտում էին տիրել Բաքվի և Գրոզնու նավթը, Սև ծովի ափերը և իրենց դաշնակից Թուրքիայի հետ զավթել Անդրկովկասը: Մեծ կորուստների գնով, իրենց զինվորների և սպաների դիակների վրայով, ֆաշիստներին հաջողվել էր անցնել Կուբան գետը, Թերեքի և Բազսանի առանձին հատվածներ, հասնել Կովկասյան նախալեռները:

Կովկասյան լեռնաշղթայի հյուսիսային կողմում՝ Սև ծովից գրեթե մինչև Կասպից ծովը, բազում բանակներ էին կռվում ոսոխի դեմ, իսկ այդ բանակներում կային հազարավոր հայ ռազմիկներ, որոնք դյուցազնորեն էին մարտնչում հակառակորդի դեմ: Երբ թերթում ես Հյուսիսային Կովկասի և Անդրկովկասի ռազմաճակատներում լույս տեսած լրագրերը, նրանցում աչքի են ընկնում շատ ակնարկներ, թղթակցություններ նաև հայ զինվորների սխրանքների մասին:

Հյուսիսային Կովկասի ռազմաճակատային թերթում տպագրված է քաղղեկ Ա. Բոժենկոյի՝ *Հերոսների մահը* խորագրով սրտառուչ և հուզիչ ակնարկը: Նա գրում է.

*«...Գերմանացիները, մարտի մեջ մտցնելով տանկեր և հետևակայիններ, ձգտում էին ինչ գնով էլ լինի գրավել քաղաքը: Ավաղ լեյտենանտ Շարաֆյանը երկու մարտիկի հետ հակառակորդի ամբակոծության տակ ճշգրտում էին իրենց մարտկոցի կրակի ուղղությունը... Գերմանացի ավտոմատավորները, օգտվելով իրենց հրետանու քողարկող համազարկերից, թափանցեցին մեր մարտական դասավորության մեջ: Նրանք խցկվում էին*

հայկական Թամանյան դիվիզիան, որը մարմնավորում էր հայ ժողովրդին:

Ավելի քան քսանհինգ տարի առաջ, 1945 թվականի մայիսի 3-ին, Բեռլինից ոչ շատ հեռու լույս տեսավ Բելոռուսական առաջին ռազմաճակատի ամենօրյա «Красная Армия» թերթի հերթական համարը: Մինչև այսօր էլ խնամքով պահպանում եմ այդ լրագիրը, իբրև պատերազմի տարիների լավագույն հիշատակներից մեկը: «Красная Армия»-ի այդ համարը ամբողջությամբ նվիրված է Բեռլինի անկմանը, այն զորամասերի, ստորաբաժանումների ու դյուցազունների սխրանքներին, որոնք մասնակցել են հաղթական գրոհին: Գերագույն գլխավոր հրամանատարի հրամանում (տպագրված «Красная Армия»-ում) Բեռլինը գրաված շատ զորահրամանատարների թվում նշված են նաև գեներալներ Սերգեյ Կարապետյանի, Նվեր Սաֆարյանի, Իսահակ Գասպարյանի, գնդապետ Համազասպ Բաբաջանյանի (այժմ զրահատանկային զորքերի մարշալ) անունները: Դա փառք ու պատիվ էր հայ ժողովրդի համար: Բայց քանի՜-քանի հայ հրամանատարներ ու ռազմիկներ այդ օրերին մարտնչում էին այլ ռազմաճակատներում՝ վերջնական հաղթանակի համար: Նրանց մի մասը չվերադարձավ ռազմաճակատից, չտեսավ հաղթանակի արշալույսը, չտեսավ այն, որ իր անձնվեր պայքարով այսօր հայ ժողովուրդը վայելում է կարմիր հոկտեմբերի բերած ազատության բարիքները:

ՀամԿ(բ)Կ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ ժողովրդական կոմիսարների սովետի՝ Հայաստանում սովետական կարգերի հաստատման քսանհինգամյակի առթիվ հղած ողջույնում ասված է.

«...Հայրենական պատերազմի տարիներին հայ ժողովուրդը պատվով կատարեց իր պարտքը հայրենիքի հանդեպ: Հայ ռազմիկները, Սովետական Միության մյուս ժողովուրդների հետ միասին, անձնվիրաբար պաշտպանում էին մեր հայրենիքի ազատությունն ու անկախությունը: Հայաստանի բանվորները, կոլտնտեսականները և ինտելիգենցիան անդուլ կերպով աշխատում էին թշնամու դեմ հաղթանակ նվաճելու համար...»:

Հայ ժողովուրդն իր սրտում հավերժ է պահում հիշատակն այն դյուցազունների, որոնք ֆաշիստական հորդաների դեմ մղված մարտերում, արիությամբ կատարելով իրենց ինտերնացիոնալ պարտքը, միաժամանակ մարտնչում էին Սովետական Հայաստանի ինքնուրույնության, հայ ժողովրդի ազատության ու երջանկության համար, որը ձեռք բերվեց 1920 թվականի նոյեմբերին: ՀՍՍՀ բազում քաղաքներում ու գյուղերում Հայրենական մեծ պատերազմում զոհվածների հիշատակին կանգնեցվել են հուշարձաններ և հուշաղբյուրներ: Ռուս, ուկրաինացի, բելոռուս, մոլդովան, լատիշ, լիտվացի, էստոն աշխատավորները հայ զինվորների հիշատակը հավերժացնող հուշարձաններ են կառուցել Մալգոբեկում, Ջերելինսկայայում, Սևաստոպոլում և այլուր:

Եվ ամեն անգամ անցորդները մի պահ կանգ են առնում հուշարձանների առաջ, գլուխները խոնարհում ու հավերժ փառք տալիս այն դյուցազուններին, որոնք անձնվիրաբար մարտնչեցին մեր հայրենիքի ազատության և անկախության համար:

Ս. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ



# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ 1970 Թ. ՀԱՄԱՐՆԵՐՈՒՄ ՏՊԱԳՐՎԱԾ ՀՈԴՎԱԾՆԵՐԻ ԵՎ ՆՅՈՒԹԵՐԻ ՑԱՆԿ

## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ընտիր երկեր: *Եռհատորյակ: Հատոր 3: Մ. «Քաղհրատ» 1970, 856 էջ:*

*Հատորում զետեղված են Վ. Ի. Լենինի 1918 թ. հոկտեմբերից 1923 թ. մարտ ամիսները գրած աշխատությունները, որոնցում զարգացրել է մարքսիստական տեսության հիմնական դրույթները, լուսաբանել երկրի պաշտպանության, սովետական պետության արտաքին քաղաքականության, համաշխարհային կոմունիստական շարժման և այլ հարցեր:*

ԱՍՏԱԽՈՎ Վ. Ի. և ՇԵՐՄԱՆ Ի. Լ.— Վ. Ի. Լենինը սովետական հասարակության պատմաբան: *Խարկովի համալս. հրատ., 1969, 355 էջ:*

ՅՈՒՐԵՎ ՅՈՒ. Մ.— Ստորագրված է Լենինի կողմից: *Մ., Քաղհրատ, 1970, 255 էջ:*

*Գրքույկում զետեղված զանազան վավերագրերի հիման վրա (որոնց մի մասն առաջին անգամ է հրատարակվում) արտացոլված է Լենինի կերպարը:*

Գիրք գրքերի մասին: *Մատենագիտական ձեռնարկ երեք հատորով: Հատոր 1.* Մարքսիզմ-լենինիզմ: Համաշխարհային պատմություն: *Մ.,* «Книга» *հրատ. 1970, 408 էջ:*

*Առաջինին կհաջորդեն երկրորդ՝* ժամանակակից գիտա-տեխնիկական առաջադիմություն: Բնագիտության և տեխնիկայի պատմություն *և երրորդ՝* Գեղագիտություն: Գրականագիտություն, Արվեստագիտություն հատորները:

Կոմինտերնը և նրա հեղափոխական տրադիցիաները: *Կոմունիստական ինտերնացիոնալի կազմակերպման 50-ամյակին նվիրված գիտական նստաշրջանի նյութերը: Մոսկվա, 25—26 մարտի, 1969 թ.: Մ. Քաղհրատ, 1969, 303 էջ:*

Սամարայի առաջին լենինյանները: *Ակնարկներ Սամարայում Վ. Ի. Լենինի կազմակերպած մարքսիստական խմբակի անդամների մասին: Կույբիշև, 1969, 192 էջ:*

*Կույբիշևի պետական արխիվի նյութերի հիման վրա շարադրված է Սամարայի մարքսիստական խմբակի անդամներ Ալ. Պ. Սկլյարենկոյի (1869—1916), Ի. Ք. Լալայանցի (1870—1933), Ի. Ա. Կուզնեցովի (1870—1905), Ա. Ա. Բելյակովի (1869—1927), Մ. Տ. Ելիզարովի (1863—1919), Աննա Իլյինիչնա Ուլյանովա—Ելիզարովայի (1864—1935) և այլոց համառոտ կենսագրությունը:*

Զինաթափման արդի պրոբլեմները: Մ. «Мысль» *հրատ., 1970, 400 էջ:*

*ՍՍՀՄ Գա համաշխարհային տնտեսության և միջազգային հարաբերությունների գիտա-հետազոտական ինստիտուտի կողմից հրատարակված այս ուսումնասիրությունը նվիրված է XX դարի ամենահրատապ հարցին— ինչպե՞ս փրկել մարդկությունը կործանումից, ինչպե՞ս պայքարել այն սև ուժերի դեմ, որոնք կարող են մեծագույն աղետ հասցնել մարդկությանը:*


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵՎՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Адрес редакции.—Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

ՎՖ 03210   Պատվեր 2103   Թղթի չափսը $70 \times 108^{1}/_{16}$:   Տիրաժ 12700   Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ:   Ստորագրված է տպագրության՝ 29/XII 1970 թ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խասհակյանի փող. № 28:


# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՆՈՐ ԱԳՐԵԳԱՏ

*Էժան և ոչ գործվածքային կտորեղենը լայնորեն տարածվել է կենցաղում և արդյունաբերության մեջ: Լենինգրադի «Վուլկան» գործարանը թողարկում է* АИН—*1800 ագրեգատը, որը մշակում է քիմիական և բնական թելերից պատրաստված ոչ գործվածքային կտորեղեն: Ագրեգատը բաղկացած է երեք մեքենայից, որոնք տալիս են զորգի, պատառացու և ստատառացու կտորեղենի բարձրորակ արտադրանք:*

*Այդ ագրեգատի մեծ արդյունավետության մասին է վկայում թեկուզ այն փաստը, որ ծածկոցի պատրաստման համար, տրադիցիոն եղանակի համեմատությամբ, աշխատանքային ծախսումները կրճատվել են 30 անգամ, իսկ սարքավորման զբաղված արտադրահրապարակը՝ 5 անգամ:*

## ԷԼԵԿՏՐՈՆԻԿԱՅԻ ՕԳՆՈՒԹՅԱՄԲ

*Նույնիսկ փորձառու բժշկի համար ռենտգենյան նկարահանումը երբեմն մնում է պնհասկանալի: Դրա պատճառը նկարի վրա օրգանիզմի ոսկորների ստվերներն են: Լուսանկարում դրանք մթագնում են այնպիսի մանրամասներ, որոնք ախտորոշման համար կարող են ունենալ վճռական նշանակություն: Վերջերս «Սիմենս» ֆիրման ստեղծել է մի սարք, որը հնարավորություն է ընձեռում էլեկտրոնային եղանակով կերպարանափոխելու ստացված նկարները:*

*Այդ սարքը բաղդատում է ռենտգենյան երկու նկարները և «ընթերցելով» շտկում ոչ էական մանրամասները: Ի վերջո ստացվում է այսպես կոչված, դիֆերենցիալ (տարբերակային լուսանկար, որի ուսումնասիրումը հատուկ սարքավորմամբ օգնում է բացահայտելու ռենտգենյան լուսավորման ամենանուրբ մանրամասները:*

## ԱՐՏԱՍՈՎՈՐ ԿՈՆԴԵՆՍԱՏՈՐ

*Երևանի կոմպլեքս էլեկտրասարքավորումների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտը լյումինեսցենտային ջահերի համար ստեղծել է մետաղաթղթային կոնդենսատորներ, որոնք կարելի է օգտագործել թե որպես հզորության գործակցի կայունացնող և թե որպես բալաստային սարքավորում:*

*Կոնդենսատորներն աշխատում են նորմալ՝ 40 աստիճան սառնամանիքի, տրոպիկական շոգի, խիստ խոնավության պայմաններում, գերբեռնված լարվածության դեպքում և այլն:*

*Այս սարքի կարևորագույն հատկությունն այն է, որ ալյումինապատ կոնդենսատորային թուղթն ինքն իրեն վերականգնվում է և ճեղքվածքի դեպքում կոնդենսատորը դարձնում շատ հուսալի:*

## ՀԱԿԱԳԱԶ՝ ԶՈԴՈՂԻ ՀԱՄԱՐ

*Լենինգրադի* «Русский дизель» *գործարանը թողարկում է ինքնատիպ հակագազեր՝ փակ շենքերում աշխատող զոդողների համար: Սարքավորման կառուցվածքը բարդ չէ: Շենքում եղած խտացված օդի ցանցից 4—6 մթնոլորտային ճնշման տակ մամլակը օդ է մատակարարում թափանիվին, որն անցնելով զտիչների և ակտիվացված քանիլով զտիչների և ակտիվացված քարածխի շերտի միջով՝ տաքանում է էլեկտրական լամպով: Այնուհետև խողովակով մաքուր օդն անմիջապես անցնում է դեպի դիմակը: Դա մեծ չափով պակասեցնում է բանվորի հոգնածությունը, բարձրացնում աշխատանքի արտադրողականությունը, նվազեցնում պրոֆեսիոնալ հիվանդությունները:*

## ՄՈՒՍՍՈՆԻ ԱՆԱՏՈՄԻԱՆ

*Հնդիկ օդերևութաբանները մշակել են մուսսոնների հետազոտման նախագիծ: Ուսումնասիրությունները, որ կտևեն 4 տարի, կհանդիսանան ասիական շատ երկրների համար կենսական կարևոր նշանակություն ունեցող այդ երևույթի գաղտնիքների բացահայտման առաջին կոնկրետ փորձը:*

*Հայտնի է, որ մուսսոնների առաջացման գլխավոր պատճառը ցամաքի և օվկիանոսի ջերմաստիճանի տարբերությունն է: Սակայն հարկ է պարզել՝ երբ և որտեղ են առաջանում մուսսոնները, ինչպիսի՞ն է օդ-օվկիանոս փոխներգործությունը մուսսոնների առաջացմանը նախորդող շրջանում: Այս չլուծված հարցերն են, ահա, որ հնդիկ գիտնականները ներառել են հետազոտությունների իրենց ծրագրում:*